ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ






# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922թ.

11

ՆՈՅԵՄԲԵՐ • 1988

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



11

ՆՈՅԵՄԲԵՐ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## Բովանդակություն



ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակիցներ, արբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1988 թվականի սեպտեմբերի 30-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենում:

XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումների լույսով պլենումը քննության առավ քաղբյուրոյի առաջարկությունները՝ կապված կուսակցական ապարատի վերակազմման հետ և մի քանի կադրային հարցեր: Պլենումում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Ընկ. Մ. Ս. Գորբաչովը հաղորդեց, որ Ա. Ա. Գրոմիկոն դիմել է ՍՄԿԿ Կենտկոմին կենսաթոշակի անցնելու խնդրանքով: Մ. Ս. Գորբաչովը նշեց Ա. Ա. Գրոմիկոյի մեծ ծառայությունները կոմունիստական կուսակցության ու սովետական պետության հանդեպ և բարեմաղթություններ հայտնեց նրան:

Պլենումը բավարարեց Ա. Ա. Գրոմիկոյի խնդրանքը և նրան ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից:

Պլենումը որոշում ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի ներքին ու արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունների գծով հանձնաժողովների մասին:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Վ. Ա. Մեդվեդևին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ Վ. Մ. Չեբրիկովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:

Պլենումը Ա. Վ. Վլասովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումը Ա. Պ. Բիրյուկովային և Ա. Ի. Լուկյանովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուներ, նրանց ազատելով ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարների պարտականություններից:

Պլենումը Մ. Ս. Սոլոմենցևին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի և ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Պլենումը Վ. Ի. Դոլգիխին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուի և Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Պլենումը Պ. Ն. Դեմիչևին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Պլենումը Ա. Ֆ. Դոբրինինին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Պլենումը Բ. Կ. Պուգոյին հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

## ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերի 30-ի պլենումի որոշումը

# XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԼՈՒՅՍՈՎ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐ ԿԱԶՄԵԼՈՒ ԵՎ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՊԱՐԱՏԸ ՎԵՐԱԿԱԶՄԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*1. Պլենումը նպատակահարմար գտավ ունենալ ՍՄԿԿ Կենտկոմի հետևյալ հանձնաժողովները.*
*— կուսակցական շինարարության ու կադրային քաղաքականության հարցերի (նախագահ՝ Գ. Պ. Ռազումովսկի).*
*— ՍՄԿԿ Կենտկոմի գաղափարախոսական հանձնաժողով (նախագահ՝ Վ. Ա. Մեդվեդև).*
*— սոցիալ-տնտեսական քաղաքականության հարցերի (նախագահ՝ Ն. Ն. Սլյունկով).*
*— ագրարային քաղաքականության հարցերի (նախագահ՝ Ե. Կ. Լիգաչով).*
*— միջազգային քաղաքականության հարցերի (նախագահ՝ Ա. Ն. Յա-*
*կովլև).*
*— իրավական քաղաքականության հարցերի (նախագահ՝ Վ. Մ. Չեբրիկով)։*
*2. Հանձնարարել ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին՝ գործնական միջոցա-*
*ռումներ իրականացնել ստեղծելու ՍՄԿԿ Կենտկոմի և տեղական կուսակցա-*
*կան կոմիտեների ապարատի նոր կառուցվածք, հաշվի առնելով վերակառուց-*
*ման խորացման և երկրի քաղաքական սիստեմի ռեֆորմի իրականացման*
*պայմաններում կուսակցական մարմինների ֆունկցիաների փոխվելը։*
*3. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին,*
*կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին՝ տեղի ունեցող հաշվետվու-*
*թյունների և ընտրությունների ընթացքում հատուկ ուշադրություն նվիրել կու-*
*սակցական ապարատի կադրերի ընտրության, այդ աշխատանքում այնպիսի*
*ընկերների առաջքաշման հարցերին, ովքեր օժտված են քաղաքական ու գործ-*
*նական բարձր հատկություններով, վերակառուցման համոզված կողմնակից*
*են, կոմունիստների և անկուսակցականների շրջանում վստահություն ու հե-*
*ղինակություն են վայելում։*

---

## ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշումը

# ԸՆԿ. Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻՆ ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը* որոշում է.

*Ընկ. Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովին ընտրել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ։*

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
նախագահի առաջին տեղակալ՝ Ա. ԼՈՒԿՅԱՆՈՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
քարտուղար՝ Թ. ՄԵՆԹԵՇԱՇՎԻԼԻ

*Մոսկվա, Կրեմլ։ 1 հոկտեմբերի 1988 թ.։*

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Հոկտեմբերի 10-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենում, որին մասնակցելու էին հրավիրվել նաև Կենտկոմի բաժինների վարիչներ, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարներ, որոնք չեն մտնում ՀԿԿ Կենտկոմի և վերստուգիչ հանձնաժողովի կազմի մեջ:

Պլենումը քննարկեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1988 թվականի հոկտեմբերի 10-ի որոշումը «Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի մանդատային հանձնաժողովի որոշ անդամների կողմից Նարեկացու № 111 ընտրական օկրուգում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ընտրությունների արդյունքները կեղծելու և ՀԿԿ Կենտկոմի անդամներ Ք. Լ. Մանդալյանի, Վ. Բ. Ղալումյանի սխալ վարքագծի մասին»: Հաղորդումներով հանդես եկան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար Յու. Պ. Կոչետկովը և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Հ. Մ. Ոսկանյանը:

Պլենումը ամբողջովին և լիովին հավանություն տվեց այդ հարցի առթիվ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի ընդունած որոշմանը և Ք. Լ. Մանդալյանին միաձայն հեռացրեց ՍՄԿԿ շարքերից՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի մանդատային հանձնաժողովի անունից ապօրինի փաստաթուղթ ընդունելու և ստորագրելու համար, որը խեղաթյուրում է Նարեկացու № 111 ընտրական օկրուգում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ընտրությունների փաստական արդյունքները, որը քաղաքական պրովոկացիա է և հանգեցրեց հանրապետությունում իրադրության սրմանը:

Պլենումում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը հանդես եկավ ճառով, որում նա հանգամանորեն վերլուծեց հանրապետության ղեկավարության գործունեությունը, պատմեց այն միջոցառումների մասին, որոնք իրականացվում են գաղափարաքաղաքական և սոցիալ-տնտեսական ոլորտներում իրադրությունը կարգավորելու նպատակով: Ջեկուցվեց այն գործնական քայլերի մասին, որոնք ձեռնարկվում են ԼՂԻՄ-ի պրոբլեմների լուծման համար:

Պլենումում սուր և սկզբունքային խոսակցություն տեղի ունեցավ հանրապետությունում ստեղծված լարված իրադրության կապակցությամբ: Ընդգծվեց, որ որոշակի անձանց կողմից հաճախ հնչում են քաղաքականապես վնասակար կոչեր, որոնք ընդհանուր ոչինչ չունեն մեր ժողովրդի իսկական շահերի և ԼՂԻՄ-ի պրոբլեմների հետ: Մտահոգություն է պատճառում այն, որ որոշ անձանց խմբեր մարդկանց դրդում են ապօրինի գործողությունների, ամեն կերպ փորձում ապակայունացնել հանրապետության իրադրությունը, վարկաբեկել կուսակցական, սովետական և տնտեսական կադրերին, սեպ խրել



հանրապետության աշխատավորների և ղեկավարության միջև: Ընդսմին անկարգությունների կազմակերպիչները չեն խորշում անամոթ ստից, տարածում են սադրիչ լուրեր, գործի դնում ակնհայտորեն ստահոդ հերյուրանքներ, դիմում շանտաժի և սպառնալիքների:

Պլենումն անթույլատրելի է համարում, որ ստեղծված իրավիճակում որոշ կուսակցական, սովետական, տնտեսական աշխատողներ, ուսումնական հաստատությունների դասախոսներ, գիտական և ստեղծագործական մտավորականության ներկայացուցիչներ սկզբունքային կուսակցական դիրքեր չեն գրավում, հակահարված չեն տալիս մարդկանց ազգային զգացմունքների հետ խաղացող անպատասխանատու անձանց: Կուսակցական կոմիտեները հաճախ հարկ եղած գնահատականը չեն տալիս այդ փաստերին:

Պլենումում առանձնակի ուժով ընդգծվեց, որ ժողովրդից հանրապետության ղեկավարության իբր գոյություն ունեցող խզման մասին առանձին անձանց կողմից արվող հայտարարությունները որևէ հիմք չունեն և չարամիտ զրպարտություն են:

Պլենումը կուսակցական, սովետական, տնտեսական և իրավապահ մարմիններից պահանջեց իրենց տրված իրավունքներն ըստ ամենայնի օգտագործել պատշաճ կարգուկանոն հաստատելու, ապօրինի գործողությունները կասեցնելու և օրինականությունն ապահովելու համար:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարի հաղորդումը հավանությամբ ընկալվեց պլենումի մասնակիցների կողմից:

Դրանով ՀԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ

ՅՈԹԱՆԱՍՈՒՆՄԵԿ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ այն օրվանից, երբ սկիզբ առավ մարդկության պատմության նոր դարաշրջանը՝ աննախադեպ մեծագործությունների, բացառիկ սոցիալական տեղաշարժերի դարաշրջանը։ Հոկտեմբերը դարձավ Ռուսաստանի աշխատավոր զանգվածների հեղափոխական ստեղծագործության վիթխարի հնարավորությունների դրսևորման վկայությունը։

Հեղափոխության հործանուտում միահյուսվել էին բանվոր դասակարգի արմատական շահերը, գյուղացիության դարավոր իղձերը, շարքային զինվորների և նավաստիների խաղաղության տենչը, ազատության ու լույսի ձգտող Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների կամքը։

Սոցիալիստական հեղափոխության հիմնական ստեղծարար խնդիրն իրականացնելիս ուղեցույց ունենալով սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը, սովետական ժողովուրդը անօրինակ պայքար ծավալեց տնտեսական հետամնացության, աղքատության և մտավոր խավարի դեմ, հանուն հասարակության կյանքի սոցիալիստական նորացման։

Սոցիալիզմի կառուցման ճանապարհին կարևոր ու անհրաժեշտ փուլ էր Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ կուսակցության կողմից մշակված նոր տնտեսական քաղաքականությունը։ Իրականացնելով քաղաքի և գյուղի տնտեսական շաղկապումը, այն ապահովում էր անցումը ժողովրդական տնտեսության ղեկավարման գերազանցապես տնտեսական եղանակներին, նպաստում կոոպերացիայի զարգացմանը, առևտրի լայն ծավալմանը, նյութական խրախուսման կիրառմանն ու տնտեսական հաշվարկի ներդրմանը։ Զուգահեռ իրականացվող ինդուստրացումով ՍՍՀՄ-ը դասվեց աշխարհի արդյունաբերական տերությունների շարքը, դրվեցին նրա պաշտպանունակության հիմքերը, կարճ ժամանակամիջոցում լուծվեցին մի շարք այլ խնդիրներ, որոնց համար կապիտալիստական երկրներից կպահանջվեին տասնամյակներ։

Ստեղծվեցին արդյունաբերության՝ նախկինում գոյություն չունեցած ճյուղեր, հիմնադրվեցին ինդուստրիալ նոր կենտրոններ։ Բոլոր ուղղություններով զարկ տրվեց գիտության զարգացմանը։ Սոցիալ-տնտեսական ամուր հիմքերի վրա դրվեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Առաջին հնգամյակի վերջին արդեն արդյունաբերական արտադրության մակարդակով ՍՍՀՄ-ը գրավեց առաջին տեղը Եվրոպայում և երկրորդը՝ աշխարհում։

Կուլտուրական հեղափոխությունը վերացրեց անգրագիտությունը, աշխատավորների առջև բացելով մարդկության ստեղծած հոգևոր հարստության դռները։ Ձևավորվեց նոր, սոցիալիստական մտավորականություն։ Սովետական մարդկանց գիտակցության մեջ գերիշխող դարձավ մարքս-լենինյան գաղափարախոսությունը։

Սոցիալիզմի կարևորագույն նվաճումներից եղավ ազգային հարցի լուծումը, մեկընդմիշտ վերջ տրվեց ազգային ճնշմանն ու ազգերի և ժողովուրդների անիրավահավասարությանը։ Տնտեսական, սոցիալական և կուլտուրական առաջընթաց ապրեցին նախկին ազգային ծայրամասերը։ Միասնական միութենական պետության շրջանակներում գոյավորվեց յուրօրինակ ինտերնացիոնալ հանրություն։ Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության, բոլոր ազգությունների աշխատավորների սոցիալական շահերի հիման վրա ձևավորվեց սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարաբարոյական միասնությունը։



Հեղափոխությունը շարժման մեջ դրեց ժողովրդական զանգվածների ստեղծագործական վիթխարի կարողությունը։ Միլիոնները տեսան և զգացին, թե ինչպես է իրենց ջանքերով վերափոխվում երկրի դեմքը։ Դա էլ ծնեց առաջին հնգամյակների տարիներին երևան եկած հարվածային աշխատանքի համաժողովրդական շարժումը, որը նոր կյանքի հաստատման տարեգրության պայծառ էջերից է։

Ծանր ու դժվարին էին սոցիալիստական շինարարության պայմանները մեր երկրում։ Հին աշխարհի պաշտպանները ամեն կերպ խանգարում էին նոր կյանքի կառուցմանը. զինված ինտերվենցիա ու քաղաքացիական պատերազմ, դիվերսիա ու սաբոտաժ, տնտեսական շրջափակում և գաղափարական ճնշում։ Սոցիալիստական կարգերը իրենց կենսունակությունը դրսևորեցին Հայրենական մեծ պատերազմում։ Սոցիալիզմը ամենաահեղ, ամենաավերիչ պատերազմից դուրս եկավ բարոյապես, քաղաքականապես ամրացած, ամրապնդեց իր հեղինակությունն ու ազդեցությունը ամբողջ աշխարհում։

Այո՛, ֆաշիզմի դեմ գոտեմարտում շատ զոհեր ու ավերածություններ եղան։ Պատերազմի ավարտից հետո մեր հակառակորդները կանխագուշակում էին, թե մենք տնտեսապես անկում կապրենք և երկար ժամանակ չենք կարողանա հաղթահարել նրա հետևանքները։ Այդուհանդերձ սովետական ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում վերականգնեց ավերված քաղաքներն ու գյուղերը, ավերակների վրա կառուցեց գործարաններ ու ֆաբրիկաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, դպրոցներ ու բուհեր, մշակույթի հիմնարկներ։

Սովետական Միությունն այսօր համաշխարհային հզոր տերություն է, առանց որի չեն կարող լուծվել միջազգային կյանքի խոշորամասշտաբ հարցերը։ Արմատական շահերի ու նպատակների ընդհանրությունը նրան միավորում է սոցիալիստական ընկերակցության երկրների հետ։ Սոցիալիզմի պատմական ձեռքբերումը եղավ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև ռազմաստրատեգիական հավասարակշռության ստեղծումը։ Մեր երկրի քաղաքական կշիռը, նրա տնտեսական և պաշտպանական պոտենցիալը մեծապես նպաստում են խաղաղության ամրապնդմանը և սոցիալական առաջադիմությանը։

Սովետական մարդկանց սերունդների կողմից նվաճածի ամրակուռ հիմքի վրա էլ նորացվում և վերակերտվում է այսօրվա իրականությունը։ Մեր ժողովուրդը իրավացիորեն հպարտանում է իր պատմությամբ, վստահորեն նայում ապագային։

Յոթանասունմեկամյա մեր առաջընթացի արդյունքների ու դասերի համակողմանի իմաստավորումը ցույց տվեց, որ ունեցել ենք նաև սխալներ ու ձևախեղումներ։ Շատ թանկ նստեցին հասարակության ղեկավարման լենինյան սկզբունքներից ու նորմերից շեղվելը, անհատի պաշտամունքը և սոցիալիստական օրինականության խախտումները, վոլյունտարիզմը, պրակտիկ գործողություննե[...]ում իներցիայի ուժը և դոգմատիզմը։

Յոթան[...]ունական թվականներին և ութսունականների սկզբներին երկիրը սկսեց կոր[...]նել առաջընթացի տեմպերը, կուտակվում էին դժվարություններ ու չլուծված հարցեր, ուրվագծվեցին սոցիալական ձևախեղման տարրերը, ի հայտ եկան մեր բարոյաքաղաքական նորմերին խորթ միտումներ։ Ավելին, վերջին հնգամյակներում մինչև ճգնաժամային մակարդակի ընկան ժողովրդական տնտեսության աճի տեմպերը, սրվեցին անհամաչափություններն ու դեֆիցիտայնությունը, ուրվագծվեց գիտատեխնիկական զարգացման հետ մնալը։ Այդ բոլորը, իր հերթին, բացասականորեն ազդեց սոցիալական ոլորտի և ժողովրդի կենսամակարդակի վրա, հանգեցրեց լճացման երևույթներին, հասարակության զարգացման մեջ հակասությունների խորացման, որոնք, ըստ էության, ընդունեցին նախաճգնաժամային ձևեր։

Սթափ վերլուծելով ստեղծված իրավիճակը, մեր կուսակցությունը 1985 թվականի ապրիլյան պլենումում, XXVII համագումարում, XIX համամիութենական կուսկոնֆերանսում մշակեց դրությունից դուրս գալու կուրս, որն արտահայտված է ավելի շատ սոցիալիզմ ու դեմոկրատիա տարողունակ բանաձևում։

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը, վերակառուցումը Հոկտեմբերի գործի ուղղակի շարունակությունն են։ Այն թելադրված է օբյեկտիվ անհրաժեշտությամբ, զարգացման հարափոփոխ ներքին ու արտաքին պայ-

մաններով՝ լճացման պրոցեսների վճռական հաղթահարման, կառավարման արդյունավետ մեխանիզմի ստեղծման նպատակը սովետական հասարակությունը որակական նոր վիճակի հասցնելն է, սոցիալիստական կարգերի ստեղծարար, հումանիստական պոտենցիալի առավելագույն բացահայտումը։ Վերակառուցման գործընթացը հեղափոխական բնույթ ունի, այն ենթադրում է արմատական փոփոխություններ կյանքի բոլոր ոլորտներում։ Սեղմ ժամկետներում, բարձր տեմպերով պետք է կոմպլեքս ձևով լուծվեն կուտակված հրատապ պրոբլեմներ, կտրուկ բեկում ապահովվի հասարակական զարգացման յուրաքանչյուր բնագավառում։

Վերակառուցումն արդեն այսօր միայն տեսության և քաղաքականության հիմնադրույթ չէ։ Այն շուրջ երեք և կես տարվա իրողություն է, որը տարել է բարոյական և գաղափարական հաղթանակ, արժանացել ժողովրդի միահամուռ պաշտպանությանը։ Իսկ դա ընտրված ուղու ճշտության համոզիչ վկայությունն է, սկսված վերափոխությունների անշրջելիության երաշխիքը։

Վերակառուցումը ընդգրկում է հասարակական կյանքի նորանոր շերտեր։ Դրական տեղաշարժեր են կատարվում դեմոկրատիայի զարգացման, սոցիալական ու տնտեսական մի շարք խնդիրների լուծման, հասարակության հոգևոր կյանքի ակտիվացման և բարոյական առողջացման ոլորտներում։

Ժամանակն ի հայտ բերեց նաև վերակառուցման դժվարություններն ու բարդությունները, նրա զարգացման դիալեկտիկան։ Առաջ եկավ նորացման պահանջների, գործի նկատմամբ ստեղծարար, նախաձեռնող վերաբերմունքի և քարացածության, շահադիտական նպատակների միջև հակասություն։

Կուսակցությունն ու ժողովուրդը,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա սեպտեմբերյան պլենումում,— թևակոխել են վերակառուցման առավել պատասխանատու փուլ, պրակտիկ գործերի փուլը։ Այժմ գլխավորը վերափոխումների թափի ու ծավալների ըստ ամենայնի մեծացումն է ներքին ու արտաքին քաղաքականության բոլոր ուղղություններով։ Ծանրության կենտրոնը կազմակերպական և գաղափարաբարոյական աշխատանքի նպատակադիր կազմակերպման ու ծավալման վրա տեղափոխելն է։

Տնտեսության կառավարման նոր համակարգի ստեղծումը վերակառուցման հիմնարար հարցն է։ Վերջինս ենթադրում է արտադրական հարաբերությունների զարգացման առավել բարձր աստիճան, դրանք համահունչուն դարձնելով արդի արտադրողական ուժերին։ Հարկ է նկատել, որ ոչ մի մեխանիզմ ինքնին չի տա պահանջվող արդյունք, եթե դրան չտիրապետեն կադրերը, բոլոր մակարդակների աշխատողները։ Իսկ դրա համար անհրաժեշտ է ամենուր բարձրացնել աշխատողների տնտեսագիտական, պրոֆեսիոնալ պատրաստվածության մակարդակը։

Ավարտին է մոտենում տասներկուերորդ հնգամյակի երրորդ տարին։ Հաջողությունները տեսանելի են, արդյունաբերության զարգացման տեմպերը գերազանցում են հնգամյա պլանի առաջադրանքները, աճում է արդյունավետությունը։ Ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերում արտադրանքի ամբողջ աճը ապահովվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Սակայն տնտեսական զարգացումը դեռևս անհրաժեշտ կայունություն ձեռք չի բերել, թույլ են ներգրավվում խորքային գործոնները։ Գործի հաջողությունը պահանջում է հեռանկարային պրոբլեմների լուծումը զուգակցել օրվա խնդիրներին՝ արտադրական և աշխատանքային կարգապահության, կազմակերպվածության ու պատասխանատվության բարձրացման հետ։

Ժողովրդի բարեկեցության բարձրացումը կուսակցության գործունեության վեհ նպատակն է։ Հանուն աշխատանքի մարդու, նրա ազատ ու համակողմանի զարգացման իրագործվեց սոցիալիստական հեղափոխությունը։ Սկզբունքային այս հիմնադրույթն էլ կանխորոշում է մեր հասարակության ներկա վերափոխումների ողջ իմաստը։ Կուսակցությունը հետևողականորեն ձգտում է, որպեսզի սովետական մարդիկ որքան հնարավոր է շուտ ճաշակեն վերակառուցման պտուղները, աշխատանքի և սոցիալական պայմանների բարեփոխությունները։ Ի հայտ են բերվում սոցիալական ոլորտի նյութական բազան ամրապնդելու լրացուցիչ հնարավորություններ։

Սոցիալական քաղաքականության հաջողությունը պայմանավորված է կյանքում սոցիալական արդարության սկզբունքների անվարան իրագործումով։ Այնիվ, նվիրումով ու ստեղծագործաբար աշխատողը պետք է նյութապես և



բարոյապես խրախուսվի։ Մյուս կողմից, հարկավոր է համապատասխան հասարակական կարծիք ստեղծել անբանների, սոցիալական մակաբույծների, մեր հասարակության աշխատանքային բնույթին անհարիր վարքագծի դրսևորումների շուրջ։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը նշանավորվեց սկզբունքորեն նոր տիպի պետական կառուցվածքի հիմնադրումով։ Պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց բանվորների ու գյուղացիների պետություն։ Սովետական քաղաքական սիստեմը զարգացման ու կատարելագործման մեծ ուղի է անցել։ Իրականացնելով պատմական իր առաքելությունը, պրոլետարիատի դիկտատուրան վերաճեց բոլոր աշխատավորների քաղաքական իշխանության, իսկ պրոլետարական պետությունը՝ համաժողովրդականի։ Դրա հետ մեկտեղ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ասպարեզում ի հայտ եկան բարդություններ ու հակասություններ։ Ոչ միշտ էր ապահովվում ցենտրալիզմի և դեմոկրատիզմի ճիշտ զուգակցումը։ Պատմական մեկ փուլում ձևավորված կառավարման եղանակները բացարձակացվում էին՝ շարունակելով կիրառվել փոփոխված պայմաններում։ Դրա հետևանքն էին անհատի պաշտամունքը և լճացման շրջանը։

Դեմոկրատական պրոցեսին սպառնացող գլխավոր վտանգը բյուրոկրատիզմն է, որի դեմ Լենինը կոչ էր անում հայտարարել անզիջում պատերազմ։ Այդ պատերազմը, նշել է նա, ավելի դժվարին է, քան քաղաքացիականը։ Ցավոք այս զգուշացումը լրջորեն չընկալվեց, արդյունքում՝ տասնամյակների ընթացքում ձևավորվեց կենտրոնամետ, կարծրացած մտածելակերպով առաջնորդվող կադրերի մի զգալի խավ, որը բացասական ազդեցություն ունեցավ հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա։

Հետապրիլյան ժամանակահատվածում կուսակցությունը վարում է սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման, ժողովրդական ինքնակառավարումը ըստ ամենայնի զարգացնելու հետևողական քաղաքականություն։ Միայն սոցիալիզմին յուրահատուկ դեմոկրատական ձևերի հետևողական զարգացման, ինքնակառավարման ընդլայնման միջոցով է հնարավոր մեր առաջընթացը։ Միայն դեմոկրատիայի շնորհիվ է հնարավոր բուն վերակառուցումը։ Հրատապ խնդիր է արտադրության ոլորտում դեմոկրատիայի զարգացումը։ Դեմոկրատացման հունով է կատարելագործվում սովետական ընտրական սիստեմը։ Այստեղ հատկապես կարևորվում է սովետների դերի բարձրացումը։ Իրական դեմոկրատիան գոյություն չունի օրենքից դուրս և նրանից վեր։ Ահա թե ինչու այսօր այնքան մեծ նշանակություն է տրվում սոցիալիստական օրինականության ամրապնդմանը, օրենսդրության կատարելագործմանը, բոլոր օղակներում վերակառուցման իրավական ապահովմանը։

Կուսակցական կազմակերպությունների, կուսակցական մարմինների ու կադրերի գործունեության արմատական բարելավումը դառնում է այսօրվա գլխավոր խնդիրը։ Սկզբնական կուսակցական կազմակերպությունների նախաձեռնությունից է առաջին հերթին կախված վերափոխումների ընթացքը, մարդկանց մոբիլիզացնելու և ոգեշնչելու, աշխատանքում կոնկրետ բարելավման հասնելու ունակությունը։ Հիրավի, կուսակցական կազմակերպությունների ակտիվ աշխատանքով է պայմանավորված վերակառուցման հաջողությունը։

Մեծ Հոկտեմբերը շրջադարձային նշանակություն ունեցավ հայ ժողովրդի կյանքում։ Մեր վերածնունդը սկսվեց 1920 թվականի նոյեմբերի 29-ից. սկսվեց նոր դարաշրջան, սոցիալիստական նորացման, նյութական և հոգևոր աշխարհի վերակառուցման դարաշրջան։ Վաթսունութ տարում Սովետական Հայաստանը դարձել է երկրի ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի անկապտելի մասը. զարգացած և դինամիկ աճող արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի հանրապետություն։

Սովետական իշխանության տարիներին հասարակական կյանքի բոլոր ոլորտներում տեղի ունեցած աննախադեպ վերելքը արմատապես փոխեց մեր ժողովրդի սոցիալ-տնտեսական ու բարոյահոգեբանական նկարագիրը։ 1940 թվականի համեմատությամբ այսօր հանրապետության արդյունաբերության արտադրանքի ծավալն աճել է՝ շուրջ 57, իսկ արտադրության միջոցների արտադրությունը՝ մոտ 85 անգամ։ Հանրակրթական դպրոցների աշակերտների թիվը այդ նույն ժամանակամիջոցում 333 հազարից հասել է 603 հազարի, իսկ բուհերի ուսանողներինը՝ 11 հազարից 56 հազարի։ Թերթերի միանվագ

տպաքանակն աճել է ավելի քան 7 անգամ և 235 հազար օրինակից հասել մեկ միլիոն 690 հազարի։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունն այդ ժամանակաշրջանում ավելացել է շուրջ 21 անգամ։ Շահագործման հանձնված բնակելի տների ընդհանուր մակերեսն աճել է ավելի քան 6 անգամ՝ 174 հազար քմ-ից հասնելով մեկ միլիոն 117 հազար քառակուսի մետրի։ Ընթացիկ հնգամյակի անցած ժամանակամիջոցում կատարվել են հիմնական պլանային առաջադրանքները։ Որակի բարձրագույն կատեգորիայով արտադրանքի թողարկումն ավելացել է։ Կատարվել են գյուղատնտեսական հիմնական մթերքների գնումների պետական պլանները։

Դրա հետ մեկտեղ մի շարք մինիստրությունների, գերատեսչությունների և ժողովրդական տնտեսության ճյուղերի աշխատանքում կան լուրջ թերություններ, որոնք խոչընդոտում են աշխատավորական կոլեկտիվներին առաջադրված խնդիրների իրականացման գործում, գցում արագացման տեմպերը։ Ընթացիկ հնգամյակի անցած ժամանակահատվածում շինարարական կազմակերպությունները հիմնական ցուցանիշներով ձախողել են կապիտալ շինարարության պլանների կատարումը։ Անբավարար վիճակ է ստեղծվել սոցիալ-կենցաղային օբյեկտների, բնակարանների, մանկական նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների, ակումբների շինարարության ասպարեզում։

Տակավին լրիվ չեն օգտագործվում տնտեսական նոր պայմանների ընձեռած հնարավորությունները, անբավարար է սոցիալական զարգացման խնդիրներին գերադասություն տալու, պարենով բնակչության ապահովումը բարելավելու, ռեզերվների որոնման, լրացուցիչ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և բնակչությանը ցույց տրվող վճարովի սպասարկման հնարավոր ավելացման գործը։ Շոշափելի շրջադարձ չի նկատվում գիտատեխնիկական առաջադիմության արդյունքները արտադրության մեջ կիրառելու, երկրորդային ռեսուրսները տնտեսական շրջանառության մեջ դնելու բնագավառում։ Էական բարելավում չի նկատվում բնակչությանը գյուղատնտեսական մթերքների մատակարարման գործում։ Տեղից գրեթե չի շարժվում քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունների, կոլեկտիվ այգեգործության և բանջարաբուծության կազմակերպման գործը, ցանկալի տեմպերով չեն ներդրվում ընտանեկան կապալը և տնտհաշվարկը։

Այս ամենից հետո պատահական չէ, որ դեպի լավը կատարվող փոփոխությունները ընթանում են դանդաղ։ Վերակառուցման գործը ավելի դժվարին դուրս եկավ, իսկ կուտակված պրոբլեմների պատճառները՝ ավելի խորը, քան կարելի էր պատկերացնել։ ՀԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա սեպտեմբերյան պլենումում տրվեց հանրապետությունում ստեղծված իրավիճակի խոր վերլուծությունը, սկզբունքային գնահատական տրվեց հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման մեջ ընթացող պրոցեսներին։

Պետք է խոստովանել, որ հաճախ արագացման գործը առաջ է ընթանում սոսկ խոսակցություններում ու թղթի վրա։ Իրական կյանքում տնտեսավարման նոր եղանակներին անցնելը, արտադրանքի տեխնիկական մակարդակին և որակին ներկայացվող պահանջների կտրուկ բարձրացումը աշխատանքային կոլեկտիվների, կուսակցական կազմակերպությունների շատ ղեկավարների հանկարծակիի բերեցին, քանի որ նրանք դրան պատրաստ չէին։

Աշխատանքի կազմակերպման կատարելագործումը, պետական ձեռնարկության մասին օրենքով նախատեսված աշխատանքային կոլեկտիվների իրավունքների ու պարտականությունների ընդլայնումը պետք է զգալիորեն մեծացնեն հանրապետության ժողովրդական տնտեսության հզորությունը, նրա հառույցը։ Լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման գործողության պայմաններում գլխավոր, ուղղություն տվող դերը իրենց վրա պետք է վերցնեն շրջկոմներն ու քաղկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները։

Այսօրվա արտադրությունը, աշխատանքի բնույթը բարձր պահանջներ են հարուցում մարդկային գործոնին. կուլտուրտեխնիկական պատշաճ մակարդակ, պրոֆեսիոնալ վարպետություն, կարգապահություն։ Սրանք այն գումարելիներն են, առանց որոնց անհնար է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը։

Ավելի քան երբևէ, մեծանում են ղեկավար աշխատողներին ներկայացվող պահանջները՝ քաղաքական հասունություն ու դաստիարակչական հմտու-



թյուն, բարոյական կատարելություն, բարձր պրոֆեսիոնալիզմ, իրազեկություն, նախաձեռնություն, համարձակություն, պատասխանատվություն, խոսքի և գործի միասնություն։

Մեր կյանքի բոլոր ոլորտների արմատական նորացումը աներևակայելի է առանց կտրուկ շրջադարձի դեպի մարդկանց կոնկրետ կարիքներն ու պահանջմունքները։ Կյանքը ստիպում է նորովի նայել սոցիալական ոլորտի զարգացման պրոբլեմներին, խորապես իմաստավորել այդ ոլորտի հարաճուն նշանակությունը։ Սոցիալական պրոբլեմների նկատմամբ ավելի մեծ ուշադրություն են պահանջում մեզանից նաև անցյալի դասերը։ Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում, սոցիալ-տնտեսական և քաղաքական ոլորտներում տեղի ունեցած ձևախեղումները խոր հետք թողեցին ինչպես առանձին մարդկանց բարոյական կերպարի, այնպես էլ ամբողջ հասարակության բարոյական վիճակի վրա։ Ուստի հանրապետության կուսակցական կազմակերպության գործունեության կարևորագույն ուղղություններից մեկը պետք է դառնա հասարակական կյանքի բոլոր ոլորտների առողջացումը, դրանց մաքրումը այն ամենից, ինչը խորթ է սովետական ապրելակերպին։

Վերակառուցման պրոցեսը զորանում է նաև հոգևոր-գաղափարախոսական ոլորտում։ Սովետական մարդիկ բացառիկ հետաքրքրություն են ցուցաբերում պատմության ու քաղաքականության նկատմամբ։ Սկսված վերափոխումները նպաստում են սովետական ժողովրդի հեղափոխական-հայրենասիրական զգացումների դրսևորմանը։ Հայրենասիրության ձևավորման հարցում դժվար է գերագնահատել պատմության դերը։ Հարկ է նկատել, որ չի կարելի սովետական պետության պատմությունը ներկայացնել որպես սխալների ու մոլորությունների անընդմեջ շղթա։ Միաժամանակ վնասակար են անցյալի գունազարդումը, պատմական պրոցեսի դիմազրկումը, առավել ևս՝ պատմության նենգափոխումը։ Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում, մեր դարաշրջանը, սոցիալ-քաղաքական խոր վերափոխումների, դեմոկրատիայի ու հրապարակայնության աննախադեպ զարգացման ժամանակը, ի հայտ են բերում բարդ պրոբլեմներ ազգամիջյան հարաբերությունների ոլորտում, որոնք գոյություն ունեին նաև առաջներում, բայց անհատի պաշտամունքի ու լճացման տարիներին գտնվում էին լռության գոտում։ Դրանցից է Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը։ Վերջինիս արմատները սկիզբ են առնում պատմական, սոցիալական, տնտեսական, մշակութային, էթնիկական գործոնների բարդ միահյուսումից, անցյալում ազգային քաղաքականության խեղաթյուրումներից։ Ինքնավար մարզում երկար ժամանակ չէին լուծվում հայ բնակչության ազգային զգացմունքներն ու շահերը շոշափող կարևոր շատ հարցեր, առանձնապես մշակույթի, կրթության ոլորտում, կադրային քաղաքականության մեջ։ Խախտվում էին ինքնավար մարզի սահմանադրական իրավունքները։ Այս կենսական պրոբլեմները կուտակվում էին տասնամյակներ շարունակ, չստանալով ոչ միայն անհրաժեշտ լուծում, այլև նույնիսկ հրապարակային ճանաչում։

Վերակառուցումը, դեմոկրատացումը և հրապարակայնությունը ի հայտ բերեցին դրանք, հնարավորություն ընձեռեցին բացեիբաց վերլուծել ու քննարկել հիվանդ գին պրոցեսները, որոնել պրոբլեմների լուծման ուղիներ։

Մեր առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ են ծառանում Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների իրագործման նպատակով։ Այդ փաստաթղթերը հոգատարությամբ են տոգորված ռեգիոնում կայունության վերահաստատման, հայ և ադրբեջանական ժողովուրդների իսկական բարեկամության ամրապնդման նկատմամբ, դրանց սկզբունքային դրույթները տալիս են ԼՂԻՄ-ի պրոբլեմների լուծման հուսալի բանալի։ Անհրաժեշտ է հասնել ղարաբաղյան հարցի արդար լուծմանը, որը և կլիցքաթափի լարված մթնոլորտը։

ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը խնդիր դրեց համարձակ շրջադարձ կատարել դեպի մեր պատմության չուսումնասիրված էջերը, հայ ժողովրդի հոգևոր, մշակութային ժառանգությունը։ Չպետք է լինեն ոչ մոռացված անուններ, ոչ էլ հոգևոր կյանքից դուրս մնացած արժեքավոր գրքեր։

Մեր առաջնահերթ խնդիրն է ուժեղացնել աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Միանգամայն բնական է

սեփական ժողովուրդը, ազգը արժանավայել ներկայացնելու ձգտումը: Բայց մեզ համար հոգեհարազատ է նաև միասնական ընտանիքի զգացումը, սովետական բազմազգ տերության իրավահավասար անդամ լինելը: Մեր պարտքն է աչքի լույսի պես պահպանել եղբայրացած ազգերի դաշինքը, մեր ժողովրդի հետագա առաջադիմության ու բարգավաճման երաշխիքը:

Կուսակցությունն այսօր միջոցներ է ձեռնարկում վերակառուցման պրոցեսում նոր մակարդակի բարձրացնելու ազգամիջյան հարաբերությունների կատարելագործումը: Իրականում ինտերնացիոնալիզմը միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի մեջ ամեն մի հանրապետության հնարավորությունների ներդրումն է, հոգևոր արժեքների փոխհարստացումը, սովետական մարդկանց մեջ ինտերնացիոնալիստական համոզմունքների ամրապնդումը:

ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը սկզբունքային դիրքերից վերլուծեց հանրապետության կուսկազմակերպության աշխատանքը: Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցողները սուր քննադատության ենթարկեցին Կենտկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Դեմիրճյանի կադրային քաղաքականությունը, նշեցին, որ կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցում խիստ բացակայել է հրապարակայնությունը: Այսօր տանջալի իրողություն դարձած ճգնաժամային իրավիճակը, նշվեց պլենումում, ծնունդ է առել վաղուց, կարծեցյալ բարվոքության ու բարգավաճման ժամանակաշրջանում: Զեղծումներ էին տեղի ունեցել ներկուսակցական կյանքում, սկսել էին կորչել հանրապետական կուսակցական կազմակերպության բոլշևիկյան ավանդույթները: Մարդկանց մի մասի շրջանում տեղի էր ունեցել սոցիալիստական արժեքների անկում, ուժեղացել էր սպառողականության ալիքը: Ամենուրեք աճում էր ընդհանուր դժգոհությունը: Հիրավի, դա հանրապետությունում ստեղծված սոցիալ-քաղաքական իրավիճակի շատ դառը, բայց արդարացի գնահատականն է:

Մեր կյանքի դեմոկրատացման ուղիներից է հասարակական նոր կազմակերպությունների ստեղծումը: Ուշադրության է արժանի, օրինակ, այնպիսի ընկերության կամ ասոցիացիայի ստեղծման առաջարկը, որը կոչված է աջակցելու վերակառուցման, դեմոկրատացման և հրապարակայնության կուրսին: Այդ ընկերությունը կարող էր զբաղվել հայրենասիրական ու լուսավորչական գործունեությամբ՝ հայ ժողովրդի մշակութային ժառանգության ուսումնասիրմամբ ու տարածմամբ, կնպաստեր հայագիտության զարգացմանը, մեր պատմության «սպիտակ բծերի» վերացմանը, հայոց լեզվի և ազգային-ռուսերեն երկլեզվության զարգացմանը, երկրում և արտասահմանում բնակվող մեր հայրենակիցների հետ կապերի ամրապնդմանը, էկոլոգիական պրոբլեմների լուծմանը:

Հայաստանի աշխատավորները, ինչպես որ բոլոր սովետական մարդիկ, պաշտպանում և հավանություն են տալիս լենինյան կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությանը, որը սովետական ժողովրդին տանում է վերակառուցման և հասարակության նորացման ուղիով: Կասկածից վեր է, որ նրանք իրենց ծանրակշիռ ներդրումը կունենան վերակառուցման գործում:

Մեր անցած ուղին խորապես հաստատում է մեր սոցիալիստական ընտրության ճիշտ լինելը, մեծ Հոկտեմբերի անանց նշանակությունը, վիթխարածավալ այն հնարավորությունները, որոնք ամփոփված են նոր հասարակարգի մեջ: Որքան էլ դրամատիկ ու հակասական լինի Հոկտեմբերի հայրենիքի պատմությունը, այն սոցիալական առաջադիմության ջահակիրն է, խաղաղության պատվարը մեր հինավուրց մոլորակում: Այսօր սոցիալիստական զարգացման ուղիով ընթանում են տասնյակ երկրներ: Իրողություն են դարձել սոցիալիստական կեցության աննախադեպ հիմքերը աշխատավորների իշխանություն՝ քաղաքականության մեջ, հասարակական սեփականություն՝ տնտեսության մեջ, կոլեկտիվիզմ և փոխօգնություն՝ մարդկանց հարաբերություններում: Մերժելով հին աշխարհի օրենքները, Հոկտեմբերը բացեց նոր աշխարհի ուղին:



# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՆԵՐԴԱՇՆԱԿ ԸՆԹԱՑՔԻ ԳՐԱՎԱԿԱՆ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԼԻԱՐՅՈՒՆ ԿՅԱՆՔՈՎ ԱՊՐՈՂ յուրաքանչյուր քաղաքացու առջև ներկայումս անխուսափելիորեն ծառանում են սովետական հասարակության ապագայի հարցերը: Իրոք, տեսության առանցքային պրոբլեմներն այդպես լայնորեն երբևէ չեն ընդգրկել հասարակության բոլոր խավերը, նման խորությամբ չեն հուզել մարդկանց: Ինչպիսի՞ն է մեր ապագան, ճի՞շտ ուղիով ենք արդյոք ընթանում, չե՞ն կրկնվի անցյալի սխալներն ու կարիք չի՞ լինի կրկին խոսելու վերակառուցման անհրաժեշտության մասին:

Այս և նման հարցերը դադարել են լոկ հիմնազբաղ փիլիսոփաների, պատմաբանների, տնտեսագետների, այլ գիտաճյուղերի ներկայացուցիչների մենաշնորհը լինելուց, դրանք հորդել են մամուլի էջերը, ներթափանցել գեղարվեստական գրականություն, դարձել առօրյա զրույցների ու վեճերի առարկա: Անժխտելի է այն փաստը, որ սովետական հասարակագիտական միտքը պատրաստ չեղավ պատասխան տալու հիշյալ հարցերին: Եվ եթե 70-ական թվականներին՝ լճացման շրջանին անդրադառնալիս մենք խոսում ենք տնտեսական կյանքում ուրվագծվող նախաճգնաժամային երևույթների մասին, ապա հասարակագիտական մտքի առումով պետք է ուղղակի, առանց վերապահումների, ընդունել ճգնաժամի գոյությունը:

[illegible], չէ՞ որ լճացումն ինքը, որպես արգելակման մեխանիզմների և անցանկալի այլ երևույթների համալիր, ունեցել է իր «տեսական հիմնավորումը» ամենից առաջ հանձինս դոգմատիկական մտածելակերպի, տիրացուական դրույթների և պարզունակ սխեմաների: Սոցիալական իրականության քարացածությունն արտացոլվում էր կարծրացած, ոչ ճկուն տեսությունների տեսքով և, իր հերթին, արդարացվում դրանց շնորհիվ: Այսպես, տնտեսական կյանքի անկազմակերպվածությունը, աշխատանքի ցածր արտադրողականությունը, հումքի և էներգիայի վիթխարի կորուստները արդարացվում-քողարկվում էին «էկոնոմիկան պետք է խնայողական լինի» լոզունգային սոփեստությամբ: «Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը» փաստորեն քողարկում էր հասարակության հոգևոր և բարոյական կյանքում, կրթության և դաստիարակության ոլորտում, մարդկանց առօրյա փոխհարաբերություններում եղած բազում տագնապահարույց պրոբլեմներ: Իսկ, օրինակ, «փառք աշխատանքին» լոզունգը, որ ամեն քայլափոխի համառորեն հետապնդում էր (և առայժմ էլ հետապնդում է) սովետական մարդուն, կոչված էր ըստ էության նրան հաշտեցնելու-համակերպելու աշխատանքի և աշխատավորի սոցիալական վարկի ակնհայտ անկման հետ: Մի խոսքով, լճացումը, որպես իրողություն, ունեցել է իրեն համապատասխան առասպելաբանությունը, որի առանձնահատկությունները դեռ կարոտ են համակողմանի վերլուծության:

Այսօր կուսակցությունը, ձեռնարկելով սովետական հասարակության արմատական վերափոխումների ընդարձակ ծրագիր, հասարակագետներին կոչ է անում ակտիվորեն ներգրավվելու դրանց ընթացքին: Վերակառուցումը, հասարակական կյանքի դեմոկրատացումը, հրապարակայնությունը կյանքի են կոչել նոր երևույթներ, դրանով

*ՄԻՐԶՈՅԱՆ ՎԱԼԵՐԻ ԱՐՄԵՆԱԿԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի ավագ գիտաշխատող:*

իսկ ընդարձակվել է հասարակագետների գործունեության ասպարեզը: Տեսական նոր ուղենիշներ տվեցին ՍՄԿԿ XXVII համագումարը, XIX համամիութենական կուսկոնֆերանսը, Կենտրոնական կոմիտեի մի շարք պլենումները: Այնուամենայնիվ, ստիպված ենք ընդունելու այն դառը ճշմարտությունը, որ հասարակագետների ավանդը վերակառուցման տեսական, հիմնավորման մեջ առայժմ խիստ անբավարար է և որ բուն հասարակագիտության ասպարեզում վերակառուցումը շատ ավելի դանդաղ ու դժվարությամբ է ընթանում, քան ցանկացած այլ բնագավառում:

Ստորև սահմանափակվենք փիլիսոփայության տեղի ու դերի քննարկմամբ, մնացած գիտաճյուղերը թողնելով համապատասխան մասնագետների: Այլ կերպ ասած, տեսնենք ո՞րն է մեր՝ փիլիսոփաներիս մեղքի բաժինը և ի՞նչ կերպ կարող ենք օգտակար լինել վերակառուցման ընթացքին:

Ժամանակին Յու. Վ. Անդրոպովը հստակորեն ձևակերպեց մի միտք, որը հետագայում փաստորեն որդեգրվեց վերակառուցման կուրսի կողմից՝ մենք վատ գիտենք այն հասարակությունը, որում ապրում ենք: Սրանից էլ պարզ երևի դժվար է խոստովանել տեսական մտքի հետ մնալը սոցիալական իրողությունից և հատկապես փիլիսոփաների կտրվածությունը իրական կյանքից: Ասենք, մինչև Անդրոպովը, դեռևս 1981 թվականին, կուսակցության XXVI համագումարում միանգամայն որոշակիորեն (և ոչ առանց հիմքի) հենց փիլիսոփաներին ներկայացվեց ամենածանր մեղադրանքը՝ փիլիսոփաները հաճախ գերադասում են ապացուցել ապացուցվածը, փոխանակ իմաստավորելու կյանքի նոր երևույթները:

Արդեն այն ժամանակ կարող էր օրինական հարց ծագել յուրաքանչյուր, մանավանդ սոցիալական պրոբլեմներով զբաղվող փիլիսոփայի մեջ. իսկ որքա՞ն էր հնարավոր իրոք իմաստավորել կյանքի նոր երևույթները (ասենք, հին երևույթներն էլ պակաս իմաստավորո՞ւմ չէին պահանջում): Այլ կերպ ասած, փիլիսոփաներն ի՞րե՞նց կամքով էին արդյոք «հաճախ գերադասում» և լոկ հաճույքի՞ համար էին խուսափում «փոխանակ»-ից: Հարցն է՛լ ավելի ճշգրիտ ձևակերպենք՝ հնարավո՞ր էր արդյոք առկա քաղաքական իրադրության մեջ, հոգևոր և բարոյական մթնոլորտում իսկապես գերադասել նորի իմաստավորումը հնի կրկնությունից: Նման դեր օբյեկտիվորեն պահանջվո՞ւմ էր արդյոք փիլիսոփաներից, թե՞ ոչ:

Հիշենք, թե փիլիսոփայությանը և առհասարակ հասարակագիտական մտքին ինչ սոցիալական պատվեր է ներկայացվել տասնամյակներ շարունակ. առավելապես սոցիալիզմի անզուսպ գովաբանման և, համապատասխանաբար, թերությունների, կուտակված պրոբլեմների, ճգնաժամային երևույթների առավելագույն սքողման պատվեր, կուսակցական վերնախավի փառաբանման, կուսակցական և պետական որոշումների անսխալականության հիմնավորման պատվեր, անպրոբլեմայնության և վարդագույն հեռանկարների զգացողության սերմանման պատվեր: Ավելացնենք, որ անգամ պրոպագանդայի ասպարեզում հասարակագետները սահմանափակված են եղել լոկ պասիվ հայեցողական, այլ ոչ գոնե քիչ թե շատ ակտիվ մեկնաբանության գործառույթով: Ահա թե որտեղից է գալիս «ապացուցվածն ապացուցելու» մտայնությունը՝ փիլիսոփայական մտքի ամոթալի ամլացումը:

Փոխվե՞լ է արդյոք վիճակն այժմ, կամ, ավելի իրատեսորեն, փոխվո՞ւմ է արդյոք: Անտարակույս: Կուսակցության XXVII համագումարի, XIX համամիութենական կոնֆերանսի, Կենտկոմի պլենումների, գլխավոր քարտուղարի և մյուս քարտուղարների զեկուցումների ու ելույթների մակարդակում հասարակագիտության կարևորության շեշտադրումն ակնառու է: Եվ դա բխում է վերակառուցման վիթխարի ծրագրի բուն բովանդակությունից. մի՞թե առանց սոցիալական գիտելիքների հնարավոր է ապահովել տնտեսական ռեֆորմի գործունեությունը, հասարակության դեմոկրատացումը, մարդկային գործոնի արդյունավետ և հումանիստական ակտիվացումը, սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքների գործողության խորացումը, կառավարման կատարելագործումը և մյուս բոլոր ստրատեգիական խնդիրների լուծման ընթացքի ներդաշնակությունը: Դրա հետ մեկտեղ, իրական կյանքի մակարդակում, սոցիալական հաստատությունների գործունեության, աշխատավորական կոլեկտիվների ղեկավարության, առօրյա կյանքի կազմակերպման, ցանկացած կոնկրետ խնդրի լուծման գործում առայժմ ակնհայտ է որոշակի տեխնոկրատական արհամարհանքը սոցիալական ճանաչողության նկատմամբ, մի բան, որ չի կարող զգալիորեն չթուլացնել հասարակագետների իրական ազդեցությունը վերակառուցման ընթացքի վրա:

Փաստն այն է, որ մեր հասարակությունը դեռևս ինչպես հարկն է շահագրգռված չէ սոցիալական ինֆորմացիայով: Սա, կարծում ենք, հետևանք է դեմոկրատացման





տակավին անբավարար աստիճանի: Հասարակության բոլոր ենթահամակարգերը, սոցիալական զանազան հանրույթները առայժմ չեն բնորոշվում ինքնակառավարման այնպիսի մակարդակով, որ նրանց ներքնապես մղեր դեպի սոցիալական գիտելիք: Բավական է մատնանշել, թե ինչ դժվարություններով է սոցիոլոգիան իր համար ուղի հարթում դեպի արտադրություն, այն էլ տվյալ գիտության զարգացման մասին կուսակցության և կառավարության ընդունած որոշումներից հետո:

Հետևաբար, փիլիսոփայության հիմնական սոցիալական խնդիրը հասարակության հետագա դեմոկրատացմանը ռեալ կերպով նպաստելն է: Սա թե՛ կարևորագույն սոցիալական պատվերն է, թե՛ վերակառուցման նպատակների կենսագործման անցքային ուղին և թե՛ բուն իսկ փիլիսոփայության «գոյության հիմքը»: Փիլիսոփայության անկաշկանդ զարգացման և սովետական հասարակության վերակառուցման շահերը համընկնում են:

Արդ, ավելի կոնկրետ, ո՞րն է փիլիսոփայության դերը վերակառուցման տեսական-գաղափարական հիմնավորման մեջ. կարծում ենք, ամենից առաջ վերակառուցման ներդաշնակ, հումանիստական ընթացքի ապահովումը, նախկին սխալների, չհիմնավորված նպատակադրումների և թերատ լուծումների կրկնության բացառումը: Ի տարբերություն հասարակական գիտակցության այլ ձևերի և առանձին գիտությունների, հատկապես փիլիսոփայությունն է ունակ տալու վերակառուցման նպատակների, հասարակության զարգացման ուղիների և միջոցների ամբողջական, միասնական պատկերը:

Չափազանց մեծ է փիլիսոփայության դերը նոր երևույթների և պրոցեսների աշխարհայացքային իմաստավորման, զանազան գիտաճյուղերում իրագործվող ուսումնասիրությունների մեթոդաբանական կողմնորոշման և ստացված գիտական արդյունքների ընդհանրացման, ամբողջականացման առումով: Սոցիալական ճանաչողության բուն օբյեկտը միասնական է, թեպետ մասնավոր գիտություններն անխուսափելիորեն առանձնացնում են իրենց ուրույն առարկան, այսինքն՝ միևնույն օբյեկտի տարբեր ընկալումները: Վտանգն այստեղ մասի նույնացումն է ամբողջի հետ, սեփական տեսակետի կարևորության բացարձակացումը: Այս առումով ավելորդ չէ հիշեցնել հին հնդկական առածն այն չորս կույր իմաստունների մասին, ովքեր, շոշափելով փղին, հայտնում են տարբեր կարծիքներ. մեկը գտնում է, որ իրենց առջև պարան է, քանի որ նա պոչն է բռնել, մյուսը ձեռք է տալիս կնճիթին և հայտարարում, թե գերան է, երրորդը ոտքն է շոշափում ու եզրակացնում, որ դա ընդամենը ծառ է, իսկ չորրորդը վստահ հայտարարում է, թե իրենք գործ ունեն պատի հետ, քանի որ մեջքն է շոշափել: Իմաստունները վիճում են, իրարից խռովում-հեռանում, այդպես էլ չճանաչելով իմացության իրենց օբյեկտը՝ փղին: Սոցիալական ճանաչողության մեջ կույրի պես չխարխափելու համար և մանավանդ արմատական վերափոխումներ ձեռնարկելիս մեզ հույժ անհրաժեշտ է համադրել զանազան տեսակետները, ամբողջականացնել դրանք փիլիսոփայության մեթոդաբանական-աշխարհայացքային հիմքի վրա: Այլապես անխուսափելի են նաև գործնական լուրջ սխալները:

Այսպես, չէ՞ որ նախկինում էլ մենք խոսել ենք «սոցիալիստական դեմոկրատիայի անշեղ ընդլայնման», աշխատանքային խանդավառության մասին, փորձել ենք խթանել սովետական մարդկանց աշխատանքային և սոցիալական ակտիվությունը, նրանց ընդգրկել հասարակության կառավարմանը և այլն: Սակայն ինչպե՞ս են լուծվել առաջադրված խնդիրները՝ շրջանցելով իրական դեմոկրատիան, ուղղակի նսեմացնելով մարդու դերը, ապավինելով տեխնիկային, վարչարարությանը, վարքի պարտադիր ստանդարտներին, հարկադրական կարգապահությանը և այլն: Հոչակված նպատակների և գործադրվող միջոցների միջև այդ հակասությունը միայն այսօր է գիտակցվում, երբ վերակառուցման ընթացքը մեզ ստիպում է նորովի իմաստավորել սովետական հասարակության անցյալն ու ապագան:

Անցյալում դրսևորվել են տեսական-աշխարհայացքային երկու սխալ՝ տեխնոկրատիզմը և էկոնոմիզմը: Առաջինի հետևանքով բոլոր սոցիալական և անգամ զուտ մարդկային պրոբլեմները մենք փորձել ենք բխեցնել անմիջապես գիտատեխնիկական զարգացումից, արտադրողական ուժերի մակարդակից, տեխնիկայից և տեխնոլոգիայից: Բավական է այսօրվա աչքերով կարդալ կուսակցության ծրագրի 1961 թ. տեքստը, համոզվելու համար, թե ինչ բացառիկ նշանակություն է տրված արտադրության ավտոմատացմանն ու մեքենայացմանը բուն սոցիալական պրոբլեմների լուծման մեջ: «Տեխնիկան է որոշում ամեն ինչ» լոզունգը դարձել էր պաշտոնական փիլիսոփայություն, արդարացնելով մարդկային վիթխարի կորուստները, անմարդկային, զորանո-

ցային աշխատանքը: Տեխնոկրատական աշխարհայացքն այժմ էլ դեռ լայնորեն տարածված է, լրջորեն խոչընդոտում է վերակառուցման ընթացքին: Օրինակ, արտադրության շատ ղեկավարների շրջանում առայժմ տիրապետում է ավտորիտար ոճը, մարդկային գործոնի դերի սահմանափակումը, լավ ու վատ աշխատողների համահարթեցման մտայնությունը, սոցիալական հարցերի ստորադասումը արտադրական հարցերին և այլն:

Էկոնոմիզմը գերագնահատում է տնտեսականի դերն ու նշանակությունը մարդու կյանքում, կրկին նսեմացնելով սոցիալական, հոգևոր, բարոյական գործոնների դերը: «Տնտեսական մարդու» հայեցակետը, որ սկիզբ է առնում Ա. Սմիթից, առ այսօր փաստորեն իշխում է հասարակական կյանքի և հատկապես մարդկանց աշխատանքային գործունեության կազմակերպման ասպարեզում և մեզ խանգարում է, ասենք, հասկանալ, թե ինչու ամենազոր թվացող նյութական վարձատրությունն ամենևին չի ապահովում ցանկալի աշխատանքային վարք, բարձր արդյունավետություն և որակ, ամուր կարգապահություն:

Տեխնոկրատիզմն ու էկոնոմիզմը, կրկնում ենք, առայժմ պահպանվում են և ըստ էության ծառայում են որպես անցյալից ժառանգած արգելակման մեխանիզմների տեսական հիմք: Այդ հիմքի վրա են խարսխված, օրինակ, բյուրոկրատիան, դեմոկրատիայի սահմանափակումները, ժողովրդի ինքնակառավարման ծավալման զանազան խոչընդոտները, անհատական աշխատանքային գործունեության ընթացքի խեղաթյուրումները և այլն: Կամ, մեր հանրապետությունում, մի՞թե հենց տեխնոկրատական մոտեցման, հրապարակայնության պակասի, ժողովրդի նկատմամբ ճշմարիտ հարգանքի բացակայության ցայտուն օրինակ չէր մի թիզ Հայաստանում, նրա մայրաքաղաքի սրտի տակ աղետաբեր ատոմակայանի կառուցումը: Ուրախալի է, որ երբ, մեծ ուշացումով, վերակառուցման շունչը մեզ էլ հասավ, հանրապետության նոր ղեկավարությունը ընդառաջ գնաց ժողովրդի կամքին և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում բացեիբաց ընդունեց նախկին տեխնոկրատական լուծման ողջ սխալը. «Հայկական ատոմային էլեկտրակայանը կփակվի'»:

Աշխարհայացքային նոր սխալներից խուսափելու համար ներկայումս փիլիսոփայության մեթոդաբանական դերը հատկապես կարևոր է տնտեսական ռեֆորմի հումանիստական կողմնորոշման և ներդաշնակ ընթացքի ապահովման մեջ: Ի վերջո, տնտեսական կյանքի արմատական վերակառուցման, ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ընդլայնման, տնտհաշվարկի և այդ կարգի մյուս միջոցառումների նպատակը ոչ թե լոկ տնտեսական է, այլև սոցիալական: Ավելին՝ ոչ այնքան տնտեսական, որքան սոցիալական: Զուտ տնտեսագիտական դատողությունների շրջանակում երբեմն մոռացության է տրվում տնտեսական կյանքի վերակառուցման կարևորագույն առանձնահատկությունը, դրա սոցիալիստականությունը, այն է՝ էկոնոմիկայի վերակողմնորոշումը դեպի սոցիալական ասպարեզի խնդիրների լուծումը:

Բուն իսկ սոցիալական զարգացման ըմբռնումը դեռ կարիք ունի հետագա լուսաբանումների: Գաղտնիք չէ, որ գրականության մեջ առայժմ չկա միասնական ըմբռնում, վիճակագրական տվյալներում՝ միասնական ցուցանիշներ: Սոցիալական ոլորտը չի կարելի հանգեցնել լոկ պարենային կամ բնակարանային, առողջապահության կամ սպասարկման հարցերին: Այդ հարցերը, անտարակույս, բացառիկ կարևորություն ունեն և սոցիալական զարգացման ներկա փուլում մղված են առաջին պլան, սակայն դրանք չեն սպառում սոցիալականի էությունը: Այսօրվա խնդիրների հետևում չպետք է անտեսել հեռանկարը, բուն իսկ սոցիալական զարգացման մեջ չպետք է շփոթել նպատակն ու միջոցները: Ահա, ուրեմն, եթե հիշյալ հարցերը սպառեին սոցիալականի էությունը, ապա սոցիալիստական հասարակարգը սկզբունքորեն որևէ էական առավելություն չէր ունենա կապիտալիստականի նկատմամբ: Սոցիալականը մարդու ինքնազարգացման, ինքնահաստատման ասպարեզն է, մարդու էութենական ուժերի դրսևորման և ծաղկման ասպարեզը, առարկայական գործունեության միջոցով ինքնաճանաչման ասպարեզը: Կրկնում ենք, լավ վիճակից չէ, որ մենք ներկայումս խոսում ենք պարենային խնդրի մասին, որպես կարևորագույնի: Դա իրոք կարևորագույն խնդիրն է, թեպետ, եթե չլինեին ստալինյան աղավաղումները և բրեժնևյան լճացումը, տնտեսական և մարդկային մեծ կորուստները երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, ապա մենք հիմա լուծելիս կլինեինք բոլորովին այլ՝ բուն սոցիալական բնույթի խնդիրներ: Ի դեպ, արժե ավելացնել, որ սոցիալ-փիլիսոփայական տեսակետից անգամ հիշյալ կոնկրետ խնդրի լուծումը սոցիալիզմի և կապիտալիզմի օրոք տարբեր սոցիալական նշանակություն ունի, լուծման տարբեր եղանակներ:



Եթե անդրադառնանք վերակառուցման մյուս կարևոր նպատակին՝ հասարակական կյանքի դեմոկրատացմանը, ապա այստեղ նույնպես փիլիսոփայական մեկնաբանությունները, աշխարհայացքային, մեթոդաբանական պարզաբանումները պարզապես կենսականորեն անհրաժեշտ են: Կուսակցությունը վիթխարի, տիտանական գործ է ձեռնարկել՝ արմատապես վերակառուցել քաղաքական սիստեմը, իրավական համակարգը, դեմոկրատացնել կառավարչական ապարատի աշխատանքը, բուն իսկ կուսակցության ղեկավար գործունեությունը, ներկուսակցական կյանքը, խթանել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման նորանոր ձևերի ծավալումը: Այլ ուղի չկա. դեմոկրատիան մեկեն, հրամանագրով չի ստեղծվում, լոկ բարի ցանկություններով ձեռք չի բերվում: Դեմոկրատացումը պայքար է հնի ու նորի միջև, միանգամայն որոշակի սոցիալական ուժերի միջև, սոցիալիզմի զանազան մոդելների միջև: Անհրաժեշտ է խստիվ գիտական, հավասարակշռված ստրատեգիա, օբյեկտիվ փոփոխությունները և մարդկային գործոնի ակտիվացումը ներդաշնակող համապարփակ ծրագիր: Վերջինիս հիմքը դրվեց ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում: Հիշենք դրա կարևոր գծերը՝ ժողովրդական դեպուտատների սովետների վերածնում որպես սոցիալիստական պետականության և ժողովրդի ինքնակառավարման հիմքի, կառավարման խելամիտ ապակենտրոնացում. կուսակցական և պետական մարմինների գործառույթների հստակ սահմանազատում. բյուրոկրատիայի դեմ պայքարի ուժեղացում. հրապարակայնության հետագա ծավալման օրենսդրական երաշխիքների ստեղծում. ընտրական համակարգի կատարելագործում. իրավական պետության ձևավորում և այլն: Բացառիկ կարևորություն ունի մանավանդ այն հարցի շեշտադրումը, թե անհրաժեշտ է ստեղծել քաղաքական սիստեմի ինքնանորացումը ժամանակին ապահովող արդյունավետ մեխանիզմ:

Իրոք, ոչ միայն քաղաքական սիստեմի, այլև տնտեսական կյանքի, հոգևոր ոլորտի, իրավական համակարգի, կադրային կորպուսի, առհասարակ ողջ հասարակական կյանքի ինքնանորացման ուղիով կարելի է խուսափել լճացման կրկնությունից: Իսկ ինքնանորացման մեխանիզմը կարող է իսկապես արդյունավետ գործել, եթե այն զերծ լինի գերլավատեսական ուղղվածությունից, խարսխվի հասարակական զարգացման հակասությունների գիտական ըմբռնման, դրանց հաղթահարման ուղիների դիալեկտիկական մեթոդաբանության վրա: Մասնավորապես, չի կարելի չտեսնել այն խոր հակասությունը, որ կա հասարակության լայն խավերի շրջանում նորացման կրքոտ ձգտումի և բյուրոկրատական ապարատի դիմադրության միջև: Ընդսմին, ծայրահեղություններից խուսափելու համար պետք է սթափ գնահատել այն հանգամանքը, որ 30-ական թվականներին ձևավորված վարչահրամայական համակարգը դյուրին չէ արտամղել դեմոկրատական համակարգով: Պատահական չէ, որ գերատեսչություններն ու մինիստրությունները ներկայումս բավականին հմտորեն օգտագործում են բուն իսկ վերակառուցման ընթացքը, հասարակության դեմոկրատացմանն ուղղված միջոցառումները՝ զրկելու համար ձեռնարկությունները ինքնուրույնությունից և դրանով իսկ առավել ամրապնդելու սեփական իշխանությունը:

Փիլիսոփայության դերը վճռական է վերակառուցման ընթացքի երկու ծայրահեղություններից՝ շտապողականությունից և անվճռականությունից խուսափելու համար: Հենց թեկուզ նույն պրոբլեմի՝ քաղաքական սիստեմի կատարելագործման առումով, շտապողականությունը ոչ պակաս վնասակար է հապաղումից: Պատմությունը բազմիցս ցույց է տվել, որ հեղափոխական իրադարձություններում «ձախ» լոզունգներն ի վերջո նույն կերպ են խանգարել առաջադիմությանը, ինչպես ակնհայտորեն պահպանողական դիրքորոշումը: Մասնավորապես, բյուրոկրատիայի դեմ պայքարը չպետք է վերածել հախուռն կամպանիայի: Չի կարելի անտեսել այն հանգամանքը, որ այդ պայքարը ենթադրում է նաև պետական ապարատի կատարելագործում, ավելորդ օղակների կրճատում, պաշտոնատար անձանց ատեստավորում և այլն: Վերակառուցման վիթխարի ծրագրի իրականացումը կարիք ունի ճկուն և գործունյա ապարատի, պաշտոնյաների բարձր պրոֆեսիոնալիզմի, աշխատանքի ոճի կատարելագործման: Նույնը վերաբերում է ցանկացած խնդրի լուծման. նախկին սխալները չկրկնելու համար անհրաժեշտ է գործողությունների հավասարակշռված, մեթոդաբանորեն անթերի ստրատեգիա:

Այս տեսակետից անփոխարինելի է սոցիալիզմի նոր կոնցեպցիայի մշակումը: Առանց նման տեսական, մեթոդաբանական հիմքի՝ վերակառուցման գործնական ընթացքը ոչ միայն տեղատվություն է ապրելու, այլև անխուսափելիորեն խոտորվելու է: Ընդսմին, սոցիալ-փիլիսոփայական տեսակետից կարևորն այն է, որ սոցիալիզմի ժամանակակից մոդելը տրվի իր սեփական հիմքի վրա: Անշուշտ, սոցիալիս-

վորման հարցում ներկայումս, մեր կարծիքով, բացառիկ նշանակություն ունի իրավական և բարոյական փոփոխությունների ներդաշնակության ապահովումը: Ինքնին հասկանալի է, որ քաղաքական սիստեմի կատարելագործման խնդիրները, իրավական ռեֆորմի նախապատրաստումը, հրապարակայնության ծավալումը, նոր զանգվածային շարժումները հրամայորեն պահանջում են իրավաբանական մի շարք հարցերի բազմակողմանի վերլուծություն, վերակառուցման ողջ ստրատեգիայի իրավագիտական հիմնավորում: Տնտեսական կյանքի աշխուժացումը և հասարակական կյանքի դեմոկրատացումը օրվա խնդիր են դարձրել մի շարք նոր օրենքների (հրապարակայնության, մամուլի, երիտասարդության, միությունների մասին և այլն) ընդունումը: Իրավական պետության մեջ օրենքները անհրաժեշտ են ու կարևոր բյուրոկրատական ապարատի կամայականության դեմ պայքարում, գերատեսչական շահերի սանձահարման, քաղաքացիների արժանապատվությունն ու իրավունքները ապահովելու նպատակով:

Դրա հետ մեկտեղ, չպետք է մոռանալ, որ լոկ օրենքներով հնարավոր չէ փոխել մարդկանց վարքագիծը: Գործելակերպը իսկապես կփոխվի միմիայն մտածելակերպի փոփոխությամբ, այլ պարագայում մենք կրկին խաբելու ենք ինքներս մեզ, խորացնելու բարոյական ֆորմալիզմը և թուլացնելու հենց նույն այդ օրենքների ներգործությունը: Իսկապես, կարելի է ընդունել հրաշալի օրենքներ հրապարակայնության, դեմոկրատական իրավունքների, խոսքի ազատության մասին և այլն, սակայն, եթե մարդկանց մեջ դեռ նստած է վախը, եթե նրանք հոգեպես չեն փոխվել, բարոյապես հասուն չեն, ապա արդյունքը ծաղրանկարային է լինելու:

Մարդիկ պիտի ազատ դառնան ներքնապես, հոգեպես. այլապես արտաքին, լոկ իրավական ազատությունը կզրկվի իր հումանիստական իմաստից: Այնինչ ստալինիզմը կաթվածահար է արել սովետական մարդու արժանապատվության զգացումը, քաղաքացու ինքնահարգանքը: Կրկնում ենք, մարդը պետք է ինքն իրեն հարգի և վստահի, որպեսզի կարողանա օգտվել հասարակության կողմից իրեն ցույց տրվող հարգանքից ու վստահությունից և պահանջի դրանք, եթե չկան: Ընդհակառակը, եթե բացակայում են ներքին ինքնահարգանքը, արժանապատվությունը, պատասխանատվությունը, ապա անձը հասարակական կյանքի իրավական դեմոկրատացումը անխուսափելիորեն ընկալելու է որպես կարգուկանոնի թուլացում, թողտվության մթնոլորտ:

Ահա թե ինչու իրավական ռեֆորմը, օրենքների ճշգրտումը, արդարադատության ողջ դրվածքի վերանայումը պետք է անպայման զուգակցել մարդու հոգևոր աշխարհի, բարոյական արժեքների ակտիվացման, ինքնաբուխ վարքի, ինքնակառավարման և լիիրավ պատասխանատվության զգացումի խթանման հետ: Միայն շաղկապելով իրավականն ու բարոյականը, մենք կկարողանանք խուսափել աշխարհայացքային սխալների կրկնությունից, ապահովել սոցիալական վերափոխումների ներդաշնակ ընթացքը: Օրենքներով անհարկի չհրապուրվելու համար պետք է խորապես գիտակցել, որ հատկապես անբարոյականությունն է ծնում անիրավություն: Եթե անգամ համատարած անօրինականության պայմաններում կարող են պահպանվել բարոյական մարդիկ, ապա հակառակը երբեք չի լինում՝ բարոյազուրկ հասարակությունը չի կարող վերածվել ճշմարիտ իրավական պետության: Ամենալավ օրենքներն ու ամենաճարտար իրավաբաններն անգամ մեզ ինքնին դեռ չեն կարող երաշխավորել լճացման և նույնիսկ ստալինյան շրջանի կրկնումից: Ամենամանրամասնորեն իսկ մշակված իրավական նորմերը, մարդկանց վարքի կարգավորման ամենաստույգ միջոցներն անգամ մեզ չեն կարող ապահովագրել մի նոր Չեռնոբիլից կամ Սումգայիթից, եթե մենք գերագնահատենք իրավականի դերը ի վնաս բարոյականի:

Վերակառուցման ներդաշնակ ընթացքի ապահովումը պահանջում է ինչպես իրավական ռեֆորմի բարոյական ներուժի օգտագործում մարդկանց իրավագիտակցության վրա ազդելու նպատակով, այնպես էլ օրենքի և օրինականության նկատմամբ հարգանքի ձևավորում: Լոկ օրենքների խստացումը կամ լոկ բարոյախոսական քարոզը հավասարապես անզոր են: Պետք է խուսափել հնդկական առածի կույրերի վիճակից, սեփական տեսակետի գերագնահատումից: Ահա այստեղ է, որ պետք է ակտիվանա փիլիսոփայությունը, ուղղորդի տեսական դատողությունները և միջամտի գործնական վերափոխումներին: Վերակառուցումը պահանջում է, որ փիլիսոփայությունը ոչ թե նախկինի պես սոսկ հետին թվով ընդհանրացնի հասարակական զարգացման ընթացքը, այլև, հնարավորին չափ, կանխատեսի ապագա փոփոխությունները և ներազդի դրանց վրա:

---

# ԻՆԺԵՆԵՐԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՐԴԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

ՅՈՒ. ՍԱՐԳՍՅԱՆ

*ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ. գիտատեխնիկական առաջադիմության արագացումը ներկայումս մեծ սրությամբ են դրել երիտասարդության կրթության և ընդհանրապես կադրերի պատրաստման հարցը: Այս խնդրում կարևոր տեղ են գրավում նաև ինժեներական կադրերի պատրաստումը, նրանց վարկի բարձրացումը: «Հասարակության շահերը պահանջում են բարձրացնել ինժեներային աշխատանքի հեղինակությունը»,— ՍՄԿԿ XXVII համագումարում նշեց Մ. Ս. Գորբաչովը:*

*Ինժեներն այսօր իրավամբ համարվում է գիտատեխնիկական առաջընթացի կենտրոնական դեմքը, քանի որ հենց նա է կոչված ստեղծելու այն էական տեղաշարժերը գործող տեխնիկայում և տեխնոլոգիայում, որոնց համախումբը կարող է որակվել որպես գիտատեխնիկական առաջընթաց: Ընդունա՞կ է արդյոք ինժեներական բուհի այսօրվա «միջինացված» շրջանավարտը ստանձնել նման հեղափոխիչ դեր: Այս հարցի պատասխանը, ցավոք, բացասական է: Երևի սա է պատճառը, որ ինժեներական կրթությունն այժմ դարձել է երկրի հասարակայնության մտահոգության և աշխույժ քննարկման առարկա: Մասնավորապես նշվում է, որ ինժեներական պրոֆեսիան վերջին տասնամյակում նկատելիորեն հեղինակազրկվել է, կորցնելով իր ստեղծագործական սկզբնահիմքը, իսկ որպես հետևանք՝ կտրուկ նվազել է դիմորդների հոսքը դեպի ինժեներական բուհեր: Հնչում են ամենատարբեր, հաճախ իրարամերժ կարծիքներ ինժեներական կրթության վերակառուցման վերաբերյալ:*

*Ո՞րն է ժամանակակից ինժեների իդեալը և ինչպե՞ս հասնել դրան: Նախ փորձենք սահմանել ինժեներական գործունեության հիմնական նպատակը: Դա գիտելիքների կիրառումն է տեխնիկական օբյեկտների ստեղծման և նրանց պատրաստման համար՝ ի բարօրություն մարդու: Այսպիսով, ինժեներական գործը մի շարժուն ստեղծագործական պրոցես է իր որոշակի բաղադրիչներով, որոնց ներքին փոխկապակցությունները կարելի է ներկայացնել հետևյալ դիագրամի միջոցով:*




*Սկզբունքորեն նոր տեխնիկական օբյեկտի ստեղծման հետ կապված ինժեներական գործունեությունը անպայման ունի իր գիտական բազան: Ընդ որում ինժեներական նախագծման և նրա գիտական ակունքների միջև կապը իրականացվում է օբյեկտի վերլուծման, գիտափորձի, հետազոտության միջոցով: Հենց այստեղ էլ ծնվում է դիտարկվող օբյեկտի (պրոբլեմի) նոր տեխնիկական լուծումը, նրա կոնցեպցիան, որը հետագայում պետք է ստանա կոնստրուկտիվ, իսկ ավելի ուշ՝ ֆիզիկական ձևավորում: Ինժեներական ստեղծագործության այս բարձրագույն մակարդակը, բնականաբար, մատչելի է մի-*

---

*ՍԱՐԳՍՅԱՆ ՅՈՒՐԻ ԼԵՎՈՆԻ— ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ, տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի ռեկտոր:*

այն հիմնարար գիտելիքներով զինված ինժեներներին։ Նրանք դեռ նոր ձևավորվող մի սերունդ են, որոնց ընդունված է անվանել հետազոտող կամ երբեմն նույնիսկ՝ «մտածող» ինժեներներ։ Հենց նրանք էլ կոչված են նոր տեխնիկայում և տեխնոլոգիայում մարմնավորել հիմնարար գիտության վերջին նվաճումները՝ դառնալով գիտատեխնիկական առաջընթացի առաջամարտիկներ։

Տեխնիկական օբյեկտի կոնցեպցիան վերածվում է նախագծի ինժեներական նախագծման փուլում, որտեղ հաշվարկվում են օբյեկտի անհրաժեշտ պարամետրերը, մշակվում գծագրեր և տեխնիկական նախագիծը կազմող այլ փաստաթղթեր։ Սա կարևորագույն աստիճանն է արտադրանքի ստեղծման ճանապարհին, որն էլ էապես որոշում է ամբողջ պրոցեսի հաջողությունը։ Դիագրամը միաժամանակ հուշում է, որ նախագիծը վերջնական չէ, այն ունի իտերացիոն բնույթ, այսինքն ենթակա է բազմակի փոփոխությունների՝ հաջորդ փուլերից հակադարձ կապերի միջոցով ստացվող ինֆորմացիայի համաձայն։ Օրինակ՝ գծագրերի և մյուս տեխնիկական փաստաթղթերի վերլուծումն արդեն տեխնոլոգիայի մշակման ժամանակ կարող է բացահայտել տվյալ նախագծի տեխնոլոգիական իրականացման անհնարինությունը կամ աննպատակահարմարությունը և այն վերադարձնել նախագծման փուլ անհրաժեշտ ուղղումների համար։ Ինժեներական նախագծման ասպարեզում մասնագիտացող ինժեներ-կոնստրուկտորների ուսուցման ծրագիրը պետք է գերադասաբար արտացոլի նախագծման ստեղծագործական ասպեկտը։

Ինժեներական գործունեության կոնցեպտուալ արդյունքը չի կարող դառնալ ֆիզիկական արդյունք առանց համապատասխան տեխնոլոգիայի (տեխնոլոգիական պրոցեսի), այսինքն տեխնոլոգիական գործողությունների այնպիսի հաջորդականության, որն ուղղված է նախագծված օբյեկտի ստեղծմանը։ Հենց սա էլ ինժեներ-տեխնոլոգների ֆունկցիան է, որոնք կամրջող դեր են կատարում նախագծման և արտադրության միջև։

Արտադրությունը նույնպես ինժեներական գործի բաղադրիչ մասն է։ Այստեղ գործում են ինժեներներ, որոնք կազմակերպում են տեխնոլոգիական պրոցեսներ, շահագործելով արդեն ստեղծված մեքենաները և սարքավորումը։ Ինչպես երևում է դիագրամից, արտադրությունը նույնպես կապված է նախորդող օղակների հետ։

Օբյեկտի նախագծումը և արտադրությունը ինժեների հոբբին չեն։ Ինժեներական աշխատանքի արդյունավետության հիմնական ապացույցը արդյունքի շահագործումն է։ Այստեղ է, որ ֆիզիկական արդյունքը դառնում է կոմերցիոն արդյունք, որն էլ վերջին հաշվով պետք է գնահատի ամբողջ պրոցեսի հաջողությունը։ Ինժեներական գործունեության այս փուլում հանդես են գալիս տնտեսագիտական կողմնորոշմամբ ինժեներներ, որոնք պետք է իրականացնեն կապը արդյունքի շահագործման ոլորտի (շուկայի) և նախագծման օղակի միջև։

Ի՞նչ հետևությունների կարելի է հանգել այս վերլուծությունից։

Նախ, ինժեներական գործունեությունը այսօր կրում է համակարգային բնույթ, որն արտացոլվում է նրա բաղկացուցիչների ուղիղ և հակադարձ կապերի մեջ։ Սա «Գիտություն—տեխնիկա (տեխնոլոգիա)—արտադրություն» համակարգի ձևավորման հետևանք է, որը պայմանավորում է նոր գաղափարների անընդհատ հոսք հիմնարար գիտությունից դեպի կիրառական գիտություն, իսկ այստեղից էլ դեպի արտադրություն։

Երկրորդ, տեխնիկական օբյեկտի ստեղծման ողջ պրոցեսի կենտրոնում ընկած է ինժեներական շարունակվող նախագծման օղակը, որը սնվում է հիմնարար և կիրառական գիտություններից ու իր հերթին սնում հաջորդ տեխնոլոգիական, արտադրական և շահագործման օղակները, որոնց հետ այն գտնվում հակադարձ կապերի մեջ։

Երրորդ, ինժեներական գործունեության աճող բազմազանացումը, նրա առանձին օղակների ավելի ու ավելի ընդգծվող ֆունկցիոնալ մասնագիտացումը պահանջում է ինժեներական կրթության համապատասխան տարբերակում։

Ի վերջո, ինժեներական աշխատանքի բարդ համակարգը չի կարող արդյունավետ գործել առանց կառավարման և ավտոմատացման։ Առանձին օղակներում գործող ինժեներների արդեն նշված մասնագիտացված խմբերից բացի, հարկավոր են լայն պրոֆիլի մասնագետներ, որոնք պետք է կոորդինացնեն համակարգի առանձին օղակների աշխատանքը, կառավարեն նրանց փոխադարձ կապերը, ստեղծեն և կիրառեն ինտեգրացված արտադրական համակարգեր։ Ինժեներական աշխատանքի այս խիստ արդիական ասպարեզը հայտնի է որպես սիստեմատեխնիկա։

Ինժեներական կրթության յուրաքանչյուր առաջադեմ համակարգ պետք է ձգտի բուհի շրջանակներում կամ նրա շրջանակներից դուրս մոդելացնել ինժեներական գործունեության իրական պրոցեսը։ Իսկ այն բանից, թե որքանով է ուսումնական մոդելը համապատասխանում մոդելացվող պրոցեսին, էապես կախված է կրթական համակարգի արդյունավետությունը։ Այստեղ խոսքը վերաբերում է ինչպես կրթության նյութատեխնիկական բազային, այնպես էլ ուսուցման մեթոդաբանությանը։

Ինչպե՞ս ստեղծել այդպիսի մոդել։ Մի ուղին այն է, որ տվյալ մոդելը լինի նմանակող, այ-



սինքն՝ դուրս չգալով տվյալ բուհի շրջանակներից, փորձի կրկնել ապագա ինժեների ստեղծագործական կամ զուտ արտադրական գործունեության այս կամ այն կողմը։ Ինչպես ցույց է տալիս ոչ վաղ անցյալի փորձը, նման ուղին վաղ թե ուշ պետք է բերի փակուղու կամ մոդելը հեռացնի իրականությունից։ Շատ ավելի արդյունավետ է մոդելավորման «կիսանատուրային» եղանակը, երբ ուսումնական պրոցեսի մի մասը անմիջականորեն տեղափոխվում է արտադրություն, կոնստրուկտորական բյուրո կամ գիտահետազոտական ինստիտուտ, գոյացնելով մի սինթետիկ ուսումնաարտադրական համակարգ, որտեղ ինժեներական ձիրքերի ձևավորումն ընթանում է ոչ թե «ջերմոցային» պայմաններում, այլ ինժեների համար բնական ինֆորմացիոն միջավայրում՝ ինժեներական փորձի անմիջական փոխանցման միջոցով։ Հենց սա էլ ուսուցման, գիտության և արտադրության ինտեգրացման հիմնական նպատակներից մեկն է, որը կարմիր թելի պես անցնում է բարձրագույն կրթության վերակառուցման ամբողջ ծրագրի միջով։ Մեզ մոտ այն իրագործվում է ուսումնագիտաարտադրական կոմպլեքսների ստեղծման միջոցով, որոնք ընդգրկում են ամբիոնների մասնաճյուղեր, գիտահետազոտական լաբորատորիաներ և արտադրական տեղամասեր։

Երկրի շատ բուհերում, այդ թվում Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում, զգալի փորձ է կուտակվել ինժեներների պատրաստման եզրափակիչ փուլը անմիջապես ձեռնարկություններում իրականացնելու ուղղությամբ։ Ապագա ինժեներները հաճախ, դիպլոմ ստանալուց հետո, մնում են այստեղ։ Ափսոս, որ այս փորձը դեռ չունի պլանաչափ բնույթ և, որպես կանոն, սոսկ առանձին ամբիոնների նախաձեռնության արդյունք է։

Այստեղ հարկ է հիշել արտասահմանյան ինժեներական դպրոցների առաջավոր փորձը ուսուցման և արտադրական գործունեության համատեղման ասպարեզում։ ԱՄՆ-ում վերջին տարիներս մեծ զարգացում է ստացել կոոպերացված ուսուցման եղանակը, որում ներգրավված են 30 հազարից ավելի արդյունաբերական ֆիրմաներ։ Ուսումնառության և պրակտիկ աշխատանքի շրջանները ընթանում են զուգահեռ կամ հաջորդափոխվում են, իսկ ուսանողները, բացառությամբ առաջին կուրսեցիների, զբաղված են տարվա բոլոր 12 ամիսներին։ Տևական պատրաստության առաջընթացի հետ ուսանողը բարձրանում է նաև ծառայողական սանդուղքով։ Այսպիսով, մասնագիտության հետ համաքայլ ձեռք է բերվում որոշակի պաշտոնական ստատուս։

Բրիտանական ինժեներական դպրոցներում ուսուցման, գիտության և արտադրության ինտեգրացման հիմնական ձևը «Սենդվիչ» համակարգն է։ Ինչպես թելադրում է անվանումը, այն ենթադրում է ուսուցման «բազմաշերտ» պրոցես, որում հաջորդափոխվում են բուհում ընթացող ուսումնական և ֆիրմայում ընթացող արտադրական փորձառության մի քանի փուլեր։ Ընդ որում արտադրական պրակտիկայի յուրաքանչյուր փուլ նպատակ ունի համապատասխան պաշտոնում ստուգել ու ամրացնել ուսուցման նախորդ փուլում ուսանողի ձեռք բերած գիտելիքները և ձիրքերը։ Գոյություն ունի այս համակարգի գործողության 2 տարատեսակ։ Առաջինը, որը հենվում է անմիջապես ֆիրմայի վրա, ենթադրում է ուսանողական կոնտինգենտի ընտրություն հենց ֆիրմայում։ Իսկ ուսուցման պրոցեսը համալսարանում ընթանում է ֆիրմայի կադրերի պատրաստման համար պատասխանատու ներկայացուցչի անմիջական հսկողության տակ։ Ինտեգրացված համակարգի երկրորդ տարատեսակը, որն արդեն հենվում է համալսարանի վրա, ունի ուսանողների սեփական հոսք, իսկ նրանց փորձառության փուլերը ֆիրմայում իրականացվում են համալսարանի կոնսուլտանտ-հոգաբարձուների ղեկավարության ներքո։

Ի դեպ, «Սենդվիչ» համակարգը կարող են հաջողությամբ կիրառել նաև մեր բուհերը, հատկապես մասնագետների նպատակային ուսուցման բնագավառում։ Այստեղ անհրաժեշտ է, որ նախաձեռնող ֆակուլտետը ունենա մեկ կամ մի քանի մերձակա բազային արտադրական կազմակերպություններ, որոնք ուսուցման ինտեգրացված համակարգի շրջանակներում կարող են լինել ֆակուլտետի շահագրգռված գործընկերները և անմիջականորեն մասնակցել սեփական կադրերի ուսուցման ծրագրին ու դրա համար անհրաժեշտ նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։ Կարծում ենք, որ մեկ-երկու ֆակուլտետում նման փորձ կարող էր նախաձեռնել նաև մեր ինստիտուտը, քանի որ մայրաքաղաքը մերձակա արդյունաբերական կենտրոնների հետ հանդիսանում է ինժեներական կադրերի հիմնական պատվիրատուն ու սպառողը և, բացի դրանից, այս ռեգիոնում կան ցանկացած պրոֆիլի խոշոր արտադրական միավորումներ։ Հավանաբար սա է այն ռեալ ուղին, որն ինստիտուտի խիստ հնացած ուսումնանյութական բազան համապատասխանության կբերի ժամանակի պահանջներին։

Ինտեգրացման մյուս գրավիչ կողմը կադրերի շրջապտույտն է արտադրությունից բուհ և բուհից արտադրություն ինչպես հիմնական աշխատանքի, այնպես էլ համատեղության համար։ Առաջին դեպքում բուհի և արտադրության միջև տեղի է ունենում մասնագետների երկարաժամկետ փոխանակում, որը նպաստում է հատկապես դասախոսների ինժեներական որակավորման

բարձրացմանը։ Երկրորդ դեպքում արտադրության առաջատար մասնագետները ինտեգրացված ուսումնաարտադրական համակարգի պայմաններում մասնակցում են սեփական արտադրության համար անհրաժեշտ կադրերի պատրաստմանը, իսկ բուհական աշխատողներն իրենց հերթին՝ ինժեներների որակավորման բարձրացմանը։ Սրանով էլ ապահովվում է բուհի հակադարձ կապը արտադրության հետ։

Ինտեգրացումը բնականորեն նպաստում է նաև բուհական գիտության որոշակի վերակողմնորոշմանը դեպի արտադրություն։ Պայմանագրային աշխատանքներ եղել են և նախկինում, բայց այժմ խոսքը վերաբերում է համատեղ լաբորատորիաների, կոնստրուկտորական բյուրոների և փորձնական տեղամասերի ստեղծմանը երկարաժամկետ պայմանագրերի հիման վրա։ Հետազոտական աշխատանքներում նման ինտեգրացիոն պրոցեսն անպայման կհանգեցնի դրանց կոմպլեքսացմանը և խոշորացմանը, ինչպես նաև կուժեղացնի հիմնարար հետազոտությունների ու նրանց ներդրման օղակի միջև առկա կապը։

Ինչպես ասացինք, ինժեներական գործունեության յուրաքանչյուր օղակ քննարկվող համակարգում ունի առանձնահատուկ ֆունկցիա, որն իր հերթին հանգեցնում է ինժեներական աշխատանքի անընդհատ աճող մասնագիտացման։ Ինժեներական կրթության համակարգում մասնագիտացման նշված միտումն իր արտացոլումն է գտնում ուսուցման տարբերակման մեջ։ Սա ինժեներական կրթության զարգացման առավել արդիական ուղղություններից մեկն է ամբողջ աշխարհում։

Որո՞նք են տարբերակման հիմնական սկզբունքները։ Նախ, ուսուցումը կարող է լինել տարբերակված ըստ շրջանավարտ մասնագետների որակավորման աստիճանի, իսկ դա պահանջում է ուսուցման տարբեր ժամկետներ։ Բարձրագույն կրթության տարբերակման նշված «որակավորման» սկզբունքը զարգացած կապիտալիստական երկրներում իրականացվում է ուսուցման բազմաստիճան համակարգի միջոցով։ Օրինակ՝ ԱՄՆ-ի ինժեներական դպրոցները շնորհում են որակավորման 3 աստիճան՝ բակալավր-ինժեներ, մագիստր-ինժեներ և փիլիսոփայության դոկտոր, ընդ որում շատ համալսարաններ ի վիճակի են իրականացնելու այս ծրագրերից միայն մեկը կամ երկուսը։ Այսինքն, կրթության տարբերակումը ինքնաբերաբար ծընում է համալսարանների ոչ պաշտոնական դասակարգում։ Բազմաստիճան կրթական համակարգը կոչված է ուղղակիորեն խթանել ապագա ինժեներների աճը, քանի որ յուրաքանչյուր հաջորդ աստիճան ենթադրում է կրթության նոր որակ։ Անցնելով միմյանց հաջորդող կրթական ֆիլտրերի միջով, ուսանողների ընդհանուր հոսքը բաժանվում է տարբեր որակավորման աստիճանների հավակնող ենթահոսքերի։

Բարձրագույն կրթության վերակառուցման ծրագրի նախնական քննարկման փուլում մեզ մոտ նույնպես եղան առաջարկություններ կրթական բազմաստիճան համակարգի անցնելու վերաբերյալ։ Սակայն դրանք այդպես էլ մնացին թղթի վրա՝ չստանալով անհրաժեշտ արտահայտություն վերակառուցման հիմնական ուղղություններում։ Որպես այլընտրանք առաջարկվում է անհատականացնել մասնագետների պատրաստումը՝ առավել աչքի ընկնող ուսանողների ուսուցումը անհատական ուսումնական պլաններով կազմակերպելու միջոցով։ Հաջորդ ուղին ասպիրանտուրայի ընդլայնումն է՝ «Ինժեներ-հետազոտող» նոր աստիճանի հավակնորդների հաշվին, որն, անշուշտ, պետք է ընդգրկի մեր բուհերի լավագույն շրջանավարտներին։ Որքա՞ն են կենսունակ այս միջոցառումները՝ ցույց կտա ժամանակը։ Փաստը մնում է փաստ, որ երկրի ինժեներական բուհերը, նույնիսկ ընդհանուր մասնագիտացման դեպքում, էապես տարբերվում են ինչպես դասախոսական կազմի որակավորմամբ ու տեխնիկական հագեցվածությամբ, այնպես էլ ուսանողական կոնտինգենտի կրթական մակարդակով։ Այս պայմաններում մեր ոչ բոլոր բուհերը կարող են ռեալ հավակնել ինժեներական բուրգի բարձրագույն աստիճանների համալրմանը, և ժամանակն է, որ այս փաստը մտահոգի բարձրագույն դպրոցի աշխատողներին։ Բազմաստիճան կրթական համակարգի անցնելը, բնականաբար, կստեղծի բուհական որոշակի հիերարխիա, որում յուրաքանչյուր բուհ կստանա իր պոտենցիալին համապատասխան իրավիճակ և պարտականություններ։ Սա իր հերթին կխթանի բուհերի միջև առողջ մրցակցությանը, կհարուցի շնորհալի կադրերի հոսք դեպի ավելի առաջավոր բուհեր։

Ինժեներական կրթության զարգացող տարբերակումն ունի նաև ֆունկցիոնալ ուղղվածություն, որի նպատակն է մերձեցնել մասնագետների պատրաստման պրոցեսը նրանց ապագա պարտականությունների բնույթին։ Ինժեներական գործունեության տարբեր օղակները նույն մասնագիտության շրջանակներում այսօր պահանջում են մասնագետների պրոֆեսիոնալ պատրաստության տարբեր ծրագրեր։ Ինչպես տեսանք, արտադրանքի ստեղծման պրոցեսի տարբեր փուլերում անհրաժեշտ են կոնստրուկտորներ, տեխնոլոգներ, տեխնիկական շահագործող ինժեներներ, արտադրության կազմակերպիչներ, արտադրանքը իրացնող տնտեսագետ ինժեներներ և, վերջապես, ինտեգրացված արտադրական համակարգեր ստեղծող ինժեներներ։ Ինժեներական աշխատանքի բազմաֆունկցիոնալ բնույթը ենթադրում է, որ նրանց ուսուցման համակարգը նույնպես լինի բազմանպատակային և հարմարեցված արտադրության կողմից ներկայացվող բազմաբնույթ և անընդհատ փոփոխվող պահանջներին։

Ինչպե՞ս կառուցել նման ճկուն կրթական համակարգ։ Նախ և առաջ այն պետք է ունենա մոդուլային կառուցվածք, այսինքն բաղկացած լինի մի քանի միասնականացված բլոկներից, որոնցից յուրաքանչյուրը կոչված է ստեղծել տեսական պատրաստության որոշակի բաղադրիչ կամ մասնագիտական կարողություն (ձիրք)։ Որպես այդպիսիք կարելի է նշել, օրինակ, հիմնարար բազան, ինժեներական բազան, տնտեսագիտական-կազմակերպչական գիտելիքների ցիկլը, ինժեներական նախագծումը, տեխնոլոգիական պրոցեսների իմացությունը, արտադրական համակարգի ավտոմատացման մասին գիտելիքները, ճյուղային մասնագիտացման ցիկլը և այլն։ Ուսումնական մոդուլների տարբեր համակցություններով կարելի է կառուցել ինժեներական մասնագիտացման տարբեր ծրագրեր, որոնք կարող են պարունակել ինչպես ընդհանուր, այնպես էլ յուրահատուկ մոդուլներ։

Բայց մոդուլային կառուցվածքը ինքնըստինքյան դեռ բավարար չէ։ Ուսուցման ծրագրերը և նրանց բաղկացուցիչ մոդուլները պետք է ձևավորել սիստեմային սկզբունքով։ Յուրաքանչյուր մոդուլ պետք է ինտեգրացնի միևնույն նպատակին ուղղված առարկաների որոշակի համախումբ, իսկ առանձին մոդուլները իրենց հերթին պետք է փոխկապակցվեն ընդհանուր ծրագրի շրջանակներում։ Եվ բոլորովին պատահական չէ, որ ինտեգրացված կրթական ծրագրերի ըստեղծումն այսօր դարձել է ինժեներական կրթության զարգացման առավել առաջադեմ միտումներից մեկը ամբողջ աշխարհում։

Ներկայումս իրողություն է նաև այն, որ նման ինտեգրացնող պարտականություն չեն կարող կատարել առանձին մասնագիտությունների գծով ստեղծվող ավանդական ուսումնական պլանները, որովհետև նրանք չեն արտահայտում անհրաժեշտ միջառարկայական կապերը։ Նրանցից յուրաքանչյուրը անհրաժեշտորեն պետք է ուղեկցվի մի միասնական նպատակային ծրագրով, որը տվյալ մասնագիտության համար կհանդիսանա մասնագետների պատրաստման մի յուրօրինակ տեխնիկական առաջադրանք։ Այն կստեղծվի մասնագիտությանը ներկայացվող միասնական որակավորման պահանջների հիման վրա, որոնք պետք է կանոնակարգեն ապագա ինժեներներից պահանջվող մասնագիտական կարողությունները, ուսուցման մոդուլների կազմն ու գիտելիքների անհրաժեշտ մինիմումը այս կամ այն բնագավառի վերաբերյալ։ Նման ծրագրերը, որ պետք է ստեղծվեն բազային արտադրական կամ հետազոտական (նախագծային) կազմակերպությունների հետ համատեղ, ընդունված է անվանել մասնագիտության անձնագիր։ Այստեղ պետք է արտացոլվի նաև մասնագետի պատրաստման «տեխնոլոգիան», այսինքն ուսուցման մասնագիտացված ցիկլերի այն հաջորդականությունը, որոնց ընթացքում ձևավորվում են պահանջվող մասնագիտական կարողությունները, իսկ ինժեներական «հումքը» վերածվում է մասնագետի։

Պակաս կարևոր չէ ինտեգրացված դասընթացների ստեղծումը ժառանգելիությամբ կապված հարակից առարկաների այս կամ այն շարքի ուղղությամբ։ Այս առումով հիշատակության արժանի է ամերիկյան ու անգլիական համալսարանների առաջավոր փորձը, որտեղ ինժեներական նախագծման և տեխնոլոգիայի ոլորտներում իրականացվում են եռամյա ցիկլեր, իսկ նրանց բաղկացուցիչ դիսցիպլինները ուսումնասիրվում են ոչ թե առանձնացված, այլ որպես ընդհանուր համակարգի տարրեր։ Նման մոտեցմանը հատկապես նպաստում է այն հանգամանքը, որ նշված համալսարանների կառուցվածքում նեղ դիսցիպլինար բնույթի ամբիոնների փոխարեն գործում են ճյուղային մասնագիտացմամբ խոշոր ինժեներական դեպարտամենտներ, որոնք միավորում են տվյալ մասնագիտության ուսանողների ընդհանուր տեխնիկական և մասնագիտական պատրաստությունն ապահովող բոլոր դասախոսներին։ Թվում է, թե այս փորձը ոչ միայն հիշատակման, այլ նաև լուրջ քննարկման ու կիրառման է արժանի։ Համակարգային մոտեցման ներդրումը ինժեներական կրթության մեջ մեր բուհերից կպահանջի որոշակի կառուցվածքային փոփոխություններ ամբիոնների միավորման հարցում։ Ի դեպ, այս միտումն իր արտահայտությունն է գտել նաև բարձրագույն կրթության վերակառուցման հիմնական ուղղություններում։

Ինժեներների ձևավորման պրոցեսը սկսվում է հիմնարար բազայի ստեղծումից։ Այն ունի երկակի նպատակ։ Ուսուցման համակարգի այս առաջին բլոկը նախ կոչված է ձևավորելու որոշակի տեսական պոտենցիալ, որը պետք է ուսանողին գիտելիքներով սնի ապագա ամբողջ ինժեներական գործունեության ընթացքում՝ ապահովելով գիտական նոր արդյունքների արդյունավետ կիրառման կարողություն։ Երկրորդը զուտ ուսուցողական է՝ ստեղծել անհրաժեշտ տեսական հիմք ինժեներական դիսցիպլինների դասավանդման համար, զարգացնել վերլուծական մտածողության և տեղական փաստերն ընդհանրացնելու ունակություն։

Այս բլոկի միջուկը մաթեմատիկան է, որն ունի համընդհանուր նշանակություն ինժեներական բոլոր մասնագիտությունների համար։ Ինչպե՞ս կազմակերպել ինժեներների մաթեմատիկական կրթությունը, ելնելով նոր պահանջներից։

Հայտնի է, որ մաթեմատիկայի ուսուցումը մեր տեխնիկական բուհերում մինչև այժմ ունի ինքնապարփակ բնույթ, որպես կանոն այն ընդհատվում է առաջին երկու կամ երեք կուրսերից հետո, չստանալով տրամաբանական շարունակություն ուսուցման եզրափակիչ մասնագիտացնող փուլում։ Ստեղծվել է այնպիսի իրադրություն, երբ ուսուցման պրոցեսում մաթեմատիկան փաստորեն կտրված է իր կիրառման ոլորտից՝ ինժեներական դիսցիպլիններից։ Այս բացասական երևույթն իր հերթին արտապատկերվում է ինժեների ապագա գործողության մեջ, որտեղ անալիզի, սինթեզի և օպտիմիզացիայի մաթեմատիկական մեթոդները հաճախ տեղի են տալիս ինտուիցիային՝ ծնելով ոչ օպտիմալ տեխնիկական լուծումներ։

Մեր կարծիքով, մաթեմատիկայի ուսուցումը տեխնիկական բուհերում պետք է դարձնել անընդհատ և տարբերակված։ Այս սխեմայի դեպքում բոլոր մասնագիտությունների համար ընդհանուր բազային մաթեմատիկայի երկամյա դասընթացին կհաջորդի ճյուղային մասնագիտացմամբ հաշվողական (կիրառական) մաթեմատիկայի եռամյա ցիկլը։ Այն պետք է ուսումնասիրի ինժեներական կառուցվածքների հաշվարկի, զանազան պրոցեսների և համակարգերի մոդելավորման ժամանակակից մաթեմատիկական մեթոդներ՝ վերջնական նպատակ ունենալով ապահովել ինժեներական դիսցիպլինների ելքը դեպի կոմպյուտեր։

Մաթեմատիկայի և ինժեներական դիսցիպլինների մերձեցումը պետք է լինի փոխադարձ։ Սա նշանակում է, որ ինժեներական դիսցիպլինները և հատկապես կուրսային և դիպլոմային նախագծերը պետք է դառնան մաթեմատիկական գիտելիքների անընդհատ կիրառման ասպարեզ։ Մերձեցման ուղին անցնում է ուսուցման պրոցեսի ակտիվ կոմպյուտերացման միջով, որն առաջին հերթին պետք է ուղղել դեպի ուսուցման ավտոմատացված համակարգերի ստեղծումը։

Ինժեների ձևավորման պրոցեսում հսկայական նշանակություն ունի կուրսային և դիպլոմային նախագծումը։ Ուսուցման մեթոդաբանությունն այս ասպարեզում հիմնականում կողմնորոշված է եղել դեպի հայտնի տեխնիկական լուծումներն ու տեխնոլոգիական պրոցեսների պասիվ վերարտադրությունը և արմատական վերակառուցման կարիք ունի։ Նախագծումը պետք է ուղղել դեպի նոր սարքերի և տեխնոլոգիական պրոցեսների ստեղծումը, այդ թվում նախատիպերի բացակայության պայմաններում, ընդ որում պետք չէ վախենալ «հեծանիվ հնարելու» հնարավորությունից, որը նույնպես ունի ուսուցողական նշանակություն։ Միայն այս ճանապարհով կարելի է ուսանողների մեջ զարգացնել ինժեներական ինտուիցիա, գյուտարարական ձիրք, ստեղծագործական մոտեցում նախագծման պրոցեսի նկատմամբ։ Շատ կարևոր է նաև ռեալ նախագծային պրակտիկայի տիպային իրադրությունների և դեպքերի կոլեկտիվ քննարկումը, որը լայնորեն կիրառվում է արտասահմանյան տեխնիկական համալսարաններում։ Միաժամանակ անհրաժեշտ է ուսումնական նախագծման պրոցեսը առավելագույնս մոտեցնել նախագծման ռեալ պայմաններին կոնստրուկտորական բյուրոյում կամ տեխնոլոգիական բաժնում։ Այս իմաստով նպատակահարմար է անհատական նախագծումից անցնել կոլեկտիվ նախագծման, որի ընթացքում ուսանողները բացի կոնկրետ ինժեներական ձիրքերից ձեռք կբերեն նախագծային կոլեկտիվում աշխատելու փորձ, կըշփվեն համատեղելիության, հաղորդակցման, ղեկավարի ընտրության և այլ պրոբլեմների հետ, որոնք ուղեկցում են ցանկացած կոլեկտիվ ինժեներական գործունեության։ Ցանկալի է կոնստրուկտորական բնույթի կուրսային նախագծերը և հատկապես դիպլոմային նախագծերը ավարտել նախագծված սարքերի մակետների պատրաստումով և փորձարկումով։

Յուրաքանչյուր ինժեներական աշխատանք ընթանում է որոշակի սոցիալ-տնտեսական միջավայրում, հասարակության և գործող տնտեսական սիստեմի կողմից սահմանագծված շրջանակներում։ Հետևաբար, քննարկվող կրթական համակարգը նույնպես պետք է հաշվի առնի այս սահմանափակումները։ Ուսուցման համապատասխան մոդելը, որը պայմանականորեն կանվանենք «Ինժեներ և հասարակություն», բացի մարքսիստական աշխարհայացքի ձևավորումից, պետք է հաղորդի անհրաժեշտ գիտելիքներ սոցիոլոգիայի, էրգոնոմիկայի, գործնական տնտեսագիտության և այլ բնագավառներից։

Շատ կարևոր է նաև ապագա ինժեների հաղորդակցության ձիրքերի զարգացումը։ Այս նպատակին պետք է ուղղել ուսուցման որոշակի ցիկլ, որը կօգնի ուսանողին գրագետ ձևակերպելու և ներկայացնելու ինժեներական փաստաթղթեր, գիտատեխնիկական տարբեր նյութեր, զարգացնելու կոլեկտիվ քննարկման կուլտուրա։

Ինժեների կապը հասարակության հետ առ այսօր փաստորեն անտեսվել է մեր կրթական ծրագրերում։ Ապագա ինժեների մասնագիտական կարողությունների ձևավորումը չի կարելի անջատել նրա սոցիալական դիմագծի և ընդհանրապես անհատականության կազմավորումից։ Կրթական պրոցեսի այս երկու ասպեկտները պետք է զարգանան համաքայլ։ Հենց այդ նպատակին էլ ուղղված է ինժեներական կրթության հումանիտարացումը։

Այսօր ի՞նչ կարելի է ասել բարձրագույն կրթության վերակառուցման ընթացքի մասին։ Մեր տպավորությունն այն է, որ վերակառուցումը բուհական կյանքում դեռ չի դարձել նը-



պատակասլաց և կառավարելի պրոցես։ Որո՞նք են վերակառուցման հիմնական պրոբլեմները։ Առաջին հերթին, դա վերակառուցման ծրագրի փաստական անապահովվածությունն է անհրաժեշտ նյութական ռեսուրսներով։ Իսկ վերակառուցել ուսումնական պրոցեսը հին նյութատեխնիկական հիմքի վրա՝ իրական չէ։ Ստեղծված դրությունից դուրս գալու ելքը տեխնիկական բուհերը պետք է փնտրեն արտադրության հետ ինտեգրացման մեջ։ Բայց այստեղ էլ կան մեծ դժվարություններ, քանի որ դեռ շատ քիչ են այնպիսի ձեռնարկությունները, որոնք ձգտում են նման համագործակցության և կարող են դառնալ լիարժեք պարտնյորներ բուհի կամ ֆակուլտետի տեխնիկական վերազինման դժվարին պրոցեսում։

Վերակառուցման փուլում տեխնիկական բուհերի հիմնական պրոբլեմներից մյուսը ինժեներական կադրերի պահանջարկի և առաջարկի միջև ստեղծված անհամապատասխանությունն է։ Հայտնի է, որ մեր ժողովրդական տնտեսության մեջ այժմ աշխատում են ավելի քան երեք անգամ շատ ինժեներներ, քան ԱՄՆ-ում։ Միևնույն ժամանակ աշխատանքի արտադրողականությունը ՍՍՀՄ-ում կազմում է ԱՄՆ-ում աշխատանքի արտադրողականության միայն 60 տոկոսը, իսկ յուրաքանչյուր երկրորդ սովետական ինժեներ չի աշխատում ինժեներական որակավորում պահանջող պաշտոնում։ Սա խոսում է մեր երկրում ինժեներական աշխատանքի խիստ ցածր արդյունավետության մասին։ Այս հանգամանքն իր անմիջական արտահայտությունը գտել է ինքնաֆինանսավորման անցնող մեր ձեռնարկությունների կադրային քաղաքականության մեջ։ Ամենուրեք նկատվում է ինժեներատեխնիկական անձնակազմի և կառավարչական ապարատի կրճատման միտում։ Պարզվում է, որ ինժեներների իրական պահանջարկն այսօր բոլորովին էլ չի համապատասխանում ինժեներական կադրերի պատրաստման պլանային ցուցանիշներին, որոնք պահանջարկի գնահատման հնացած հաստիքանոմենկլատուրային մեթոդի արդյունքն են։

Պլանավորման նոր ձևի դեպքում, երբ ընդունելության պլանները այս կամ այն մասնագիտության գծով հիմնականում ձևավորվում են ձեռնարկությունների անմիջական պատվերների համաձայն, տեխնիկական շատ բուհեր կանգնած են կոնտինգենտի էական կրճատման վտանգի առջև։ Դրությունը ավելի է բարդանում, եթե հաշվի առնենք, որ պատվիրատու կազմակերպությունների շատ ղեկավարներ, առաջնորդվելով ստերեոտիպային պատկերացումներով, այսօր դեռ չեն ընկալում ինժեներական աշխատանքի ճիշտ նշանակությունը, հատկապես այն ճշմարտությունը, որ միայն նոր ինժեներական լուծումները կարող են ապահովել աշխատանքի արտադրողականության արմատական աճ։ Այսպես թե այնպես, ակնհայտ է, որ յուրաքանչյուր ինժեներական բուհի ապագան, նրա զարգացման հեռանկարներն այսօր ուղղակիորեն կախված են պատրաստվող մասնագետների որակից, իսկ արտադրությանը պետք են ոչ թե դիպլոմավոր շրջանավարտներ, այլ իսկական ինժեներներ։ Կարելի է ենթադրել, որ պատվերները արտադրությունից բուհ մոտ ապագայում կկորցնեն իրենց ռեգիոնալ կողմնորոշումը։ Անկախ աշխարհագրական դիրքից կադրային շուկան կընտրի այն բուհերին, որոնք ավելի արագ են հարմարվում վերակառուցման պահանջներին։

Խոսելով վերակառուցման պրոբլեմների մասին, անհրաժեշտ է նշել նաև վերակառուցման ծրագրի «տոտալ» բնույթը, նրա շատ ընդհանուր պահանջների ու բուհերի խիստ անհամասեռ կադրային պոտենցիալի անհամապատասխանությունը։ Այս կապակցությամբ կցանկանայի նորից հիշատակել բազմաստիճան բուհական համակարգի գաղափարը, որը կօգներ յուրաքանչյուր բուհի հատկացնել իր պոտենցիալին համապատասխան կրթական ծրագիր։

Ուսուցման նոր ձևերին անցնելուն էապես խանգարում են բուհերի մեծամասնությունում մինչ այժմ պահպանված անցանկալի քանակական հարաբերակցությունները ուսանողների և դասախոսների միջև։ Ենթադրվում է հասնել օպտիմալ նորմայի (8:1) կոնտինգենտի աստիճանական կրճատման միջոցով։ Թեև ընդունելության կրճատում շատ բուհերում իրոք տեղի է ունենում, բայց այն չի կրում պլանաչափ բնույթ, կառավարվում է միայն արտաքին գործոններով, իսկ դա էլ իր հերթին բերում է նոր անհամաչափություններ նույն բուհի տարբեր ֆակուլտետների և ամբիոնների ուսումնական բեռնվածություններում։

Դեռ չի սկսել լրիվ ուժով գործել բուհերի կադրային համալրման նորաստեղծ մրցութային մեխանիզմը, քանի որ անցումը վերընտրությունից ընտրության փաստորեն ձևական բնույթ է կրել։ Տեղի տալով գործող ստերեոտիպին, իսկ հաճախ նաև կեղծ հումանիստական նկատառումների, բուհական ընտրող մարմինները չեն կարողանում իրենց ազատել նոր պահանջներին չհամապատասխանող կադրային «բալաստից», դրանով իսկ արգելակելով երիտասարդ կադրերի շատ ցանկալի ներհոսքը արտադրությունից և գիտությունից։

Վերակառուցման պրոցեսի «տեղապտույտի» հիմնական պատճառներից մեկն էլ մեր բուհերում գործող կառավարման ավտորիտար-բյուրոկրատական մեխանիզմն է՝ վերից վար ընդգծված ուղղվածությամբ։ Այն դարձել է մի յուրօրինակ դեմպֆեր, որտեղ մարում է ներքևից եկող յուրաքանչյուր նախաձեռնություն։ Վերակառուցել կրթական պրոցեսը առանց այս մե-

*խանիզմի դեմոկրատացման փաստորեն անհնարին է: Զժխտելով այս ուղղությամբ արդեն իրականացվող որոշ միջոցառումների նշանակությունը՝ ռեկտորների ընտրություն, ուսանողական ինքնավարության զարգացում և այլն, կարծում ենք, որ բուհական օրգանիզմի դեմոկրատացման հիմնական ուղղությունը պետք է դառնա կառավարման պրոցեսի ապակենտրոնացումը: Այստեղ առաջին հերթին նկատի ունենք ֆակուլտետների ինքնավարության կտրուկ զարգացումը, քանի որ հենց ֆակուլտետն է այն հիմնական օղակը, որը պետք է իրականացնի ուսուցման և արտադրության ինտեգրացումը: Ֆակուլտետը պետք է ստանա որոշիչ դեր նաև ընդունելության պլանավորման, նյութատեխնիկական բազայի զարգացման, գիտահետազոտական աշխատանքների կազմակերպման, ֆինանսական և նյութական ռեսուրսների բաշխման հարցերում, վարի ինքնուրույն կադրային քաղաքականություն: Այս ամենի հետևանքով խիստ կկրճատվի կենտրոնացված կառավարման ուռճացած ապարատը, իսկ կառավարումը բուհի մակարդակի վրա հիմնականում կիրականացվի համախնատիտուտային ընտրովի մարմինների կողմից:*

*Դեմոկրատացման պրոցեսը պետք է ընդգրկի բուհական ամբողջ համակարգը, վերջնականապես ազատելով մեր բուհերին գերատեսչական կոշտ «հովանավորությունից»: Յուրաքանչյուր բուհ, ելնելով կոնկրետ տեղական պայմաններից, պետք է կառուցի վերակառուցման իր ստրատեգիան, որի արդյունավետության հիմնական չափանիշը կլինի պատրաստվող կադրերի պահանջարկը: Անհրաժեշտ է մշակել ինքնուրույն չափանիշներ նաև դասախոսական աշխատանքի վարձատրման ոլորտում, որոնց հիմքը, մեր կարծիքով, պետք է դառնա բուհի դասախոսների անաչառ ռեյտինգը՝ ըստ աշխատանքային ցուցանիշների կոմպլեքսի: Այս ամենը կստեղծի առողջ մրցակցություն բուհերի միջև, կադրերի համար բուհից բուհ տեղափոխվելու հնարավորություն կընձեռի, կխթանի ինտեգրացիոն պրոցեսը գիտության և արտադրության հետ, իսկ զարգացման նման դինամիզմը կդառնա բարձրագույն կրթության կատարելագործման մշտական կատալիզատոր:*



# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԲԱՇԽՄԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Ք. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՀԱՏՈՒԿ Է նյութական բարիքների
բաշխման իր եղանակը: Այն սերտորեն կապված է արտադրական հարա-
բերությունների, արտադրության միջոցների սեփականության բնույթի հետ: Ում
պատկանում է սեփականությունը, նրա շահերին համապատասխան էլ կատարվում
է բաշխումը: «Բաշխման կառուցվածքը,— գրում է Կ. Մարքսը,— լիովին որոշվում է
արտադրության կառուցվածքով: Բաշխումն ինքն արտադրության արդյունք է, ոչ մի-
այն առարկայի տեսակետից, որովհետև բաշխվել կարող են արտադրության հետե-
վանքները միայն, այլև ձևի տեսակետից, որովհետև արտադրությանը մասնակցելու
որոշ եղանակն է որոշում բաշխման հատուկ ձևը, այն ձևը, որով յուրաքանչյուրը մաս-
նակցում է բաշխմանը» (Կ. Մարքս, **Քաղաքատնտեսության քննադատության շուրջը,**
1948, էջ 248): Բաշխումը, լինելով հասարակական արդյունքների իրացման ձև, ար-
տադրությունը կապում է սպառման հետ, հետևապես արտադրության և սպառման
միջև գոյություն ունի սերտ փոխկապակցություն: Առանց արտադրության չկա սպա-
ռում, առանց սպառման չկա արտադրություն: Այստեղ որպես կապող օղակ հանդես
է գալիս բաշխումը, որը ցույց է տալիս, թե ով ինչքան է յուրացնում, սպառում հասա-
րակական արդյունքը:

Սոցիալիզմի պայմաններում արտադրության միջոցները հանրային սեփականու-
թյուն են և հասարակական ամբողջական արդյունքը արտադրողների անմիջական
աշխատանքի արդյունքն է, ուստի բաշխումն էլ կատարվում է հասարակության և նրա
յուրաքանչյուր անդամի շահերին համապատասխան: Սակայն դա չի նշանակում, թե
սոցիալիզմի ժամանակ բաշխվում է ամբողջ արդյունքը և դա կատարվում է հավասա-
րապես, ըստ պահանջմունքների:

Սոցիալիստական հասարակության անդամների միջև բաշխվում է միայն հա-
սարակական արդյունքի ու ազգային եկամտի մի մասը, իսկ մյուս մասն օգտագործ-
վում է ժողովրդի սոցիալական կարիքների մաշված արտադրամիջոցների փոխհա-
վում է ժողովրդի սոցիալական կարիքների կատարելագործման, երկրի պաշտպանու-
տուցման, արտադրության ընդլայնման, կատարելագործման, պահպանման համար և այլն:
թյան ամրապնդման, պետական ապարատի պահպանման համար կոնկրետ խնդիրներից և

Ելնելով առկա ռեսուրսներից, երկրի առջև ծառացած սպառման և կուտակման ֆոն-
բնակչության պահանջարկից, պետությունը մշտապես համամասնություններ ու հարաբերակցություն,
դերի միջև սահմանում է այնպիսի համամասնություններ արագ ու անընդհատ զարգացումը
որոնք ապահովում են հասարակական արդյունքի պահանջմունքների բավարարումը:
և բնակչության նյութական ու հոգևոր պահանջմունքների առաջին տարիներին որոշ տնտեսագետներ

Սոցիալիստական շինարարության առաջին «ըստ շնչերի», «ըստ պահանջ-
գտնում էին, թե բաշխումը պետք է կազմակերպել հավասարարության, եկամուտների բաշխ-
մունքների»: Նման մոտեցումը հանգում էր հավասարարության, հասարակական արդյունքի
մասը՝ առանց հաշվի առնելու աշխատողների ավանդը, բաշխման սոցիալիստական ըս-
մեջ նրանց աշխատանքի արդյունքը: Դա հակասում էր սոցիալիզմի օրոք արտադրությունը դեռևս չի
կերպունքին. նախ՝ այն պատճառով, որ սոցիալիզմի մակարդակ, որ հնարավորություն տար
ստեղծում սպառման առարկաների այնպիսի բազմազան պահանջմունքները: Եվ ապա՝ աշ-
լիովին ապահովելու բոլոր մարդկանց բազմազան առաջին կենսական պա-
խատանքը սոցիալիզմի ժամանակ դեռ չի դառնում բոլորի առաջին կենսական պա-

---

ՊԵՏՐՈՍՅԱՆ ՔՐԻՍՏՈՓՈՐ ԲԱԲԱՅԻ— *տնտեսագիտության թեկնածու*

հանջմունքը: Հասարակության մեջ գոյություն ունեն բարեխիղճ և անբարեխիղճ, ո-
րակավորված և ոչ որակավորված աշխատողներ, ֆիզիկական ու մտավոր աշխատան-
քի էական տարբերություններ: Իսկ հավասար վարձատրության դեպքում կանտես-
վեին այդ տարբերությունները: Դա մարդկանց կզրկեր աշխատանքի արդյունքների
նկատմամբ նյութական շահագրգռությունից և չէր խթանի արտադրության զարգա-
ցումը, կհանգեցներ այլ բացասական հետևանքների:

Վ. Ի. Լենինը վճռականորեն հանդես եկավ բաշխման այդպիսի առաջարկների
դեմ, ցույց տալով դրանց անմտությունն ու վնասակարությունը:

Մարքսիզմի դասականները հայտնագործեցին սոցիալիզմի ժամանակ ըստ աշ-
խատանքի բաշխման տնտեսական օրենքը, գիտականորեն ձևակերպեցին նրա ըն-
կըզբունքները և գործողության մասշտաբները: Այդ տնտեսական օրենքի էությունն
այն է, որ անձնական սպառման համար բոլոր նյութական բարիքները աշխատողների
միջև բաշխվում են հասարակական արտադրության մեջ նրանցից յուրաքանչյուրի
ներդրած աշխատանքի քանակին և որակին համապատասխան:

Ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի գործողությունն օբյեկտիվո-
րեն համապատասխանում է ինչպես յուրաքանչյուր առանձին աշխատողի, այնպես
էլ ամբողջ հասարակության շահերին, խթանում աշխատանքի արտադրողականու-
թյան և արտադրության արդյունավետության հետագա բարձրացումը: Այդ օրենքը
բացառում է մարդու կողմից մարդու շահագործումը, անաշխատ եկամուտների կոր-
զումը և պարազիտային սպառումը, պահանջում է իրականացնել հավասար աշխա-
տանքի համար հավասար վարձատրության սկզբունքը՝ անկախ սեռից, տարիքից, ազ-
գությունից: Բայց քանի որ աշխատանքը որակական առումով տարբեր է, նրա ար-
դյունքները նույնպես, բնականաբար, չեն կարող լինել միատեսակ, միատարր: Այդ
պատճառով էլ ըստ աշխատանքի բաշխումը առաջ է բերում սպառման անհավասա-
րություն, որը պայմանավորված է հասարակական արտադրության մեջ աշխատան-
քային անհավասար ներդրումներով: Դրա հետևանքով էլ սոցիալիզմի ժամանակ պա-
հանջարկի հավասարություն չի կարող լինել, քանի որ մարդկանց պահանջարկը,
նրանց հակումները, նախասիրությունները, ընտանիքի կազմը էապես տարբերվում
են միմյանցից:

Վ. Ի. Լենինը նշում է, որ կոմունիզմի առաջին փուլում հասարակությունը
«...անկարող է միանգամից ոչնչացնել նաև հետագա անարդարությունը, երբ սպառ-
ման առարկաները բաշխվում են «ըստ աշխատանքի» (այլ ոչ թե ըստ պահանջ-
մունքների)» (ԵԼԺ, հ. 33, էջ 119): Հետևաբար «աշխատանքի հավասար քանակու-
թյան համար՝ արդյունքների հավասար քանակություն» սկզբունքը սոցիալիզմի ժա-
մանակ չի վերացնում բաշխման անհավասարությունները: Ելնելով դրանից՝ պետու-
թյունը ստիպված է վերահսկողություն սահմանել աշխատանքի չափի և սպառման
չափի, արտադրողի տվածի և նրա ստացածի նկատմամբ, արտադրությունն ու բաշ-
խումը կարգավորելով յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝
ըստ կատարած աշխատանքի քանակի և որակի սկզբունքով:

Պահանջմունքների բավարարման մակարդակի անհավասարության հաղթահա-
րումը կկատարվի աստիճանաբար՝ արտադրողական ուժերի և արտադրական հարա-
բերությունների զարգացման և կատարելագործման համեմատ՝ կապված գիտատեխ-
նիկական հեղափոխության առաջընթացի, աշխատողների հանրակրթական, կուլտուր-
տեխնիկական մակարդակի, աշխատանքի տարբեր կատեգորիաների որակավորման,
աշխատանքի արտադրողականության և նյութական արժեքների առատության հետ:

Սովետական պետությունը հասարակական արտադրության արդյունավետության
և աշխատանքի արտադրողականության աճի համեմատ պլանաչափորեն բարձրաց-
նում է աշխատողների աշխատավարձը: Այսպես, եթե ժողովրդական տնտեսության
բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը երկրում 1970 թվականին կազ-
մել է 122 ռուբլի, ապա 1987 թ.՝ 201 ռուբլի: Կոլտնտեսականների վարձատրությու-
նը ևս նկատելիորեն բարձրացել է՝ հասնելով 167 ռուբլու:

Որոշ տնտեսագետներ գտնում են, որ զարգացման արդի փուլում նվազել է աշ-
խատավարձի խթանիչ դերը, որ նրա փոխարեն բարձրացել է պրոֆեսիայի, աշխա-
տանքի պայմանների, էկոլոգիայի և այլ գործոնների վարկը: Այդ կարծիքը զուրկ է
որևէ հիմքից: Աշխատավարձը, նրա ճիշտ կազմակերպումը, նրա խթանիչ դերի հե-
տագա բարձրացումը շարունակում են մնալ ըստ աշխատանքի բաշխման տնտեսա-
կան օրենքի գործողության իրականացման գլխավոր ձևը, հասարակական արդյունք-
ների արդարացի բաշխման հիմնական գործոնը սոցիալիզմի ամբողջ ժամանակա-
շրջանում: Այն եղել ու մնում է անհատի և նրա ընտանիքի անդամների նյութական և





հոգևոր հարաճուն պահանջմունքների բավարարման ու բարեկեցության բարձրացման
հիմնական աղբյուրը:

Աշխատավարձը սոցիալիզմի ժամանակ սպառման առարկաների բաշխման հիմ-
նական լծակն է, բայց ոչ միակը: Կարևոր դեր են խաղում նաև սպառման հասա-
րակական ֆոնդերը, որոնք էապես նպաստում են աշխատավորների սոցիալ-կուլ-
տուրական պահանջմունքների բավարարմանը: Ծարունակ աճող այդ ֆոնդերն օգ-
տագործվում են մատաղ սերնդի կրթության, դաստիարակության, ծերերի, անաշ-
խատունակների ապրուստի, հասարակության անդամների պրոֆեսիոնալ տեխնիկա-
կան պատրաստության, նրանց առողջության պահպանման, համակողմանի հոգևոր
զարգացման և կուլտուր-կենցաղային զանազան արտոնյալ վճարումների համար:

Սպառման հասարակական ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնություններն
աշխատավարձը միջին հաշվով ավելացնում են մեկ երրորդով: Այդ ֆոնդերից մեկ
շնչի հաշվով կատարվող հատկացումները 1970 թ. հետո կրկնապատկվել են: Հաշվի
առնելով սպառման ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնությունները, բանվոր-
ների և ծառայողների ամսական աշխատավարձը 1987 թվականին կազմել է 287
ռուբլի, իսկ հանրային տնտեսություններից կոլտնտեսականների ամսական եկա-
մուտները կազմել են 248 ռուբլի:

Սպառման հասարակական ֆոնդերի աճի համեմատ հասարակությունն իր վրա
է վերցնում երեխաների, ծերերի, հաշմանդամների դաստիարակության և խնամքի
վրա կատարվող ծախսերի մեծ մասը: Դրանով պետությունը մեղմացնում է ըստ աշ-
խատանքի վարձատրության հետևանքով առաջացած եկամուտների անհավասարու-
թյունը: Բազմազավակ ընտանիքները լրացուցիչ վճարումներ և արտոնություններ են
ստանում այդ ֆոնդերից:

Հաշվարկները ցույց են տալիս, որ յուրաքանչյուր 15 տարին մեկ երկրում կրկնա-
պատկվում են բնակչության ռեալ եկամուտները: Այսպես, վերջին քառորդ դարում
բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտները ավելացել են 2,6 անգամ: Դրա
շնորհիվ որակական փոփոխություններ են ծագում առաջարկի և պահանջարկի մեջ:
Նյութական պահանջարկի հետ մեծանում են և սոցիալական, հոգևոր, կուլտուրական
պահանջմունքները, սովետական ապրելակերպի, ազատ ժամանակի, մարդկանց կուլ-
տուրական, առողջական վիճակի խելացի կազմակերպման անհրաժեշտությունը: Սա-
կայն ըստ աշխատանքի բաշխման օրենքի մեխանիզմը անփոփոխ չի մնում: Սոցիա-
լիստական արտադրական հարաբերությունների զարգացման և կատարելագործման
հետ միասին տնտեսական այդ օրենքի գործողությունը ձեռք է բերում նոր գծեր: Դրա
հետևանքով բաշխման մեջ երևան են գալիս վարձատրության ավելի առաջավոր ձևեր
ու մեթոդներ, որոնք խթանում են հանրային արտադրության զարգացումը և աշխա-
տավորների եկամուտների, բարեկեցության աճը:

Պետությունը աշխատավարձի բարձրացման հետ մեկտեղ վարում է հիմնական
պարենային և ոչ պարենային ապրանքների մանրածախ գների կայունացման և
կարգավորման քաղաքականություն: Սննդամթերքի և մասսայական պահանջարկ վա-
յելող արդյունաբերական ապրանքների մեծ մասը բնակչությանը վաճառվում է այն
նույն գներով, ինչ տասնամյակներ առաջ, իսկ բնակարանային տնտեսության պահ-
պանման վրա կատարվող ծախսերի 70 տոկոսը փոխհատուցում է պետությունը: Դրա
հետ մեկտեղ պետությունը վարում է բնակչությունից գանձվող հարկերի նվազեցման
կուրս: Այդ միջոցառումները նպաստում են բնակչության դրամական միջոցների տըն-
տեսմանը և բարեկեցության բարձրացմանը: Աշխատավորների կենսամակարդակի
անշեղ վերելքը և մարդու նկատմամբ ամենօրյա հոգատարությունը սոցիալիստական
հասարակության զարգացման օրինաչափությունն է և մեր կուսակցության քաղաքա-
կանության առանցքը: Դա իր նոր արտահայտությունը գտավ նաև ՍՄԿԿ XXVII հա-
մագումարի և XIX կուսկոնֆերանսի որոշումներում: Երկրի սոցիալ-տնտեսական զար-
գացման հեռանկարային պլաններով նախատեսվում է ժողովրդի բարեկեցությունը
բարձրացնել նոր աստիճանի: Այդ նպատակի համար տրամադրել կրկնակի շատ
ռեսուրսներ և բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտները առաջիկա 15 տարում
բարձրացնել 1,6—1,8 անգամ: Մեծ չափով կաճեն նաև սպառման հասարակական
ֆոնդերը և նրանցից տրվող վճարումները:

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացմանը զուգընթաց, ըստ աշխատանքի
բաշխման տնտեսական օբյեկտիվ օրենքի գործողության ծավալմամբ հանդերձ, վեր-
ջին տարիներին երևան եկան նրա պահանջի խախտման, արգելակման մի շարք
բացասական երևույթներ: Սկսած 60-ական թվականներից տնտեսագիտական գրա-
կանության մեջ տարածում էր գտել այն թյուր կարծիքը, թե սոցիալիզմի ժամանակ

աշխատանքի վարձատրման և սպառման միջև չպետք է գոյություն ունենան մեծ տարբերություններ, թե իբր այդ տարբերությունները հանդիսանում են «կապիտալիզմի մնացուկներ» և սոցիալական արդարության խախտում, որոնք խոչընդոտում, խանգարում են հասարակության համախմբմանը, միատարրության ստեղծմանը, սոցիալական կոնսոլիդացիային: Այստեղից էլ նրանք առաջ էին քաշում այն թեզը, թե հասարակության միատարրության, համասեռության ստեղծմանը կարելի է հասնել աշխատանքի վարձատրման հավասարեցման միջոցով, անտեսելով արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների զարգացման, աշխատանքի արտադրողականության աճի, հասարակական ամբողջական արդյունքի, ազգային եկամտի գոյություն ունեցող մակարդակը: Տնտեսագիտության մեջ տեղ գտած այդ սխալ դրույթին հաջորդեցին պրակտիկ քայլերը և տնտեսական միջոցառումները: Երևան եկան աշխատավարձերի հավասարեցման, համահարթման միտումներ: Այդ այն դեպքում, երբ ժողովրդական տնտեսության զարգացման վերջին երեք հնգամյակներով նախատեսված մի շարք կարևորագույն ցուցանիշների գծով առաջընթաց տեղի չունեցավ: Չհաջողվեց կատարել աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացման պլանները, սոցիալական ծրագրերը, նվազեցին տընտեսական աճի տեմպերը: Ժողովրդական տնտեսության մեջ սկսեցին մեծանալ դըժվարությունները, էկոնոմիկան զարգանում էր էքստենսիվ կերպով՝ արտադրության մեջ ներգրավելով նորանոր լրացուցիչ ռեսուրսներ: Այդ պայմաններում շարունակվում էր երկրում վարձատրության համահարթումն ու հավասարեցումը, կրճատվում բարձր և ցածր որակավորման աշխատողների աշխատավարձերի միջև գոյություն ունեցող տարբերությունները: Դրա հետևանքով մի շարք կատեգորիաների աշխատողների աշխատավարձերը սահմանվում էին ոչ թե ըստ աշխատանքի, ստացված վերջնական արդյունքի, այլ պարզապես աշխատատեղում գտնվելու համար: Դա առաջ էր բերում աշխատողների հոսունություն՝ բարդ և որակյալ աշխատանքներից դեպի պարզ և հեշտ աշխատանքներ: Խախտվել էր նաև վարձատրման գործավարձային կարգը, նվազագույնի էին հասել որակյալ և ոչ որակյալ աշխատանքների դիմաց կատարվող վարձատրման տարբերությունները: Այսպես, ինժեներների, մասնագետների և բանվորների աշխատավարձերի միջև գոյություն ունեցող տարբերությունները 1965 թվականի 65 տոկոսից կրճատվեցին և 1985 թվականին հասան 10 տոկոսի: Շատ տեղերում բանվորների աշխատավարձը առաջ էր անցել ինժեներների աշխատավարձից: Դրա հետևանքով ընկել էին ինժեներների աշխատանքի հեղինակությունը, նրա աշխատավարձի խթանիչ դերը:

Այս ամենը հետևանք էր այն բանի, որ առանց բավարար նյութական նախադրյալների 8-րդ հնգամյակում ցածր աշխատավարձերը բարձրացվեցին 50, իսկ միջին աշխատավարձերը՝ 26 տոկոսով, և այդ միտումները շարունակվեցին նաև հաջորդ հնգամյակներում: Դա հանգեցրեց նրան, որ երկրում միջինի համեմատությամբ բանվորների աշխատավարձը կազմում է 114 տոկոս, իսկ բարձրագույն կրթությամբ մասնագետներինը՝ 98:

Համահարթման այս քաղաքականությունը ոչ միայն սխալ էր, այլև հղի վտանգներով: Սովետական իշխանության առաջին տարիներին ընդունված «Տարիֆային նոր քաղաքականության մասին» դեկրետում, որը ստորագրել է Վ. Ի. Լենինը, կա հատուկ բաժին՝ «Ոչ թե հավասարարական բաշխում, այլ վճարում ըստ մասնագիտությունների, ծառայության» վերնագրով: Նրանում նշվում է, որ տարբեր որակավորման բանվորների, ծառայողների, միջին տեխնիկական և բարձր վարչական անձնակազմի տարիֆային դրույքների կազմման ժամանակ հավասարարության մասին ամեն մի միտք պետք է դեն շպրտել:

Վարձատրության համահարթումը թուլացնում է աշխատավարձի խթանիչ դերը էկոնոմիկայի զարգացման գործում: Արդյունքը լինում է այն, որ աշխատանքով վաստակած ռուբլին չի ամրապնդվում նյութական արժեքներով, ընկնում է նրա գնողունակությունը: Եվ պատահական չէ, որ մեզանում որոշակի խզում առաջացավ աշխատանքի արդյունքների և վարձատրման ու սպառման միջև, հասարակության պահանջմունքների արտադրության ձեռք բերած մակարդակի միջև, վճարունակ պահանջարկի ու դրա նյութական ծածկույթի միջև:

Ասվածից, իհարկե, չի հետևում, թե ցածր և միջին աշխատավարձերը չպետք է բարձրանան հնգամյակից հնգամյակ: Ընդհակառակն, սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, նյութական բարիքների, աշխատանքի արտադրողականության աճի համեմատ պետք է համամասնորեն բարձրանան ցածր և միջին աշխատավարձերը: Բարդ և որակավորված աշխատանքների վճարումները պետք է լինեն ավելի բարձր,



քանի որ աշխատանքի վարձատրության որոշակի տարբերակումը, բարձր արտադըրողական և ավելի որակյալ աշխատանքի նյութական խրախուսումն անհրաժեշտ է արտադրությունը խթանելու համար: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարը դատապարտեց աշխատավարձի համահարթման սխալ պրակտիկան և խնդիր դրեց շտկել այն:

Հայտնի է, որ բանվորների վարձատրության հիմքում ընկած են տարիֆային համակարգը և դրույքը: Տարիֆային դրույքը աշխատանքի վարձատրության չափն է ժամանակի միավորի համար: Այդ համակարգի միջոցով իրականացվում է աշխատավարձի պետական կարգավորումն ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով, ապահովվում է հավասար աշխատանքի համար հավասար վարձատրությունը: Սակայն լճացման տարիներին աշխատանքի վարձատրության տարիֆային համակարգում արմատավորվել են լուրջ թերություններ: 1972—1975 թվականներին հաստատված համակարգով անհիմն կերպով իջեցվեցին աշխատանքային նորմատիվները և դրա հետևանքով տարիֆի բաժինը կրճատվեց 50 տոկոսով: Սահմանափակվեցին բարձր որակյալ աշխատանքի դիմաց տրվող վճարումները, չհիմնավորված կերպով բարձրացան պարզ, նվազ որակավորված աշխատանքների վճարումները: Դա մի շարք ճյուղերում առաջ բերեց վարձատրման հավասարեցում, իսկ մեքենաշինության մեջ առաջին և վեցերորդ տարակարգերի վարձատրման չափերի տարբերությունը կազմեց 46 ռուբլի: Դա բացասաբար անդրադարձավ բանվորների պրոֆեսիոնալ աճի խթանման, աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության բարձրացման վրա և, վերջին հաշվով, արգելակեց էկոնոմիկայի ավելի արագ զարգացումը և ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի գործողությունը:

Անհատի պաշտամունքի և լճացման տարիներին կառավարումն ու բաշխումը լրիվ կենտրոնացված էին և կատարվում էին օրենքի ուժ ստացած պլանի և հրամանի միջոցով: Աշխատավարձի և գների սահմանումը համարվում էր պետության մենաշնորհը, նրա քաղաքականության բաղկացուցիչ մասը: Էկոնոմիկայի կառավարման անհարկի կենտրոնացումը և պետական ապարատի բյուրոկրատացումը ի չիք դարձրին ըստ աշխատանքի բաշխման սոցիալիզմի տնտեսական օրենքը: Հասարակական արդյունքի բաշխումը փաստորեն կատարվում էր «վերևից»՝ հրամանով: Նույն ձևով էլ «իջեցվում» էին աշխատավարձի դրույքները, սակագները: Խզում էր առաջացել աշխատանքի և արդյունքների միջև: Ուստի և ըստ աշխատանքի բաշխման օրենքը այլևս չէր խթանում բարեխիղճ աշխատանքը, մենք շեղվել էինք նյութական և բարոյական խթանների լենինյան սկզբունքից: Սահմանափակվել էին սոցիալիստական շուկայի շրջանակները, դուրս էր մղվել մասնավոր և մանր ապրանքային արտադրությունը: Կծկվել էին սոցիալիզմի և նրա սկզբունքների, տնտեսական օրենքների, մասնավորապես ըստ աշխատանքի բաշխման, արժեքի և ապրանքադրամական հարաբերությունների օբյեկտիվ տնտեսական օրենքների գործողության շրջանակները:

Այդ ամենի հետևանքով հասարակական կյանքում սողանցքներ առաջացան անաշխատ եկամուտների, սպեկուլյացիայի, կաշառակերության, հովանավորչականության և այլ հակահասարակական երևույթների համար, որոնք բացասաբար անդրադարձան «յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» բաշխման սկզբունքի ճակատագրի վրա: Փաստորեն իր իմաստը միանգամայն կորցրեց «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների» սոցիալիզմի հիմնարար սկզբունքը:

Էկոնոմիկայում և բաշխման մեջ տեղի ունեցած անբարենպաստ միտումները բացասաբար անդրադարձան նաև մարդկանց նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարման՝ սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության պահանջների վրա: Քաղաքացիների մի զգալի մասի արդար աշխատանքային եկամուտները ընկան «անաշխատ եկամուտների» ստվերի տակ:

Շատ մարդիկ սկսեցին գանգատվել, թե չնայած աշխատավարձը որոշ չափով բարձրացել է, բայց ապրուստի պայմանները վատացել են, որտեղից լրացուցիչ դրամ հայթայթել, վաստակել, իսկ ոմանք էլ սկսեցին մտածել, թե որտեղից կորզել «խալտուրա», «փափախ», անաշխատ եկամուտներ...

Լճացման տարիներին երկիրը կանգնել էր տնտեսական ճգնաժամի եզրին: Իրեն լրիվ սպառել էր տնտեսության վարման էքստենսիվ, ըստ էության ծախսումային համակարգը: Շատ լուրջ արգելակ են դարձել կառավարման վարչահրամայական մեթոդները: Արտադրության աճը, նրա արդյունավետությունը, բնակչության կենսամակարդակի բարձրացումը կանգ էին առել: Լրջորեն խարխլվել էր երկրի ֆինանսական

տնտեսությունը, թուլացել էին կադրերի պատասխանատվությունը և աշխատանքային
կարգապահությունը:
Կուսակցության առջև բարդ խնդիր ծառացավ՝ երկիրը դուրս բերել լճացումից,
առողջացնել տնտեսական իրադրությունը, զարգացումը շրջել դեպի ժողովրդի բա-
րօրություն, մշակել ու իրականացնել տևական բնույթի միջոցառումների համակարգ,
որպեսզի ապահովվի համաշխարհային գիտատեխնիկական ու տնտեսական առա-
ջադիմության առաջավոր բնագծեր ավելի արագ դուրս գալը: Ուստի առաջ քաշվեց
վերակառուցման, սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, սովետական հա-
սարակությունը համակողմանիորեն նորացնելու, սոցիալիզմը որակապես նոր մա-
կարդակի հասցնելու կուրս: Այդ նորարարական ստրատեգիան խորացվել ու կոնկրե-
տացվել է ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումներում, XIX կուսկոնֆե-
րանսի որոշումներում: Դրվել են հասարակության կյանքի բոլոր կողմերը վերակա-
ռուցելու տեսության և գիտական քաղաքականության հիմքերը:
Որպես առաջին քայլ՝ մեծ աշխատանք ծավալվեց ժողովրդական տնտեսության
մեջ տարրական կարգուկանոն հաստատելու և կարգապահությունն ամրապնդելու,
կադրերի նկատմամբ պահանջկոտությունը բարձրացնելու, աշխատանքի բյուրո-
կըրատական մեթոդների առավել անհանդուրժելի դրսևորումները վերացնելու ուղ-
ղությամբ:
Կուսակցությունն ու կառավարությունը տնտեսական և կազմակերպական կոնկ-
րետ միջոցներ ձեռնարկեցին էկոնոմիկայի կառուցվածքային քաղաքականության
կատարելագործման ուղղությամբ, շեշտը դնելով գիտատեխնիկական առաջադիմու-
թյան զարգացման, մեքենաշինության՝ որպես ամբողջ էկոնոմիկայի տեխնիկական
մակարդակի բարձրացման հիմքի, արդիականացման վրա:
Հսկայական ֆինանսական միջոցներ հատկացվեցին սոցիալական ոլորտի՝ բնա-
կարանային շինարարության, առողջապահության, ժողովրդական կրթության զար-
գացման, մշակույթի նյութական բազայի ամրապնդման, սոցիալական այլ նպա-
տակների իրականացման համար: Նախատեսված է սովետական յուրաքանչյուր ըն-
տանիքի մինչև 2000 թվականն ապահովել առանձին բնակարանով կամ անհատական
տնով:
ՍՄԿԿ XIX կոնֆերանսում գլխավոր շեշտը դրվեց արմատական տնտեսական
ռեֆորմի մշակման և գործնական իրականացման վրա, որն ապահովում է անցումը
ղեկավարման առավելապես վարչական մեթոդներից՝ տնտեսագիտական մեթոդների,
իրենց աշխատանքի արդյունքներով կոլեկտիվների և առանձին աշխատողների շա-
հագրգռության բարձրացման հիման վրա: Այդ ճանապարհին խոշոր ուղենիշ եղավ
պետական ձեռնարկության (միավորման) մասին, կոոպերացիայի, անհատական աշ-
խատանքային գործունեության մասին օրենքների ընդունումը: Երկրում մասշտաբա-
յին աշխատանքներ են ծավալվել ձեռնարկությունները տնտհաշվարկի, աշխատանքի
կազմակերպման ու վարձատրման առաջադիմական ձևերի, ինքնակառավարման
փոխադրելու համար: Դրանք զարգացնում են աշխատավորական կոլեկտիվների նա-
խաձեռնությունը, մարդկանց ձեռներեցությունը, պայմաններ ստեղծում աշխատել
առավելագույն հատույցով, նպաստում են համահարթման խպառ վերացմանը՝ դրա
բոլոր ձևերով հանդերձ, նյութական հիմք ստեղծում դեմոկրատացման պրոցեսի հա-
մար, ըստ աշխատանքի բաշխման օրենքի գործողության ակտիվացման համար:
Ապրանքադրամական հարաբերությունների զարգացման շնորհիվ միանգամայն
նոր ձևով է դրվում սոցիալիստական հասարակության մեջ կոոպերացիայի հարցը:
Նախ պարզվեց, որ սոցիալիզմի պայմաններում խոշոր արտադրությունը միշտ չէ, որ
ամենաարդյունավետն է: Ակնհայտ դարձավ, որ մանր և միջին արտադրությունը
նույնիսկ կարող է ավելի արդյունավետ լինել, մանավանդ սպառողների պահանջ-
մունքները անմիջականորեն բավարարելու գործում: Բացի այդ, պարզվեց, որ կոո-
պերացումը տալիս է անձնական և հասարակական շահերի զուգակցման միանգամայն
ճիշտ և հաջող ձև: Բաշխումը դառնում է անմիջական և աշխատողների մոտ առաջ
է բերում տիրոջ զգացում, ձեռներեցություն, արտադրողական ուժերի, մասնավորա-
պես մարդկային գործոնի ակտիվացում: Միանգամայն իրավացի էր Կ. Մարքսը, երբ
աշխատանքի արտադրողականության վրա ազդող չորս հիմնական գործոններից ա-
ռաջինը և վճռողը համարում էր մարդուն, մարդկային գործոնը:
Կուսակցությունը զարգացման և վերակառուցման արդի փուլում պահանջում է
ըստ ամենայնի խթանել աշխատավոր զանգվածների կուլտուր-տեխնիկական մա-
կարդակի բարձրացումը, քանի որ ժամանակակից արտադրությունը կողմնորոշվում
է դեպի նախաձեռնողաբար մտածող, բարձր կազմակերպված, կարգապահ, կրթված,



սկզբունքորեն նոր տեխնոլոգիական կուլտուրային տիրապետող բանվորը: Դա էլ
ավելի արդյունավետ կդարձնի ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի
գործողությունը:
Կուսակցությունն ու կառավարությունը մշակեցին նաև նախկինում անհիմն կեր-
պով սահմանափակված անհատական աշխատանքային գործունեությունն ակտիվաց-
նելու կուրս: Այստեղ չի կիրառվում վարձու աշխատանք, չկա մարդու կողմից մար-
դու շահագործում: Այսպիսի աշխատանքը միայն նպաստում է սոցիալիզմի ապրան-
քադրամական հարաբերությունների զարգացմանը, բազմազան բարձրորակ սպառ-
ման ապրանքներով և սպասարկման ոլորտի զանազան ծառայություններով բնակ-
չության պահանջմունքների բավարարմանը, ընդհանուր առմամբ սոցիալիզմի ամ-
րապնդմանն ու զարգացմանը:
Վերակառուցման և դեմոկրատացման պրոցեսը, որն ընդգրկել է հասարակական
կյանքի և էկոնոմիկայի բոլոր ոլորտները, լայն պայմաններ է ստեղծում մարդկանց
նյութական և հոգևոր պահանջմունքների առավելագույն բավարարման, ժողովրդի
բարեկեցությունը նոր աստիճանի բարձրացնելու համար: Սոցիալ-տնտեսական ար-
մատական վերակառուցումը կենսական անհրաժեշտություն է նաև մեր հանրապե-
տության համար, որտեղ արմատակալել են սոցիալական շատ չարիքները, խնամա-
ռությունը և հովանավորչությունը: Տասնամյակներ շարունակ շատ ձեռնարկություններ
ու տնտեսություններ, հանդես բերելով անտնտեսվարություն և թերանալով իրենց
պլանային առաջադրանքների կատարման գործում, անհոգ կյանք էին վարում, ցան-
կացած չափով նյութական ռեսուրսներ ստանում և փաստորեն ապրում էին ուրիշի
հաշվին: Դա մարդկանց մեջ ծնում էր ծրիակերություն և անպատասխանատվություն:
Ցավոք, մեզ մոտ նման երևույթներ նկատվում են նաև այսօր: Դա հակասում է սո-
ցիալական արդարությանը, ըստ աշխատանքի բաշխման սոցիալիզմի սկզբունքին:
Նման երևույթների դեմ այժմ վճռական պայքար է մղվում:
Վերակառուցման վերջին երեք տարում, ինչպես նշվեց XIX կուսկոնֆերանսում,
հաջողվել է կանգնեցնել բացասական միտումների խորացումը, որոնք սպառնում էին
ճգնաժամային իրադրության վերաճել: Հաղթահարվում են այդ միտումները, ստեղծ-
վում որոշակի նախադրյալներ՝ հետագա կայուն առաջընթացի համար: Պայմաններ
են ստեղծվում ըստ աշխատանքի բաշխման օրենքի գործողության խթանիչ դերի հե-
տագա ուժեղացման համար, որի նպատակը հասարակական կյանքում սոցիալիս-
տական ապրելակերպի ամրապնդումն է:

# ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆ

XIX ԿՈՒՍԿՈՆՖԵՐԱՆՍԸ ՔՆՆԱՐԿԵՑ հասարակական կյանքի դեմոկրատացման և երկրի ժողովրդական տնտեսության զարգացման արագացման ընթացքը, առաջադրեց գիտատեխնիկական առաջադիմության, հասարակական արտադրության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման միջոցով էկոնոմիկայի արմատական վերակառուցման խնդիրը: Խոսքը վերաբերում է մեր զարգացման նոր որակին, ստրատեգիական բոլոր կարևոր ուղղություններով արագ առաջընթացին, արտադրության կառուցվածքային վերակառուցմանը, այն ինտենսիվ ռելսերի վրա փոխադրելուն, կառավարման արդյունավետ ձևերին, սոցիալական պրոբլեմների ավելի ակտիվ լուծմանը: Ընթացիկ հնգամյակում գիտության ու տեխնիկայի զարգացումն է՛լ ավելի մեծ չափով է նպատակամղված հասարակության տնտեսական և սոցիալական խնդիրների լուծմանը:

Էքստենսիվ աճի սահմանափակ հնարավորությունների պայմաններում էկոնոմիկայի զարգացման տեմպերի արագացումը և ժողովրդի բարեկեցության բարձրացումը կարելի է ապահովել արտադրության ինտենսիվացմամբ, գիտատեխնիկական առաջադիմությամբ: Գիտության և տեխնիկայի նվաճումները դառնում են արտադրական կարևոր ռեսուրսներ՝ ավելի ու ավելի մեծ չափով պայմանավորելով հասարակության զարգացման ինտենսիվացումը: Կուսակցությունն առաջադրել է հասարակության տեխնիկական հիմքի կատարելագործման, գիտությունը իրոք հզոր արտադրողական ուժ դարձնելու լայն և ռեալիստական ծրագիրը:

Հրամայական պահանջ է գիտական աշխատանքի հասարակական բաժանումը, այն ուղղություններով հետազոտություններ կատարելու գործում խոր մասնագիտացումը, որոնցում կարելի է առավել մեծ արդյունքների հասնել: Այդպիսի բաժանումը և մասնագիտացումն անհրաժեշտ են դարձնում գիտական գիտելիքների փոխանակումը և առևտուրը, հնարավորություն են տալիս օգտվելու տարբեր ռեգիոնների գիտական մշակումներից: Այսօր պահանջվում է ջանքերը կենտրոնացնել հետազոտությունների կարևորագույն ուղղությունների վրա, առավելագույն չափով մոբիլիզացնել ողջ ստեղծագործական պոտենցիալը, երկրի համար ապահովել գիտության ու տեխնիկայի վճռորոշ բնագավառներում ամենաառաջավոր բնագծեր դուրս գալը:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման հարցերի շուրջ XIX կուսկոնֆերանսի առաջադրած ծրագիրը տնտեսական շինարարության բարդ պրոբլեմների լուծման կարևոր ուղենիշ դարձավ: Այսօր գիտության պրոբլեմները կոչված են առավելագույնս ծառայելու հասարակական արտադրության կարիքներին, դեպի արտադրություն նրա վճռական շրջադարձին: Միայն այդ դիրքերից պետք է դիտել գիտությունը, տեխնիկան և արտադրությունը միավորող շղթայի օղակները:

Գիտության ասպարեզում կուսակցության առաջադրած արմատական խնդիրների հաջող լուծման համար, ինչպես գործունեության ոչ մի այլ ոլորտում, կարևորվում է մարդկային գործոնը, այսինքն՝ գիտական կադրային պոտենցիալի որակավորման և ստեղծագործական ակտիվության մակարդակը, առավելապես ինտենսիվ ուղիով, գիտության արդյունավետության շեշտակի բարձրացման միջոցով նրա զարգացումը: Այդ պրոբլեմն առանձնապես հրատապ է մեր հանրապետության համար, որն ունի գիտական ծանրակշիռ պոտենցիալ: Ներկայումս հանրապետությունում կան ժամանակակից գիտության գրեթե բոլոր ուղղությունների ավելի քան 22 հազար գիտական ու գիտամանկավարժական աշխատողներ: Գիտական և գիտատեխնիկական կադրերի թվի ընդհանուր աճի պայմաններում նրանց կազմի որակական փոփոխություն է կատարվել: Այսօր հանրապետությունում կան գիտական աստիճաններ ու կոչումներ ունեցող 8005 անձինք, այդ թվում գիտությունների 796 դոկտոր և 7209 թեկնածու: Բավական է նշել, որ վերջին երկուսուկես տասնամյակում գիտությունների դոկտորների թիվն ավելացել է 4,6 անգամ, նույնքան էլ՝ գիտությունների թեկնածուներինը: Սակայն վերջին տարիներին գիտական աշխատողների թվի աճի տեմպերը որոշ չափով նվազել են: Դա ցույց է տալիս գիտության զարգացման ոչ թե թուլացումը կամ նրա անկումը, այլ անցումը էքստենսիվ զարգացումից դեպի ինտենսիվը: Մեր հանրապետությունում զգալի է գիտությունների դոկտորների բաժինը գիտական և գիտամանկավարժական աշխատողների թվում՝ 3,6 տոկոս (4-րդ տեղը միութենական հանրապետությունների մեջ), մինչդեռ գիտությունների թեկնածուների բաժինը համեմատաբար մեծ չէ՝ 32,7 տոկոս (13-րդ տեղը): Գիտական աշխատողների ավելի քան 63,6 տոկոսը գիտական աստիճաններ չունեն: Եթե 1960 թվականին հանրապետությունում գիտությունների յուրաքանչյուր դոկտորին ընկնում էր գիտական աստիճաններ չունեցող 11 գիտաշխատող, ապա 1987 թվականին այդ ցուցանիշը հասավ 19-ի: Պետք է նշել, որ այս տվյալները վերաբերում են ընդհանուր առմամբ ամբողջ գիտությանը, իսկ գիտության առավել արագ զարգացող ուղղություններում այդ վիճակն ավելի անբարենպաստ է: Հանրապետության գիտության ճյուղային կառուցվածքը ներառնում է մասնագիտությունների, ժամանակակից գիտական ուղղությունների մեծ մասը և ապահովված է բարձրորակ կադրերով: Այդուհանդերձ այդպիսի կադրերի ամենացածր տոկոսն ընկնում է տեխնիկական, ֆիզիկամաթեմատիկական, քիմիական գիտություններին, այսինքն գիտելիքների այն ճյուղերին, որոնց զարգացման մակարդակով պայմանավորված են գիտատեխնիկական առաջադիմության տեմպերը: Ուսումնասիրվող ժամանակահատվածում տեխնիկական գիտությունները գիտական աշխատողների թվով առաջին տեղն էին զբաղեցնում, իսկ աճի տեմպերով՝ երկրորդ: Հայկական ՍՍՀ-ում առանձնակի տեղ ունեն տեխնիկական գիտությունները: Այդ բնագավառում հետազոտություններ է կատարում հանրապետության գիտական աշխատողների մոտ 37,2 տոկոսը, սակայն այս ոլորտում բարձրորակ գիտական կադրերի խիստ կարիք կա: Գիտությունների դոկտորների և թեկնածուների տեսակարար կշիռը համապատասխանաբար կազմում է 0,8 և 17,5 տոկոս: Տեխնիկական գիտությունների արագ զարգացումը հանրապետության առաջադրված խնդիրների լուծման կարևորագույն պայմանն է:

Գիտական գործունեության ինտենսիվացումը և նրա արդյունավետության բարձրացումը, գիտական ռեսուրսների լավագույն օգտագործումը պահանջում են նրա առանձին ռեգիոնների գիտատեխնիկական պոտենցիալի մասնագիտացում:

Հետազոտությունների թեմատիկան, հետևաբար նաև մասնագիտացման ուղիները ընտրում են կամ հենց իրենք՝ գիտական հաստատությունները, կամ պատվիրում են վերադաս կազմակերպությունները, կամ էլ սահմանվում տնտեսական պայմանագրերով: Դա, որպես կանոն, հանգեցնում է զգալի կրկնորդման նույնիսկ մեկ գերատեսչության շրջանակներում ինչպես գիտական հաստատությունների, այնպես էլ այն ռեգիոնների թույլ մասնագիտացման, որոնց տարածքներում տեղաբաշխված են նրանք, ռեգիոնի պոտենցիալի նվազ օգտագործման և, որպես դրա հետևանք՝ գիտատեխնիկական առաջադիմության ցածր տեմպերի: Անհրաժեշտ է գիտատեխնիկական պոտենցիալի պլանային մասնագիտացում, ռեգիոնում գիտական հետազոտությունների այն ուղղությունների սահմանում, որոնցում կարելի է առավել մեծ արդյունքի հասնել, ապահովել բարձր արդյունավետությունը: Սակայն գիտական մասնագիտացման օպտիմալ պլանավորման մեթոդներ առայժմ չեն մշակվել այդ պրոբլեմի բացառիկ բարդության պատճառով: Ուստի մասնագիտացման ուղղությունները հաճախ ձևավորվում են պատահաբար, մի շարք գործոնների ազդեցությամբ, իսկ հաճախ էլ սահմանվում կամային եղանակով, հիմնականում՝ վերևից, երբեմն՝ առանց բավարար գիտական հիմնավորման, կամ էլ էքսպերտային եղանակով, հաշվի առնելով ժամանակի պահանջները կամ ռեգիոնի արտադրական մասնագիտացումը: Այդ բոլոր դեպքերում ընդունված որոշումը կամ ստեղծված իրավիճակը կարող են օպտիմալից հեռու լինել, որն, անշուշտ, կվնասի ժողովրդական տնտեսությանը, բացասաբար կանդրադառնա նրա տեմպերի վրա ոչ միայն տվյալ ռեգիոնում, այլև ընդհանուր առմամբ երկրում: Ուստի գիտատեխնիկական պոտենցիալի ռեգիոնալ գիտական մասնագիտացման տեսականորեն հիմնավորված և գործնականում ընդունելի մեթոդիկայի մշակումն անհետաձգելի խնդիր է:

*ՄԵԼՔՈՆՅԱՆ ԱԻԴԱ ՀՄԱՅԱԿԻ — Տնտեսագիտության թեկնածու, ՀՍՍՀ ԳԱ էկոնոմիկայի ինստիտուտի ավագ գիտաշխատող:*

Գիտական մասնագիտացումը չի կարելի մեկուսի քննարկել: Այն պետք է հաշվի առնել ինչպես տվյալ ռեգիոնի, այնպես էլ ընդհանուր առմամբ երկրի շահերը, ելնի երկրի ինչպես այդ, այնպես էլ մյուս ռեգիոնների գիտական գործունեության արդյունավետության բարձրացումից: Առանձին գոտիների գիտության առավելագույն արգասավորությունը չի նշանակում ընդհանուր առմամբ ամբողջ երկրում այդպիսի առավելագույնի ձեռքբերում: Հետևաբար, որևէ ռեգիոնի մասնագիտացման հարցը պետք է լուծել բոլոր ռեգիոնների համար համալիրային կարգով:

Գիտական մասնագիտացումը պետք է քննարկել լայն առումով, հաշվի առնելով ոչ միայն առանձին հետազոտությունները, այլև գիտության ողջ համակարգը, ներառնելով և՛ հիմնարար, և՛ կիրառական հետազոտությունները, կոնստրուկտորային և նախագծային աշխատանքները, նմուշների պատրաստումը, դրանց լաբորատոր և արդյունաբերական փորձարկումը, տեխնոլոգիական նախագծումը, արտադրության յուրացման և նոր տեխնիկայի կիրառման գործում ցույց տրվելիք օգնությունը, այսինքն՝ տեխնիկա-արտադրություն ողջ ցիկլը: Այստեղ պետք է տեղ գտնեն նաև ինֆորմացիոն ծառայությունը, համապատասխան կադրերի, այդ թվում նաև գիտական կադրերի նախապատրաստումը և վերապատրաստումը մասնագիտացման ընտրված ուղղություններով:

Շատ պատճառներ կան, որոնք թելադրում են մասնագիտացման համալիրում կադրերի պատրաստության ընդգրկումը: Պետք է հաշվի առնել գիտական կադրերի անընդմեջ պահանջը և ռեգիոնի բարձրորակ գիտատեխնիկական կադրային պոտենցիալի, համապատասխան նյութատեխնիկական և փորձառական բազայի առկայությունը, որոնց օգտագործումը կադրերի պատրաստման համար տնտեսական տեսակետից նպատակահարմար կլիներ, իսկ որակի առումով՝ արգասավոր: Բարձր կուրսերի ուսանողները կարող են ուժերի ներածին չափ մասնակցել գիտական հետազոտություններին և մշակումներին այն կազմակերպություններում ու ձեռնարկություններում, որոնցում իրենք աշխատելու են ուսումն ավարտելուց հետո: Երկրորդ, շատ կարևոր է բուհերի պրոֆեսորադասախոսական կազմի ակտիվ մասնակցությունը գիտահետազոտական աշխատանքներին, գիտության ու տեխնիկայի նվաճումները կյանքում կիրառելուն: Այս խնդիրները կարելի է ավելի հաջողությամբ իրականացնել, եթե ռեգիոնը մասնագիտացվել է գիտական այն ուղղություններում, որոնք համընկնում են բուհի աշխատողների գիտական շահերին, և որոնք պայմանավորված են կադրերի նախապատրաստման մասնագիտություններով: Եվ ապա՝ բուհի մասնագիտացումն ու բազմապրոֆիլայնությունից հրաժարվելը, հարակից մասնագիտությունների ուսանողների թվակազմի մեծացումն այժմ տնտեսական տեսակետից շահավետ են դարձել, քանի որ կադրերի պատրաստումը պահանջում է զարգացած նյութատեխնիկական բազա, ժամանակակից էլեկտրոնային տեխնիկա, բարձր արտադրողական սարքավորումներ և այլ թանկարժեք միջոցներ: Դա նշանակում է, որ մեկ մասնագիտության կադրերի պատրաստումը նպատակահարմար է կենտրոնացնել սակավաթիվ բուհերում, այն ռեգիոններում, որտեղ կարելի է ապահովել այդ գործի բարձր որակը:

Ռեգիոնների գիտական մասնագիտացումը նշանակում է գիտական աշխատանքի տարածքային բաժանում, հետազոտությունների արդյունավետության բարձրացում, յուրաքանչյուր ռեգիոնի գիտական արտադրանքի նկատմամբ պահանջմունքների բավարարում ոչ միայն տեղական պոտենցիալի հաշվին, այլև այլ ռեգիոնների գիտական գործունեության արդյունքների օգտագործման միջոցով: Տվյալ շրջանի էկոնոմիկայի աճի արագացման վրա գիտատեխնիկական պոտենցիալի ներգործությունն ուժեղացնելու, այն զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու համար, մեր կարծիքով, պետք է նկատի ունենալ հետևյալ նկատառումները. առաջին՝ գիտական մասնագիտացման ուղղությունները չի կարելի մենաշնորհ դարձնել միևնույն ուղղությամբ կարող է մասնագիտանալ մի քանի ռեգիոն: Դա մրցակցության պայմաններ է ստեղծում, մի բան, որն, անկասկած, դրական ներգործություն է ունենում գիտատեխնիկական պոտենցիալի օգտագործման արդյունավետության վրա, բարձրացնում նրա արգասավորությունը և, մյուս կողմից, ի հայտ է գալիս հետազոտությունների որակական բարձր արդյունքների ստացման հավանականություն: Երկրորդ, մասնագիտացված կազմակերպությունների հետազոտությունների արդյունքները չպետք է ինչպես սեփական, այնպես էլ այլ շրջանների սպառողներին տրվեն անհատույց, սպառողները պետք է դրանք գնեն, ինչպես նաև վճարեն դրանց ներդրման և օգտագործման կազմակերպման գործում մատուցված ծառայությունների համար: Դա պահանջում է տնտհաշվարկի համակարգ, որին անցնում են ինչպես ար-



տադրական ձեռնարկությունները, այնպես էլ գիտական հաստատությունները: Մյուս կողմից, դա նաև գիտական կազմակերպությունների մրցակցության, նրանց արտադրանքի գների իջեցման պայմաններ է ստեղծում: Բացի այդ, սպառողները տվյալ արտադրանքի մատակարարներ ընտրելու հնարավորություններ կունենան, քանի որ մասնագիտացման ուղղությունները մենաշնորհ չեն լինի:

Գիտական մասնագիտացման ձևավորման վրա կարող են ներազդել բազմաթիվ գործոններ, որոնց ի հայտ բերումը և գնահատումը խնդրի լուծման կարևոր շրջափուլերից մեկն է: Յուրաքանչյուր կոնկրետ ռեգիոնի համար, նկատի ունենալով նրա առանձնահատկությունները, գործոնների կազմը կարող է տարբեր լինել: Սակայն հաշվի առնելով, որ գիտության գլխավոր նպատակն արտադրողական ուժերի զարգացման արագացումն է և ռացիոնալ օգտագործումը, արտադրական մասնագիտացումը վճռորոշ գործոն է դառնում: Այդ առումով գիտական մասնագիտացման ուղղությունների վրա ազդող բոլոր գործոնները կարելի է բաժանել երկու խմբի. տվյալ ռեգիոնի ժողովրդական տնտեսության հիմնական ուղղությունները բնորոշող և գիտական մասնգիտացմանը ներազդող գործոններ:

Առաջին խմբին են վերաբերում բնական հարստությունների, աշխատանքային, էներգետիկ, ջրային և այլ արտադրական ռեսուրսների առկայությունը, ռեգիոնի էկոլոգիական վիճակը և բնակչության ժողովրդագրական բնութագրերը՝ նրա վերարտադրության ինտենսիվությունը, կազմը և կառուցվածքը, տարաբնակեցումը, շարժունակությունը, կրթական մակարդակը: Կարևոր նշանակություն ունեն որոշման ընդունման պահին ռեգիոնի արտադրողական ուժերի մակարդակը և ուղղությունը՝ արտադրական կարողությունները, դրանց կառուցվածքը, ռեսուրսներով ապահովվածությունը, տրանսպորտային համակարգը, ծառայությունների ոլորտի հիմնարկները, արտադրանքի որակն ու դրա իրացումը և այլն:

Երկրորդ խմբի գործոններից առավել էական ազդեցություն կարող են ունենալ ռեգիոնի գիտատեխնիկական պոտենցիալը, հետազոտությունների ավանդական ուղղությունները, գիտական դպրոցների առկայությունը, գիտական հաստատությունների և բուհերի նյութատեխնիկական բազան, կադրերի պատրաստման որակն ու մասնագիտությունները:

Գիտական մասնագիտացմանը անմիջականորեն ներազդող գործոնների երկրորդ խմբից հարկավոր է նշել մեր հանրապետության ավանդական գիտական ուղղությունները: Հանրապետության գիտությունների ակադեմիայի և մյուս ինստիտուտներում, բուհերում կատարվող ֆունդամենտալ ու կիրառական հետազոտությունները ներկայացնում են գիտական գիտելիքների լայն ասպեկտը: Նշենք թեկուզ դրանցից մի քանիսը. ֆունկցիաների տեսություն, դիֆերենցիալ հավասարումներ և ֆունկցիոնալ տարրալուծում, հավանականությունների տեսություն և մաթեմատիկական վիճակագրություն, կիբեռնետիկա, առաձգականության մաթեմատիկական տեսություն, ջրա և գազադինամիկա, պլաստիկության տեսություն, կոմպոզիցիոն նյութերի տեխնոլոգիա, ատոմային միջուկի և տարրական մասնիկների ֆիզիկա, կոսմիկական ճառագայթների, կարծր մարմինների ֆիզիկա, աստղերի և գալակտիկաների էվոլյուցիա, քվանտային էլեկտրոնիկա և ռադիոֆիզիկա, ռադիոտեխնիկա, հաշվողական տեխնիկա, քիմիա և քիմիական նյութերի տեխնոլոգիա, ապակու տեխնոլոգիա, ընտրովի ներգործող դեղագործական պատրաստուկների օրգանական նուրբ սինթեզ, հազվագյուտ տարրերի և օրգանական միացությունների տարրալուծական քիմիա, Հայաստանի տարածքի երկրաբանական կառուցվածքը, օգտակար հանածոների գոյացման և տեղաբաշխման օրինաչափությունները, հանրապետության տարածքի մագմայական կազմավորումները, ինժեներա-սեյսմիկական ապարատուրան, գեոքիմիան և գեոֆիզիկան, հանրապետության բուսաշխարհը, կենսա և միկրոբուսաշխարհը, արդյունաբերական հիդրոպոնիկան, կենդանական աշխարհի կենդանաբանաաշխարհագրական շրջանացումը, մարդու և կենդանիների ֆիզիոլոգիական վեգետատիվ նյարդային համակարգի ֆիզիոլոգիան, փորձառական և մոլեկուլյար կենսաբանությունը և այլն:

Արդի պայմաններում գիտության նյութական ապահովման հարցերն առանձնակի նշանակություն են ստանում և ներգործում գիտական մասնագիտացման վրա: Կուսակցությունը և կառավարությունը միշտ էլ սևեռուն ուշադրություն են նվիրել գիտության նյութատեխնիկական ապահովվածության հարցերին, քանի որ դա գիտական աշխատանքի ինտենսիվացման կարևոր գործոնն է: ՍՄԿԿ XXVII համագումարում առաջադրվեց գիտության նյութատեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդման հետևողական գիծ վարելու խնդիրը: Դա խիստ կարևոր է մեր հանրապետության

վել Խարազյանը: Նույն կարգով Կողեսի 8-ամյա դպրոցի դիրեկտորի պաշտոնում բաց քվեարկությամբ ընտրվեց Հայկուշ Ներսիսյանը:

Կադրերի հետ տարվող աշխատանքում կուսշրջկոմն օգտվում է հրապարակայնության նաև այլ միջոցներից: Դրանցից մեկը հասարակական կարծիքն է: Շրջկոմին առընթեր ստեղծել ենք հասարակական կարծիքի ուսումնասիրման խորհուրդ, որի կազմում ընդգրկված են կուսակցական, կոմերիտական ու սովետական մարմինների աշխատողներ, իրավաբաններ և այլն: Նրանք ուսումնասիրում են հրապարակայնության և դեմոկրատիայի ապահովման նպատակով տեղերում կատարվող աշխատանքը, ստուգում աշխատավորների առաջ քաշած հարցերը: Ուսումնասիրությունների արդյունքները օգտագործվում են պրակտիկ աշխատանքում: Մենք հաշվի ենք առնում ղեկավար կադրերին աշխատավորության տված օբյեկտիվ գնահատականները: Անկեղծ բացախոսության մթնոլորտում անցավ առևտրի, կապի, առողջապահության, տրանսպորտի, կենցաղսպասարկման, կուլտուրայի, մարզական հիմնարկությունների ղեկավարների հանդիպումը շրջանի աշխատավորության հետ: Այդ հանդիպում-հաշվետվությունների ընթացքում քաղաքացիների կողմից ղեկավարներին տրված գնահատականներից, նրանց աշխատանքի ոճի և արդյունքների վերաբերյալ արտահայտած կարծիքներից և առաջարկություններից մենք արեցինք լուրջ հետևություններ: Ընդ որում աշխատավորության դրական կամ բացասական գնահատականների մասին համապատասխան նշումներ են արվում հաշվետվությամբ հանդես եկած ղեկավար կադրերի անձնական գործում: Որոշ ժամանակ անց անդրադառնում ենք այդ հարցին, պարզում, թե նրանք ինչպիսի հետևություններ են արել իրենց հասցեին արված քննադատական խոսքերից, ինչպես են վարում իրենց վստահված բնագավառի գործերը: Հիշյալ եղանակը կիրառվում է նաև պրոպագանդիստական կադրերի նկատմամբ:

Հրապարակայնության ընդլայնման առումով պակաս կարևոր չեն կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար կադրերի ատեստավորման անցկացումը, նրանց հաշվետվությունների քննարկումը:

Կադրերի հետ տարվող աշխատանքի հրապարակայնությունից բխող վերոհիշյալ ձևերը, որոնք գտնվում են կատարելագործման շարունակական պրոցեսում, բացառում են խնամակալության և հովանավորչության ամեն մի երևույթ, դրանք նպաստում են ղեկավար աշխատողների պատասխանատվության բարձրացմանը, նրանց նկատմամբ պահանջկոտության ուժեղացմանը:

Հրապարակայնության ու դեմոկրատիայի ծավալման արտահայտություն են քաղաքացիների նամակների, դիմում-բողոքների առնչությամբ տարվող աշխատանքը, շրջանի ղեկավարների հետ նրանց հանդիպումների կազմակերպումը: Անցած մեկուկես տարում շրջկոմում ստացվել են 788 նամակ ու դիմում, կատարվել 1277 քաղաքացիների ընդունելություն: Հետզհետե նվազում է անհասցե դիմումների և, մասնավորապես, ժամկետանց ու կրկնակի դիմումների քանակը: Իսկ դա վկայությունն է այն իրողության, որ էապես ամրապնդվել է շրջկոմի ապարատի աշխատողների կատարողական կարգապահությունը, նրանք ավելի զգայուն ու պատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում մարդկանց հոգսերի ու պահանջների նկատմամբ, ժամանակին ընթացք են տալիս նրանց նամակներին, դիմում-բողոքներին: Այդ առումով մեծապես նպաստում են կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ղեկավարների պարբերական այցերը աշխատավորական կոլեկտիվներ: Նրանք տեղերում սրտաբաց զրույցներ են ծավալում բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների հետ նրանց հուզող խնդիրների շուրջ, պատասխանում տրված հարցերին:

Ցավոք, ղեկավար անձանց հասցեին տարբեր օղակներ ուղարկված ոչ բոլոր բողոքներն են օբյեկտիվ բնույթ կրում, լինում են նաև նրանց հեղինակազրկելու փորձեր: Նման անհիմն նամակների հեղինակների նկատմամբ ստեղծվում են հասարակական պարսավանքի մթնոլորտ, նրանց հարցը քննարկվում է համագյուղացիների, գործընկերների ներկայությամբ և զրպարտչագիրները ենթարկվում են լուրջ կշտամբանքի: Այլ խոսքով, մենք լայն հնարավորություններ ենք ստեղծում հրապարակայնությունից ու դեմոկրատիայից օգտվելու համար, միաժամանակ չենք հանդուրժում, երբ դրանք օգտագործում են անձնական շահերի, վրեժխնդրության, ազնիվ կադրերի հեղինակության հետ խաղալու նպատակով: Հրապարակայնությունը և դեմոկրատիան պետք է մարդկանց մղեն սկզբունքայնության, օբյեկտիվության, նրանց համակեն արդարամտությամբ, ազնիվ զգացումներով:



Գաղափարախոսական աշխատանքի՝ ավանդույթ դարձած շատ ձևեր ու մեթոդներ վերակառուցման պահանջների տեսանկյունից ստանում են նոր բովանդակություն ու ձև: Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի, հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմն իրականացնող հանձնաժողովի, կուսակցական ուսուցման մեթոդխորհրդի նիստերը երբեմն անցկացվում են աշխատավորական կոլեկտիվներում: Ընդ որում յուրաքանչյուր միջոցառում անցկացնելուց շուրջ մեկ ամիս առաջ շրջանային թերթում հայտարարություն է տրվում այդ մասին, իսկ մշակույթի տանը դրվում են հարցարկղեր:

Կուսշրջկոմը հիմնականում հրաժարվել է նախապես կազմած սցենարով խորհրդակցություններից ու հավաքներից: Դրա վկայությունը կթվոր-երեքհազարականների հավաքն է, ուսուցիչների օգոստոսյան խորհրդակցությունը, «Կոոպերատորի Օրը» և այլն, որտեղ հնարավորություն է ընձեռվում ասելիք ունեցող յուրաքանչյուր մասնակցի՝ դրսևորելու իր վերաբերմունքը, արտահայտելու իր կարծիքը քննարկվող խնդրի նկատմամբ: Այսինքն՝ ապահովվում է բոլորի ակտիվ մասնակցությունը հարցերի և՛ քննարկմանը և՛ լուծմանը: Ընդ որում նման միջոցառումների զգալի մասը ևս տեղափոխել ենք աշխատանքային կոլեկտիվներ: Այսպես, «Ռեֆորմը գործողության մեջ» կոնֆերանսը, որին մասնակցեցին քաղաքի և գյուղական դպրոցների մանկավարժական կոլեկտիվների բոլոր անդամները, անցկացվեց Կուրթանի միջնակարգ դպրոցում, կապալային եղանակով աշխատողների համաշրջանային հավաքը՝ Ագարակի պետտնտեսությունում և այլն:

Աշխատանքի նման ոճի դեպքում նպաստավոր պայմաններ են ստեղծվում մարդկային գործոնի ակտիվության բարձրացման, առաջադրված սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում աշխատավորների ակտիվ մասնակցության ապահովման համար: Մարդկային գործոնի ակտիվացմանն են ծառայում նաև կանանց և վետերանների շրջանային խորհուրդները, սթափության համար պայքարի ընկերությունը: Նրանց գործունեությունն ինքնին բխում է հրապարակայնության պահանջներից: Աշխատանքային կոլեկտիվներում և ըստ բնակության վայրի ստեղծվել ու գործում է 76 կինխորհուրդ: Նրանք զբաղվում են կանանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման, մայրերի աշխատանքային ռեժիմի կարգավորման, մանկության պաշտպանության ծառայության ամրապնդման հարցերով, ստուգայցեր կազմակերպում դպրոցներում, մսուր-մանկապարտեզներում: Շրջանային կինխորհրդի նախաձեռնությամբ ուսումնասիրվել են գյուղերում բնակվող աշխատանքի և պատերազմի վետերան կանանց կենցաղային պայմանները և նրանց ցույց է տրվել համապատասխան օգնություն: «Մեր շրջանի շնորհալի կանայք» նշանաբանով խորհրդի ջանքերով կազմակերպվել է միջոցառումների շարքը, շրջանային մշակույթի տանը ստեղծվել է «Հետաքրքիր հանդիպումների ակումբ» կանանց համար:

Հասարակական և տնտեսական կյանքի բոլոր ոլորտներում դեմոկրատիայի ու հրապարակայնության խորացումն ու ընդլայնումը, աշխատավորական կոլեկտիվների ինքնակառավարումը, մարդկային գործոնի ակտիվության բարձրացումը դառնում են շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման երաշխիք: Մարդիկ գործի նկատմամբ տիրոջ զգացում ու մոտեցում են դրսևորում և, դրանով իսկ, իրենց ներդրումն անում շրջանի հաջողությունների մեջ: Անցած տարի արդյունաբերական ձեռնարկությունները գերակատարեցին արտադրանքի թողարկման և իրացման առաջադրանքները, նախատեսված պլանի և նախորդ տարվա համեմատությամբ ապահովեցին արտադրանքի ծավալի և աշխատանքի արտադրողականության զգալի աճ: Կոլեկտիվ ու պետական տնտեսությունները պլանից դուրս արտադրեցին և պետությանը վաճառեցին մեծ քանակությամբ բուսաբուծական ու անասնապահական մթերքներ, տարին փակեցին 2 մլն 708 հազար ռուբլի օգուտով: Արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողները լուրջ ձեռքբերումներ ունեն նաև ընթացիկ տարում: Առաջին կիսամյակում թողարկվել է 2 մլն 174 հազար ռուբլու արտապլանային արդյունաբերական արտադրանք: Ընդ որում բոլոր ձեռնարկությունները կատարել են պայմանագրային պարտավորությունները: Գյուղատնտեսության աշխատողները գերակատարել են պետությանը միս, կաթ և ձու վաճառելու առաջադրանքները:

Դեմոկրատիայի և հրապարակայնության պայմաններում են լուծվում շրջանի սոցիալական զարգացման շատ պրոբլեմներ և խնդիրներ: Ամենակարևորը, թերևս,

Հասարակական երաշխիքն այն մթնոլորտն է, միջավայրը, որի պայմաններում դրսևորվում է յուրաքանչյուր քաղաքացու, կոլեկտիվի, գյուղի կամ շրջանի վերակառուցման իրական վիճակը: Այս առումով հարկ է նշել, որ մեր գործերի վրա խթանող կամ արգելակող ազդեցություն է ունենում շրջանային կազմակերպությունների, նրանց առանձին ղեկավարների, ինչպես նաև հանրապետության մի շարք մինիստրությունների և գերատեսչությունների, նրանց ենթակայության կազմակերպությունների ու առանձին աշխատողների գործունեությունը: Այլ խոսքով, որպեսզի վերակառուցման շղթան հստակ գործի, պետք է շարժման մեջ դրվեն նրա բոլոր օղակները:

Վերջերս մեզ մոտ անցկացվեց «Վերակառուցմանը՝ հասարակական երաշխիք» միջոցառումը, որին մասնակցելու համար հրավիրել էինք նաև հանրապետության 13 մինիստրությունների ներկայացուցիչներին՝ մինիստրների տեղակալների մակարդակով: Նպատակն էր՝ կազմակերպել նրանց հանդիպումը աշխատավորության հետ և հրապարակայնության ու դեմոկրատիայի պայմաններում քննարկել մարդկանց հուզող հարցերը, ստանալ նրանց օգնությունն ու աջակցությունը՝ շրջանի առջև ծառացած տնտեսական ու սոցիալական բնույթի մի շարք խնդիրներ լուծելու համար: Ցավոք, առանձին գերատեսչություններ, օրինակ, կապի մինիստրությունը, ինչպես հարկն է չարձագանքեցին մեզ:

Շրջանում սովորույթ է դարձել դեմոկրատիայի և հրապարակայնության պայմաններում, առանց նախապես մշակված սցենարի, աշխատավորների հետ քննարկել սոցիալ-տնտեսական և հասարակական կյանքի ոլորտներին վերաբերող հարցեր և նոր միայն ընդունել որոշումներ կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններում: Ընդ որում ընդունված բոլոր որոշումները հրապարակվում են շրջանային «Փարոս» թերթում: Արդեն մեկ տարի է շրջանի ղեկավարությունը կուրս է վերցրել, որպեսզի կարևոր որոշումները ծնունդ առնեն աշխատավորության հետ դեմոկրատական արդյունավետ երկխոսության հիման վրա, հրապարակայնության պայմաններում:

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները ձգտում են զարգացնել հրապարակայնությունն ու դեմոկրատիան կուսակցական ողջ աշխատանքում, դրանք ծառայեցնել շրջանի առջև ծառացած խնդիրների լուծմանը:



# ԱՎԵԼԻ ՇԱՏ ՁԵՌՆԵՐԵՑՈՒԹՅՈՒՆ

Տ. ԲԱԴԱԼՅԱՆ

ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ՄՈՒՏՔԻՆ փակցված մարմարյա փոքրիկ հուշատախտակը վկայում է, որ դարասկզբին բվնվորների առջև այստեղ ելույթ է ունեցել անվեհեր լենինյան Ստ. Շահումյանը: Այդ փաստն էլ հենց հետագայում առիթ է դարձել, որ Երևանի կաշվի արտադրական միավորումը կոչվի մեծ հեղափոխականի անունով: Պատմական այդ հուզիչ դրվագի քարեղեն արձագանքը լռելյայն, ասես, մեզ է հաղորդում դարասկզբի փոթորկալից իրադարձությունների ոգին, հայ կաշեգործների հեղափոխական տրամադրվածությունը:

Իսկ շարունակվու՞մ են, արդյոք, ավանդույթները: Չէ՞ որ բեկումնային մեր ժամանակները հերոսական այդ օրերին առնչվող ընդհանուր շատ եզրեր ունեն: Հետաքրքրվել սերունդների այդ կապով՝ ամենից առաջ նշանակում է մտահոգվել վերակառուցման բախտով, պարզել, թե այստեղ ինչպե՞ս է ընթանում նորացման պրոցեսը, միավորման կուսակցական կազմակերպությունը, կոմունիստները 1985 թ. ապրիլյան պլենումից և ՍՄԿԿ XXVII համագումարից հետո ընկած ժամանակահատվածում կարողացե՞լ են լինել նոր մտածողության և գործելակերպի առաջամարտիկներ:

Հրատապ այդ հարցադրումներին պատասխանելու և շրջադարձային երեք տարիների ընթացքում արվածը ի մի բերելու ակնկալությամբ էին ձեռնարկության կոմունիստները ներկայացել իրենց հաշվետու-ընտրական ժողովին: Թեև կուսակցական խմբերում և արտադրամասային կազմակերպություններում կայացած օգոստոսյան հաշվետու-ընտրական ժողովներում ընդհանուր գծերով արդեն տրվել էին այդ հարցերի պատասխանները, բայց անհրաժեշտ էր արվածը տեսնել ամբողջության մեջ, բացահայտել, թե յուրաքանչյուր կոմունիստ կոնկրետ ի՞նչ է արել վերակառուցման անշրջելիության երաշխիքներ ստեղծելու, արտադրության ինտենսիվացման և նոր աշխատատեղանակների արմատավորման համար:

Զեկուցողը՝ միավորման կուսբյուրոյի քարտուղար Ի. Ասատրյանը, քննադատաբար գնահատելով ձեռք բերվածը, կոնկրետ օրինակներով և փաստերով իրար էր հակադրում դրականն ու մերժելին, վերլուծում թերացումների պատճառները, մատնանշում այն խոչընդոտները, որոնք խանգարում են վերակառուցման խորացմանը:

Առաջնորդվելով կուսակցության ներկա պահանջներով, ձեռնարկությունում ծրագրված աշխատանք է տարվում արտադրության վերակառուցման ու վերազինման, գիտատեխնիկական նվաճումների ու նորագույն մեքենասարքավորումների արմատավորման, տեխնոլոգիական գործընթացների կատարելագործման և մարդկանց աշխատապայմանների բարելավման նպատակով: Եվ դա բնական է, չէ՞ որ միավորման կոլեկտիվը տարեսկզբից աշխատում է լրիվ տնտհաշվարկի, ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման պայմաններում:

Հենց սկզբից նշենք, որ դժվարին ու բարդ այդ խնդիրները ձեռնարկությունում դյուրությամբ չեն լուծվում: Էկոնոմիկայի արմատական ռեֆորմը միավորումում նախապարհ է հարթում արտադրական հիմնական ֆոնդերի նորացման ֆոնի վրա:

---

*ԲԱԴԱԼՅԱՆ ՏԻԳՐԱՆ ԱՎԵՏԻՔԻ— «Կուսակցական խոսք» հանդեսի աշխատակից:*

Վերջին մեկ տարում վերակառուցումից և վերազինումից հետո գործարկվել են № 2 արտադրական մասնաշենքը, նոր պոմպակայանը, ջրերի մաքրման կայանի երկրորդ հերթը, ջերմատնտեսության չորրորդ կաթսայատունը: Ընթացքի մեջ է № 1 արտադրական մասնաշենքի և նոր էլեկտրաարտադրամասի շինարարությունը: Տարեվերջին շահագործման կհանձնվի 840 քմ. մակերեսով քիմիական նյութերի պահեստային տնտեսությունը, որը կնպաստի քիմիկատների պահպանմանը և խնայողաբար օգտագործմանը: Շինմոնտաժային աշխատանքների իրականացմանը զուգահեռ ձեռնարկության արտադրամասերում ու տեղամասերում տեղադրվում են հայրենական և արտասահմանյան նորագույն մեքենասարքավորումներ ու հոսքային գծեր, ներդրվում ժամանակակից տեխնոլոգիաներ, որոնց գործարկումն ու արմատավորումը հնարավորություն կընձեռեն բոլոր հեղուկային պրոցեսները կարգավորել պերֆոքարտերի օգնությամբ, առանց բանվորական ուժի միջամտության:

Լարված ու դժվարին պայմաններում կաշեգործների կոլեկտիվը կուսկազմակերպության գլխավորությամբ պատվով է լուծում իր առջև ծառացած խնդիրները: Ընթացիկ տարվա ութ ամիսների արդյունքներով ձեռնարկությունում կատարվել են բոլոր հիմնական տեխնիկատնտեսական ցուցանիշների պլանները ու պայմանագրային պարտավորությունները: Նախատեսվածից ավելի թողարկվել է 200 հազար ռուբլու արտադրանք: Այս ձեռքբերումների համար միավորման կոլեկտիվը 1988 թ. առաջին կիսամյակի արդյունքներով մինիստրության համակարգի ձեռնարկությունների միջև ծավալված սոցմրցությունում գրավել է երկրորդ պատվավոր տեղը:

Հաճելի է գիտակցել, որ աշխատանքային հարուստ ավանդույթներ ունեցող կաշեգործների կոլեկտիվը բռնել է վերելքի ուղին, բայց և այնպես, երբ արվածը գնահատում ենք վերակառուցման չափանիշներով, ակնհայտ է դառնում, որ ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի գործարար ոգին դեռևս դանդաղ է ներթափանցում կուսակցական ներքին օղակներ և արտադրական ստորաբաժանումներ: Ամենից առաջ դա վերաբերում է բարեհոգության այն անխռով մթնոլորտին, որի պայմաններում ընթանում էր միավորման կոմունիստների հաշվետու-ընտրական ժողովը:

Թեև անարդարացի կլինի զեկուցողին կշտամբել համարձակության պակասի մեջ, սակայն, ինչպես դիպուկ նկատեց ժողովին ներկա գտնվող ՀԿԿ Կենտկոմի թեթև արդյունաբերության և ժողովրդական լայն սպառման ապրանքների բաժնի վարիչ Ա. Պյատկովան, բացակայում էր աշխատանքի մարդու «կրակոտ խոսքը»: Գուցեև զեկուցման այդ չափավոր երանգն էր պատճառը, որ բավարար երաշխիքներ չստեղծվեցին, որպեսզի ժողովն ընթանա կարծիքների բախման շիկացած մթնոլորտում: Ի դեպ, ելույթ ունեցողները ևս անհրաժեշտ եռանդ չդրսևորեցին լճացման տարիների կաղապարներից ու շաբլոնից զերծ մնալու համար: Այդ ոճի մոտեցումներով պետք է բացատրել, որ հանպատրաստից, կրքոտ խոսքով հանդես գալու փոխարեն նրանք գերադասում էին ելույթ ունենալ նախապես գրված և հղկված տեքստերով:

Բայց չէ՞ որ բացախոսության և հրապարակայնության մեր ժամանակներում ամենից առաջ անհրաժեշտ է համարձակություն, նախաձեռնողականություն ու ձեռներեցություն: Միայն այդ ճանապարհով մեզ կհաջողվի հաղթահարել ստերեոտիպերը, բոլոր հին ու նոր պրոբլեմները: Իսկ դրանք, ինչպես ասվեց հաշվետու ժողովում, քիչ չեն: Կաշեգործների համար ամենակենսականը թերևս թողարկվող արտադրանքի որակի բարելավումն է, որը տնտեսավարման նոր պայմաններում աշխատող ձեռնարկության համար պարզապես անհրաժեշտություն է: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, այդ խնդիրը պետք է դառնա «յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու, բոլոր նրանց գործը, ովքեր հարգում են իրենց աշխատանքը, ովքեր անտարբեր չեն ձեռնարկության, ճյուղի պատվի, մեր հայրենիքի պատվի նկատմամբ»:

Հաշվետու ժամանակաշրջանում ձեռնարկության կուսակցական ժողովներում և կուսբյուրոյի նիստերում տասնչորս անգամ քննարկվել է արտադրանքի որակի հարցը, լսվել կարևորագույն այդ խնդրով զբաղվող ծառայությունների ղեկավարների հաշվետվությունները: Թողարկվող արտադրանքի որակական ցուցանիշների հետագա բարելավման նպատակով այստեղ պարբերաբար անցկացնում են այսպես կոչված «որակի օրեր», որի ընթացքում պատվիրատու կազմակերպությունների ղեկավարների և միավորման մասնագետների միջև տեղի են ունենում գործնական խոսակցություններ, կազմակերպվում համատեղ խորհրդակցություններ:

Այդ գործարար կապերի մասին է վկայում և այն, որ հաշվետու ժողովին հրավիրված էր նաև ձեռնարկության հիմնական սպառողներից մեկի՝ «Մասիս» արտա-



դրամիավորման գլխավոր դիրեկտոր Ռ. Հարությունյանը: Չնայած նա ելույթ չունեցավ, բայց մեզ հետ ունեցած զրույցի ժամանակ նշեց, որ որակի բարելավման հարցում կաշեգործները դեռևս շատ անելիքներ ունեն. «Գաղտնիք չէ,— ասաց նա,— որ կոշիկի որակը մեծապես պայմանավորված է նաև այն հումքի որակով, որից այն պատրաստվում է: Կուզենայի հատկապես նշել երեխաների համար արտադրվող կոշիկի ցածր որակը: Խոսքը ոչ միայն կաշվի կոշտությանն է վերաբերում, այլև գույնին, որը շատ հաճախ լինում է խամրած, սեզոնին ոչ համապատասխան: Գունային բազմազանության պակասը երբեմն խանգարում է կոշկեղենի տեսականու արագ ու ճկուն փոփոխմանը»:

Այս կշտամբանքը լսելիս ինչպե՞ս չմտաբերել մեր հնադարյան մագաղաթագործ վարպետներին, որոնք կարողացել էին կաշվի մշակությունը հասցնել կատարելության: Իսկ ինչպե՞ս պատահեց, որ գիտատեխնիկական առաջընթացի մեր ժամանակներում նույնիսկ կոշիկի համար չենք կարողանում որակյալ կաշի արտադրել... Այդ հարցը իրենց պետք է տան ձեռնարկության բոլոր ստորաբաժանումների կոլեկտիվները և, բնականաբար, նաև կոմունիստները, որոնք որակի պրոբլեմի լուծման գործում դեռևս իրենց դիրքերում չեն: Արդյոք ժամանակը չէ՞, որպեսզի արտադրամասային կուսկազմակերպություններն իրենց վճռական խոսքն ասեն: Ինչու՞ տնտհաշվարկով աշխատող բրիգադների փորձը չտարածել մյուսների վրա, չէ՞ որ առավելությունն ակնհայտ է, աչքի առաջ: Կարելի է հիշատակել, ասենք, հումքի նախնական վերամշակման բազան, որի ղեկավարությունը և կուսկազմակերպությունը թերանում են հումքի պահպանման գործում: Բազայի աշխատանքի մասին սկզբունքային և գործնական խոսակցություն ծավալվեց այս տարվա ապրիլին, երբ կուսբյուրոն քննարկում էր նրա դիրեկտոր Ռ. Խաչատրյանի հաշվետվությունը: Մատնանշվեցին բազմաթիվ թերություններ, այդ թվում նաև հումքի նախնական մշակման պրոցեսում թույլ տրվող որակական կորուստները: Այդ խնդրին պետք է մոտենալ ամենայն լրջությամբ, քանի որ թողարկվող արտադրանքի ինքնարժեքի 80—85 տոկոսը կազմում է հումքը: Անդրադառնալով այդ խնդրին՝ միավորման գլխավոր դիրեկտոր Մ. Պողոսյանը նշեց, որ թեև նախորդ երկու տարիների համեմատությամբ հետ վերադարձվող կաշվի քանակը վերջին ութ ամսում նկատելիորեն նվազել է, բայց ձեռք բերվածը ամենևին էլ ինքնահանգստացման հիմքեր չի տալիս: Ավելին, որակի հարցը արտադրամասային կազմակերպություններին և կուսխմբերին ինչպես հարկն է չի մտահոգում, իսկ տնտեսական ղեկավարներն ու արտադրամասերի պետերը շատ հաճախ պասիվ և սպասողական դիրք են բռնում: Եվ մի՞թե դրա արտահայտությունը չէ պահեստում կուտակված և պահանջարկ չվայելող վեց մլն դեցիմետր կոշտ կաշին, որի իրացումը այդպես էլ կձախողվեր, եթե կոոպերացիայի մասին օրենքը նախադրյալներ չստեղծեր միավորման ներսում կոոպերատիվ կազմակերպելու համար:

Ավելացնենք նաև, որ գործերի վիճակի բարելավմանը չի նպաստել և այն, որ ընդունված շատ որոշումներ մնացել են թղթի վրա:

Բերենք անտարբերության և անհետևողականության մեկ օրինակ ևս. հաշվետու ժամանակաշրջանում կուսբյուրոյին կից ստեղծվել են ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հինգ տարբեր հանձնաժողովներ, որոնց անմիջական պարտականությունն էր հետևելու թողարկվող արտադրանքի որակին, հումքի, օժանդակ նյութերի, վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողական օգտագործմանը, նոր տեխնիկայի ներդրմանը, աշխատանքային և տեխնոլոգիական կարգապահության ամրապնդմանը: Իսկ կարողացե՞լ են, արդյոք, հանձնաժողովները կատարել իրենց վստահված այդ պատասխանատու գործը: Թերևս՝ ոչ, այլապես ինչո՞վ բացատրել, որ սոցիալիստական սեփականությանը ձեռք մեկնելու պատճառով ՍՄԿԿ շարքերից վտարվել են № 3 արտադրության նախկին պետ Ռ. Հարությունյանը և փափուկ կաշիների պահեստի պահեստապետ Ա. Հարությունյանը, իսկ հավելագրումներ կատարելու համար տրանսպորտային տնտեսությունում նույն բախտին է արժանացել նաև գլխավոր դիրեկտորի տեղակալ Յու. Իսրայելյանը:

Հնարավո՞ր էին, արդյոք, կանխել կոլեկտիվին պատիվ չբերող այս տհաճ փաստերը: Անշուշտ: Եվ երիցս իրավացի էր Ի. Ասատրյանը, երբ շեշտեց, թե այս երևույթները իրենց մոտ տեղ չէին գտնի, եթե կուսբյուրոյի, հասարակական կազմակերպությունների, բաժինների, արտադրամասերի աշխատանքների վերահսկման ընթացքում թույլ չտրվեին աղաղակող սխալներ ու վրիպումներ: Դրանցից մեկն էլ այն է, որ կուսբյուրոն հաշվետու ժամանակաշրջանում ընդամենը երեք անգամ է անդրա-

դարձել ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովների կողմից նախապատրաստված հարցերի քննարկմանը:

Այժմ, երբ կուսակցությունն ու ողջ ժողովուրդը համարձակորեն ձեռնամուխ են եղել անցյալի շերտանստվածքների և ձևախեղումների վերացմանը, սոցիալիստական օրինականության խստիվ պահպանումը դառնում է օրվա հրամայական խնդիր: Այս առումով մեծ անելիքներ ունի աշխատավորական կոլեկտիվի նորաստեղծ խորհուրդը, որը կոչված է իր ուշադրությունը կենտրոնացնելու ոչ միայն ընդհանուր գործում յուրաքանչյուրի ավանդի մեծացմանը և վերջնական բարձր արդյունքների ապահովմանը, այլև իրականացնելու մի շարք սոցիալական և դաստիարակչական ֆունկցիաներ, մասնակցելու սոցիալիստական մրցության պայմանների հաստատմանը, որոշումներ ընդունելու նյութական խրախուսման ֆոնդերի օգտագործման մասին և այլն: Խոսելով այս խնդիրների շուրջ՝ խորհրդի նախագահ, միավորման արտադրապլանային բաժնի պետ, կուսբյուրոյի անդամ Ա. Չախմախչյանը նշեց, որ առայժմ չի հաջողվում լիարժեքորեն օգտագործել իրենց ընձեռված լիազորություններն ու հնարավորությունները, թույլ է կապը մարդկանց հետ:

— Մեզ վստահված պարտականությունների շրջանակն այնքան ընդգրկուն է,— թղթակցի հետ զրույցի ժամանակ ասաց Ա. Չախմախչյանը,— որ երբեմն այնպես է թվում, թե կրկնորդում ենք այս կամ այն հասարակական կազմակերպություններին կամ ադմինիստրացիային: Հավանաբար դրանով պետք է բացատրել, որ բոլորը հանդես են գալիս պահանջողի դերում, մոռանալով, որ «ամենազոր» աշխատավորական կոլեկտիվի խորհուրդը դեռ նոր միայն առաջին քայլերն է անում: Շատ հարցերում մենք դեռևս անպատրաստ ենք: Եվ տարօրինակն այն է, որ խորհուրդների անդամների կամ ղեկավարների իրազեկման, առաջավոր փորձի փոխանակման համար հանրապետությունում ոչինչ չի ձեռնարկվում: Էլ չեմ խոսում սեմինարների ու խորհրդակցությունների մասին, որն այժմ անչափ կարևոր է: Տնտեսավարման նոր պայմաններում, երբ վարչարարական-հրամայական եղանակներն իրենց տեղը աստիճանաբար զիջում են տնտեսագիտական մեթոդներին, մենք պարտավոր ենք աշխատավորներին հիմնավորված և գրագետ բացատրություններ տալ: Մինչդեռ իրականում մենք ենք օգնության կարիք զգում: Իսկ այդպես շարունակել չի կարելի: Մարդիկ պարզապես մեր նկատմամբ կկորցնեն հավատը:

Սրտացավորեն ասված այս խոսքերը խորհելու տեղիք են տալիս: Իսկ մտածելու, իրոք, շատ բան կա...

Այսօր կաշեգործներին հուզող կենսական խնդիրներից մեկը, ինչպես իրավացիորեն նշվեց ժողովում, մարդկանց աշխատապայմանների բարելավումն է: Թեև № 2 արտադրական մասնաշենքի վերակառուցումից ու վերազինումից հետո գործերի վիճակը մասնակիորեն բարելավվել է, բայց այդ աշխատանքներում դեռևս արմատական բեկում չի նկատվում: Դրանում համոզվելու համար բավական է գեթ մեկ անգամ շրջել միավորման արտադրամասերում ու տեղամասերում: Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության համակարգի մեջ մտնող այս ձեռնարկությունում աշխատանքներն ամենևին էլ թեթև չես համարի. մարդիկ երբեմն հարկադրված են աշխատել սանիտարական թույլատրելի նորմաները մի քանի անգամ գերազանցող մթնոլորտում, ջրի ու հեղձուցիչ գոլորշուց այդպես էլ չազատվող արտադրություններում: Բանվոր-ծառայողների աշխատապայմանները բարելավելու, կառուցվող նոր արտադրական մասնաշենքի շինարարությունը արագացնելու գործում զարմանալի անտարբերություն է ցուցաբերում «Երքիմշին» տրեստը:

Խոսելով աշխատավորներին հուզող սոցիալական պրոբլեմների մասին՝ միավորման արհկոմի նախագահ Գ. Մնացականյանը ինքնաքննադատաբար նշեց, որ շատերը թերանում են իրենց պարտականությունների կատարման մեջ, իսկ արտադրամասային որոշ կազմակերպություններ էլ պարզապես անգործության են մատնվել: Նա անաչառ խստությամբ արտահայտվեց նաև իրեն վստահված կուսակցական հանձնարարությունների կատարման առնչությամբ. «Մենք՝ բյուրոյի անդամներս, բավարար ակտիվություն չենք ցուցաբերում հարցերի քննարկման ժամանակ: Շատերս մոռացել ենք, թե ինչ հասարակական աշխատանք ենք կատարում և ինչ հանձնաժողովներ գլխավորում...»:

Հետաքրքիր է, իսկ ո՞վ պետք է արհկոմի նախագահին հիշեցնի իր պարտականությունների կատարման մասին: Այստեղ միանգամայն տեղին է վկայակոչել ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում արտահայտված այն միտքը, թե «Աշխատավորները մեզանից սպասում են ոչ թե պարզապես ճիշտ, ինքնաքննադատական խոսքեր, այդ առթիվ արվող հայտարարություններ, այլև ռեալ գործնական քայլեր և կոնկրետ շոշափելի բարեփոխումներ»:

Իրոք, որքան կարելի է հավաստիացումների հույսով բնակարանի սպասել, տարիներ շարունակ հանդուրժել մարդուն այնքան նվաստացնող հերթերը, բանվորական ճաշարանների ու բուֆետների ցածրորակ սնունդը, չնայած բազում խոստումներին՝ քաղաքային տրանսպորտի այդպես էլ ոչ մի կերպ չկարգավորվող աշխատանքը: Ցավալի և վրդովեցուցիչ է, որ այդ ասպարեզում արհմիութենական կոմիտեի կատարած գործնական քայլերը հաճախ դեմ են առնում գերատեսչական-բյուրոկրատական պատնեշներին և քաղաքային իշխանությունների քար լռությանը: Կրկին ունկնդրենք Գ. Մնացականյանին. «Այսօրվա դրությամբ բնակարանային հերթի երեք ցուցակներում ունենք 83 մարդ, ուր առաջին համարում գտնվողները դիմել են դեռևս 1968 թվականից: Ճիշտ է, վերջին երկուսուկես տարում 25 աշխատողներ բնակարաններ ստացան, բայց դա բավարար չէ: Մենք արդեն երկրորդ նամակն ենք ուղարկել քաղսովետ, որպեսզի տեղ հատկացնեն կոոպերատիվ շենք կառուցելու համար: Առաջին անգամ մերժում ստացանք, իսկ երկրորդի պատասխանը առայժմ... լռությունն է»:

Աշխատավորների հոգսերի ու կարիքների նկատմամբ չթուլացող հոգածություն ցուցաբերելու պահանջով էին տոգորված ձեռնարկության № 2 արտադրության բանվոր Ա. Տոնոյանի, գլխավոր մեխանիկի բաժնի տեխնոլոգ Է. Դարբինյանի, չափիչ-ստուգիչ սարքերի տեղամասի աշխատակից, ժողվերահսկողության խմբի նախագահ Հ. Ալավերդյանի, արտադրության պետ Ռ. Անտոնյանի և մյուսների ելույթները: «Աշունը արդեն վերջանում է, իսկ մենք այդպես էլ հնարավորություն չունեցանք գոնե մեկ անգամ առանց հերթի միրգ կամ բանջարեղեն գնել,— պետական առևտրի վատ կազմակերպման վերաբերյալ իր վրդովմունքը այդպես արտահայտեց Աշոտ Տոնոյանը:— Մենք չափազանց շատ ենք խոսում մարդկային գործոնի ակտիվացման և աշխատավորների բարեկեցության բարձրացման մասին, բայց, երբ բանը հասնում է գործին, դառնում ենք անօգնական: Մի՞թե միավորման տարածքում հնարավոր չէ պտուղ-բանջարեղենի վաճառքի մի կետ բացել կամ մարդկանց ամենօրյա կարիքները բավարարելու համար մեկ ուրիշ միջոց գտնել: Վերակառուցման ներկա փուլում միայն հավաստիացումներով մենք առաջ չենք կարող գնալ. խոսքը հարկավոր է ամրապնդել գործով»:

Հիրավի, տնտեսավարման նոր պայմաններում աշխատող կոլեկտիվի համար այդ պահանջը միանգամայն այլ իմաստ ունի: Չի կարելի դեմոկրատիա սովորել ձևականորեն կամ էլ մարդկանց ակտիվ դարձնել... հրամանով: Եթե այդ հարցադրումները գործնական լուծում չստանան, ապա ձեռնարկության ագիտատորներին ու պրոպագանդիստներին շատ մեծ դժվարությամբ կհաջողվի բանվոր-ծառայողների շրջանում տարվող գաղափարադաստիարակչական և մասսայական-քաղաքական աշխատանքները բարձրացնել այն մեծ ու կարևորագույն խնդիրների մակարդակին, որ այսօր առաջադրել է կուսակցությունը: Իսկ կարողանու՞մ են, արդյոք, միավորման տնտեսական ղեկավարները գտնվել այդ պահանջների բարձրության վրա, կատարել իրենց վստահված քաղաքական դաստիարակի ոչ դյուրին առաքելությունը:

Ինչպես նշվեց հաշվետու զեկուցման մեջ և կոմունիստների ելույթներում, դրական տեղաշարժերը վերջին շրջանում ակնհայտ են: Ամեն ուստարվա նախօրյակին կուսբյուրոյի նիստերում քննարկվում է գաղափարադաստիարակչական աշխատանքի վիճակը: Ուսուցման տարբեր ձևերում այստեղ ընդգրկված է 980 մարդ: Պրոպագանդիստի իրենց պարտականությունները բարեխղճորեն են կատարում կոմունիստներ Ռ. Մալխասյանը, Վ. Պետրոսյանը, Ա. Բալյանը, Մ. Պետրոսյանը, որոնք հնարավոր ամեն ինչ անում են ունկնդիրներին նորովի մտածելու և գործելու ոգով դաստիարակելու, մեզանում ընթացող հեղափոխական վերափոխումների իրականացման գործում նրանց անձնական ավանդը մեծացնելու համար: Ձեռնարկությունում լիահույս են, որ տնտեսագիտական համընդհանուր ուսուցումը կօգնի յուրաքանչյուրին առավել արդյունավետությամբ օգտագործելու տեխնիկան, բարելավելու թողարկվող արտադրանքի որակը և ավելի հետևողականորեն խորամուխ լինելու նոր տնտեսակարգի առավելությունների մեջ: Իսկ առաջին արդյունքները հուսադրող են. միավորումում արդեն ձեռնամուխ են եղել նոր արտադրատեսակների, մասնավորապես էլաստիկ կաշիների և նրբակաշվի հումքից վելյուրի թողարկմանը, որի նախաձեռնողների մեջ քիչ թիվ չեն կազմում տնտեսագիտական ուսուցման համակարգի 23 դպրոցներում ընդգրկված ունկնդիրները: Նրանք պակաս շահագրգռություն հանդես չեն բերում նաև արտադրության արդյունավետության բարձրացման, թողարկվող արտադրանքի

ինքնարժեքի իջեցման և ձեռքի աշխատանքի կրճատման գործում: Միայն ընթացիկ տարվա ութ ամսում ձեռնարկության ռացիոնալիզատորներն ու գյուտարարները արտադրությունում ներդրել են 38 առաջարկություն, որից ստացված տնտեսական օգուտը կազմում է 63 հազար ռուբլի:

Ասել, թե գաղափարախոսական աշխատանքում այստեղ թերություններ ու պրոբլեմներ չկան, նշանակում է մեղանչել իրականության դեմ: Քաղաքական-դաստիարակչական աշխատանքում տեղ գտած թերություններով ու վրիպումներով պետք է բացատրել նաև կոլեկտիվում տեխնոլոգիական և աշխատանքային կարգապահության խախտման ոչ եզակի դեպքերը: Ընթացիկ տարվա ութ ամսում աշխատանքային կարգապահությունը խախտելու համար պատժվել է 97, իսկ տեխնոլոգիական պրոցեսներում թույլ տված շեղումների համար՝ 73 մարդ:

Նորընտիր կուսբյուրոն դեռևս շատ անելիքներ ունի աշխատավորների գաղափարադաստիարակչական մակարդակի բարձրացման, այդ գործում արմատական բեկման հասնելու համար: Դա կարևորագույն քայլ կլինի վերակառուցման հետագա խորացման վերաբերյալ XIX կուսկոնֆերանսի մշակած հիմնադրույթների իրականացման ճանապարհին:

---

# ԱՆԿԵՂԾ ԽՈՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ

**Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**

ԱՆՄԻՋԱՊԵՍ ՎԵՐԱՊԱՀՈՒՄ ԱՆԵՆՔ. Բաղրամյանի շրջանի Հուշակերտ գյուղի կոլտնտեսության կուսակցական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը նշանակված օրը չկայացավ: Բոլոր ուժերը տրամադրվել էին միութենական ֆոնդի համար դեղձի բերքի հավաքմանն ու առաքմանը. աշխատանքը շարունակվեց վաղ առավոտից մինչև մթնշաղ: Ամենևին չնսեմացնելով ժողովի նշանակությունը՝ այստեղ, այնուամենայնիվ, որոշեցին այն հետաձգել մինչև մրգի բերքահավաքի ավարտը: Իսկ այդ ժամանակաշրջանում հատկապես տնտեսության ղեկավարների մոտ կուտակվել էին անչափ շատ պրոբլեմներ՝ թե՛ աշխատող ձեռքերի պակասը, թե՛ փոխադրումների հետ կապված դժվարությունները, թե՛ արտադրանքի իրացման առավել արդյունավետ ձևերի որոնումը: Բոլոր այս հարցերը անհրաժեշտ է օպերատիվ կերպով լուծել, այլապես իզուր կկորչի բերքի մեջ ներդրված աշխատանքը: Իսկ վնասն այստեղ և՛ նյութական է, և՛ բարոյական:

Կոլտնտեսության նախագահ, փորձված տնտեսվար Ս. Պետրոսյանը տագնապով էր նայում այգում կիտված դեղձերով լի արկղերին, որոնք անհրաժեշտ էր ուղարկել սպառողին: Տեսակավորումից հետո դրանք իրացվում են մի քանի ուղղություններով՝ ընդհանուր միութենական ֆոնդ, պահածոների գործարան, առևտրական ցանց: Եվ հանկարծ, բերքահավաքի ամենաթեժ պահին, առաջացավ բենզինի պրոբլեմը: Եվ եթե դրան ավելացնենք, որ բեռնատար մեքենաները արտադրանքը հանձնելու համար ժամերով կանգնած են մնում վերամշակող ձեռնարկությունների դարպասների մոտ, ապա լիովին հասկանալի կդառնա նախագահի մտահոգությունը:

Ինչ խոսք, այդ պրոբլեմները մշտական են: Եվ, մեզ թվում է, «պայքար բերքի համար» տրափարետ արտահայտությունը պատահականորեն չի ծագել. բանն այստեղ ոչ միայն և նույնիսկ ոչ այնքան եղանակային պայմաններն են, որքան այն, որ տարեցտարի տնտեսությունները (Հուշակերտի կոլտնտեսությունը այս իմաստով բացառություն չէ) ստիպված են լինում հաղթահարել բազմաթիվ խոչընդոտներ, սարբեր կարգի արգելքներ, որպեսզի պահպանեն աճեցրածը, այն հասցնեն սպառողին: Հսկայական ջանքեր են պահանջվում արգելակող գործոնները վերացնելու համար ինչպես բուն տնտեսությունում, այնպես էլ տարբեր կազմակերպությունների ու ձեռնարկությունների հետ ունեցած կապերում:

Առաջ անցնելով ասենք, որ կուսակցական հաշվետու-ընտրական ժողովում մեծ ուշադրություն նվիրվեց այդ հարցերին: Սակայն, նախ ծանոթանանք բուն տնտեսությանը, նրա նվաճումներին ու չլուծված խնդիրներին, որպեսզի ավելի լավ իմանանք, թե ինչով են ապրում, ինչ հոգսեր ունեն տեղի կոմունիստները:

Հուշակերտը խոշոր, առաջավոր կոլտնտեսություն է: Բարձր նվաճումների համար նա բազմիցս պարգևատրվել է համամիութենական, հանրապետական, ճյուղային ու շրջանային փոխանցիկ դրոշներով և պատվոգրերով: Անցյալում հետ մնացող տնտեսությունը այժմ դարձել է շահութաբեր. նրա համախառն եկամուտները հասնում են 1,2 միլիոն ռուբլու, իսկ տարեկան օգուտը կազմում է կես միլիոն ռուբլի: Կոլտնտեսությունում գերազանց ցուցանիշների են հասնում ինչպես պտուղների ու խաղողի աճեցման, այնպես էլ կաթի ու մսի արտադրության գործում: 1986 թվականից տնտեսությունն անցել է տնտհաշվարկի, զգալիորեն բարձրացել է աշխատողների նյութական շահագրգռությունը, նրանց ամսական միջին աշխատավարձը հասել է 350 ռուբլու: Հաջողությամբ են իրականացվում նաև սոցիալական զարգացման խնդիրները:

Այս ամենը, անկասկած, վկայում է, որ հուշակերտցիները ի վիճակի են լուծելու բարդ խնդիրներ: Սակայն վերջին երկու տարում կոլտնտեսության գործունեության մի շարք ուղղություններում երևան են եկել էական թերություններ, ակնհայտորեն տեղապտույտ է կատարում արտադրության ինտենսիվացման աշխատանքը: Ավելին, գյուղատնտեսական արտադրանքի մի քանի տեսակների արտադրության այսօրվա ցուցանիշները զգալիորեն զիջում են անցյալում ձեռք բերած մակարդակը: Այսպես, եթե դեռ 1986 թ. յուրաքանչյուր հեկտարից այստեղ հավաքում էին 43 ցենտներ հացահատիկ, ապա անցյալ ու ընթացիկ տարում՝ համապատասխանաբար 27,6 և 18,8 ցենտներ: Դրությունն ավելի լավ չէ նաև բոստանային կուլտուրաների բնագավառում. նախատեսված 3100 տոննայի փոխարեն ստացել են միայն 41 տոննա բերք:

Կամ մեկ ուրիշ օրինակ: Եթե նույն 1986 թվականին մեկ հեկտարից արտադրվել էր 733,4 ցենտներ պոմիդոր, ապա անցյալ ու ընթացիկ տարում՝ համապատասխանաբար 526 և 287,5 ցենտներ: Ի դեպ, տնտեսությունը այս կուլտուրայի պլանային առաջադրանքները կատարում էր ոչ թե բերքատվությունը բարձրացնելու հաշվին, այլ հողատարածությունն ընդլայնելու միջոցով:

Նման մոտեցումը, հասկանալի է, հեռու է ինտենսիվ հողագործության սկզբունքներից: Բերված թվերն առանձնապես մտահոգող են այն պատճառով, որ կոլտնտեսությունը նախկինում նվաճած բնագծերը զիջել է հենց այն ժամանակամիջոցում, երբ, թվում էր, թե ամբողջ ուժով պետք է սկսեր գործել արագացման մեխանիզմը, որը հնարավորություն կընձեռեր արմատապես բարձրացնել արտադրության արդյունավետությունը: Մինչդեռ այստեղ իրենց զգալ են տալիս ստերեոտիպերը, տնտեսավարման հնացած մեթոդները, երբ ամբողջ ուշադրությունը կենտրոնացվում է որոշակի, այսպես ասած, առաջնային ուղղությունների վրա և միանգամայն աչքաթող են արվում մյուսները: Դրա հետևանքով որոշակի անհամամասնություններ են առաջանում այս կամ այն ճյուղի զարգացման մեջ, որոնց հաղթահարումը հետագայում մեծ ջանքեր կպահանջեն: Իսկ չէ՞ որ այդ միտումներն այստեղ երևան են եկել ոչ միանգամից. խոսքը երկու տարվա տնտեսական գործունեության մասին է: Եվ կոլտնտեսության կուսակցական կազմակերպությունը պարտավոր էր ոչ թե պարզապես քննարկել, վերլուծել պոմիդորի, ինչպես նաև հացահատիկային ու բոստանային կուլտուրաների աճեցման գործում տիրող անբավարար վիճակի պատճառները, այլև մոբիլիզացնել աշխատողներին՝ արագ կերպով լուծելու այդ պրոբլեմը:

Մի խոսքով, հաշվետու ժամանակաշրջանում կուտակվել էին բավական շատ սխալներ, թերություններ, բացթողումներ: Դրանք լրջորեն հուզում էին Հուշակերտի կոմունիստներին: Եվ հենց դժվարությունների ու թերությունների մասին էին մտադիր խոսել կոլտնտեսության կուսակցական կազմակերպության շատ անդամներ, քանի որ, ինչպես իրենք էին խոստովանում, հաջողություններն ու նվաճումներն այստեղ հայտնի են յուրաքանչյուրին և՛ դրանք նրանցից ոչ ոք չի խլի, իսկ բացահայտել ծագած պրոբլեմների պատճառները, հաղթահարել անցանկալի միտումները՝ այսօր չափազանց կարևոր խնդիր է:

---

*ՄԵԼԻՔՅԱՆ ԱՇՈՏ ԱՐՏԱՇԵՍԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի պատասխանատու քարտուղարի տեղակալ:*

Հաշվետու-ընտրական ժողովում գործնականորեն քննարկվում էին կոլտնտեսության և ամբողջ գյուղի կենսագործունեության բոլոր խնդիրները: Բայց դրանց մեջ հատկապես պետք է առանձնացնել առավել հրատապ հարցերի երկու խումբ, որոնք գտնվում էին կոմունիստների ուշադրության կենտրոնում: Դրանք նախ և առաջ տնտեսական հարցերն են՝ ինչպես ռեալ կերպով հասնել արտադրության արդյունավետության արմատական բարձրացման, հողի յուրաքանչյուր հեկտարից առավելագույն հատույցի, և ապա՝ ներկուսակցական կյանքի հարցերը, որոնք անմիջականորեն վերբերում են կուսկազմակերպության բյուրոյի ու նրա քարտուղարի գործունեությանը: Իհարկե, նման մոտեցումը բնական է հաշվետու-ընտրական ժողովի համար: Եվ, այդուհանդերձ, սրտացավ, գործարար խոսակցության համար այստեղ կային նաև ուրիշ, ոչ պակաս լուրջ պատճառներ՝ անցած ժամանակաշրջանում երևան եկած էական թերությունները կուսակցական աշխատանքում, պատշաճ կոլեկտիվության բացակայությունը որոշումների մշակման գործում, փոխադարձ պահանջկոտության ու սկզբունքայնության պակասը: Ըստ երևույթին, այդ ամենն էլ կանխորոշեց ժողովի ընթացքը. կոմունիստները տրամադրված էին ուղղակի ու անկեղծ խոսակցություն սկսել ցավոտ հարցերի մասին:

... Կուսկազմակերպության քարտուղար Բ. Փոթրաշյանի հաշվետու զեկուցումը անչափ կարճ էր: Արդարացի լինելու համար ասենք, որ նրանում գերակշռում էր քննադատական մոտեցումը: Բայց, ցավոք, քարտուղարը բավարարվել էր լոկ եղած թերությունները արձանագրելով, վրիպումներն ու բացթողումները նշելով. ակնհայտորեն պակասում էր խոր ու համակողմանի վերլուծությունը, որը հնարավորություն կտար բացահայտելու այդ թերությունների պատճառները: Զեկուցողը չափազանց քիչ ուշադրություն նվիրեց այն հարցերին, որոնք, ինչպես պարզվեց մտքերի փոխանակության պրոցեսում, առանձնապես հետաքրքրում էին ժողովականներին, այն է՝ դեմոկրատական սկզբունքների հաստատումը ինչպես կուսկազմակերպության գործունեության մեջ, այնպես էլ տնտեսական պրակտիկայում, կոլեկտիվում բարոյահոգեբանական մթնոլորտի առողջացման անհրաժեշտությունը, անհատական աշխատանքը կոմունիստների հետ և այլն:

Մինչդեռ, ժողովի հետագա ընթացքին իր ելույթով տոն տվեց կոլտնտեսության տնտեսագետ Ե. Առաքելյանը:

— Ձեզանից շատերը,— դիմեց նա ժողովականներին,— մոտենում էին ու հարցնում ինձ, թե կկարողանա՞մ արդյոք հանդես գալ Բ. Փոթրաշյանի դեմ, կհամարձակվե՞մ արդյոք բացահայտ ասել ամեն ինչի մասին: Այո՛, ես կասեմ ամեն ինչ:

Նա սուր ու սկզբունքային քննադատության ենթարկեց կուսակցական բյուրոյի ու անձամբ նրա քարտուղարի աշխատանքի հնացած ոճը, խոսեց նրանց գործունեության մեջ դեմոկրատիայի սկզբունքների խախտումների մասին, այն մասին, որ Բ. Փոթրաշյանը փաստորեն դուրս էր մնացել կուսկազմակերպության քննադատությունից ու վերահսկողությունից: Այդ ամենը, այնուհետև նշեց ելույթ ունեցողը, բացասաբար էին անդրադարձել ընդհանուր բարոյահոգեբանական մթնոլորտի վրա, մարդկանց փոխհարաբերություններում սկսել էին նկատվել այնպիսի երևույթներ, ինչպես շողոքորթությունը, անձնական նվիրվածությունը, խմբակայնությունը: Բ. Փոթրաշյանի հասցեին լուրջ դիտողություն լսվեց նաև ՍՄԿԿ շարքերն ընդունելության հարցերում նրա ոչ օբյեկտիվության և կանխակալ կարծիքի կապակցությամբ: Ելնելով ամբողջ ասվածից, Ե. Առաքելյանն առաջարկեց կուսբյուրոյի ու նրա քարտուղարի գործունեությունը հաշվետու ժամանակաշրջանում գնահատել անբավարար:

Նշենք, որ ավելի ուշ այդ գնահատականին միացան նաև մի քանի այլ կոմունիստներ, բայց և այնպես ժողովի մասնակիցներն ընդհանուր առմամբ բյուրոյի աշխատանքը համարեցին բավարար, միաժամանակ իրենց ուշադրությունը կենտրոնացրին թերությունների քննադատության վրա: Մի բնորոշ երևույթ. ժողովի ընթացքում քանիցս նշվեց, որ կուսակցական կազմակերպությունում առաջին անգամ է ծավալվում այսպիսի շիտակ, սկզբունքային խոսակցություն: Եվ կոմունիստները մի կողմից ափսոսանքով էին նշում, որ այստեղ պրոբլեմների, սխալների ու թերությունների հրապարակային քննարկումը դեռևս կյանքի նորմ չի դարձել, իսկ մյուս կողմից հաստատում էին այն իրողությունը, որ քննադատության և ինքնաքննադատության, փոխադարձ պահանջկոտության մթնոլորտը աստիճանաբար ընկալվում է որպես բնական վիճակ: Անշուշտ, դրան զգալի չափով նպաստել է բացախոսության ու սկզբունքայնության այն մթնոլորտը, որը տիրում էր XIX համամիութենա-



կան կուսակցական կոնֆերանսում: Դա, անկասկած, իր կնիքը թողեց ներկայիս հաշվետու-ընտրական կամպանիայի ողջ ընթացքի վրա:

Սակայն վերադառնանք Հուշակերտցի կոմունիստների ժողովին: Քննարկելով տնտեսական խնդիրների լուծման հետ կապված հարցերը, ելույթ ունեցողները ամենահրատապ խնդիրը համարեցին արտադրության արդյունավետությունը բարձրացնելու անհրաժեշտությունը: Դա առանձնապես կարևորվում է աշխատանքի նոր պայմաններում, երբ կոլտնտեսության բոլոր ստորաբաժանումներն անցել են տնտհաշվարկի: Իսկ այստեղ, իհարկե, զգալիորեն աճում է այնպիսի գործոնների նշանակությունը, ինչպիսիք են աշխատանքի ճիշտ կազմակերպումը, հողային ու ջրային ռեսուրսների, դրամական միջոցների, գյուղատնտեսական տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը: Այսպես, խոսելով տնտհաշվարկային հարաբերությունների մասին, բրիգադավար Ա. Ավետիսյանը նշեց, որ, չնայած իրենք անցել են տնտեսավարման առաջադիմական մեթոդների, հիմնական արտադրական կոլեկտիվները դեռևս լրիվ ինքնուրույնություն չեն ստացել: Այս իմաստով առավել քան հիմնավոր հնչեց նրա առաջարկությունը. հողային և այլ ռեսուրսների հետ միասին բրիգադների տրամադրության տակ դնել արտադրության բոլոր միջոցները, այդ թվում և գյուղատնտեսական տեխնիկան: Այլապես տնտհաշվարկային կոլեկտիվը չափից ավելի կախման մեջ կընկնի մեխանիզմների հավաքակայանից. հնարավոր կհամարե՞ն, արդյոք, այստեղ ժամանակին տրամադրել տրակտոր, հնձիչ մեքենա, կոմբայն, բավարար չափով որակով կկատարե՞ն արդյոք մեքենայացված աշխատանքները: Իսկ եթե ոչ՝ ուղղակի վնասներ կկրեն և՛ ամբողջ բրիգադը, և՛ նրա յուրաքանչյուր անդամն առանձին վերցրած:

Շարունակելով խոսակցությունը աշխատանքի կազմակերպման գործում եղած թերությունների մասին՝ գյուղսովետի գործկոմի նախագահ Մ. Բլբուլյանը ուշադրությունը սրեց այն բանի վրա, որ սխալներն այստեղ հաճախ են կրկնվում, իսկ դրանից դասեր չեն քաղվում: Օրինակ, դեռ անցյալ տարի որոշվել էր պտղատու այգիների միջշարային տարածություններն օգտագործել բոստանային կուլտուրաներ աճեցնելու համար, բայց բերք փաստորեն այդպես էլ չստացան: Ընթացիկ տարում նախանձելի համառությամբ նույնը կրկնեցին: Եվ դարձյալ ապարդյուն:

Իսկ գուցե արժե բոստանային, ասենք նաև այլ կուլտուրաներ աճեցնելու համար առանձնացնել հողային տարածություններ ու դրանք հանձնել վարձակալական կապալի՞: Եվ ընդհանրապես լուրջ ուշադրություն նվիրել աշխատանքի կազմակերպման ու խթանման այդ առաջադիմական ձևի արմատավորմանը: Չէ՞ որ այդպիսի մոտեցումը գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, նրա արդյունավետության բարձրացման ռեալ ուղին է: Ցավոք, ժողովում այդ կարևոր հարցը կոմունիստների քննարկման առարկա չդարձավ: Հաշվետու զեկուցման մեջ միայն հարևանցիորեն հիշատակվեց, որ տնտեսությունում «դեռևս դանդաղ է արմատավորվում կոլեկտիվ և վարձակալական կապալը»: Իսկ մտքերի փոխանակության ժամանակ այդ մասին ոչ մի խոսք չեղավ, կարծես դա ոչ ոքի չէր էլ հետաքրքրում:

Ճշտենք. վարձակալական կապալ Հուշակերտի կոլտնտեսությունում պարզապես չկա: Այստեղ ևս մտածելու առիթ կա: Պրոբլեմն այն է, որ մարդիկ չեն ցանկանում պայմանագիր կնքել երկար ժամկետով, ասենք,տասը-տասնհինգ տարով: Իսկ երկու-երեք տարվա համար ցանկացողներն անչափ շատ են, բայց դրան առարկում է տընտեսության ղեկավարությունը: Ուրեմն, ինչու՞մն է բանը: Բացատրելով իրավիճակը՝ կոլտնտեսության նախագահ Ս. Պետրոսյանն ասաց. «Եկեք, նախ և առաջ ելնենք այն բանից, որ վարձակալական կապալը պետք է լինի փոխադարձաբար շահավետ, այսինքն՝ ծառայի և՛ աշխատողների շահերին՝ առանձին վերցրած, և՛ ամբողջ տնտեսության շահերին: Սկզբունքորեն դա այդպես էլ կա: Եվ, այդուհանդերձ, ստորագրելով մի քանի տարվա պայմանագիր, վարձակալները, ձգտելով քաղել առավելագույն օգուտ, որպես կանոն, չափից ավելի ջանք են գործադրում և հողի մեջ մտցնում միայն այնպիսի պարարտանյութեր, որոնք հենց նույն տարում, լավագույն դեպքում՝ նաև հաջորդ տարում, ապահովում են շատ բարձր բերք: Իսկ այն մասին, որ դրա հետևանքով հողը չափազանց հյուծվում է, «ժամանակավոր տերերը» չեն էլ մտածում: Տվյալ դեպքում երևան է գալիս նյութական շահագրգռության մյուս կողմը՝ նրա ծայրահեղությունը, իսկ տիրոջ վերաբերմունքը փոխարինվում է սպառողականությամբ ու գոփողականությամբ: Մինչդեռ հողը պահանջում է հոգատար խնամք: Եվ այն մշակելիս հարկավոր է հարստացնել այնպիսի պարարտանյութերով, որոնք, թեպետև չեն տալիս այսրոպեական էֆեկտ, բայց դրա փոխարեն նախատեսված են հեռանկարի համար և ապահովում են կայուն բերք: Կարծում եմ, որ երկա-

րաժամկետ վարձակալության դեպքում մարդիկ հենց այդպես էլ կաշխատեն։ Բայց դա հոգսաշատ գործ է, և շատերը, ցավոք, չեն կամենում մեզ հետ կնքել նման պայմանագիր»։

Նախագահի փաստարկները բավական համոզիչ են թվում։ Եվ, այնուհանդերձ, հարց է ծագում. որտե՞ղ, եթե ոչ այստեղ է գործունեության լայն ասպարեզ բացվում կուսակցական կազմակերպության համար՝ զրույցներ ունենալ տնտեսության աշխատողների հետ, պարզաբանել վարձակալական կապալի, առանձնապես երկարաժամկետ կապալի առավելությունները, համոզել մարդկանց։ Ի դեպ, անհատական աշխատանքը կոմունիստների ու անկուսակցականների հետ հաշվետու ժամանակաշրջանում այստեղ ակնհայտորեն կաղում էր։ Այլ կերպ ինչպե՞ս կարելի է բացատրել, օրինակ, այն փաստը, որ Հուշակերտի կուսկազմակերպության անդամ Ծ. Տամոյանը, ընկնելով հաստիքների կրճատման տակ, ահա արդեն 8 ամսից ավելի է չի աշխատում։ Իսկ նրա հարցը այդպես էլ չքննարկեցին, չօգնեցին նրան։ Կամ՝ կուսակցական բյուրոն ինչու՞ է այդքան անտարբեր վերաբերվում այն բանին, որ մի շարք կոմունիստներ չեն կատարում իրենց տրված հանձնարարությունները։ Նման հարցեր, մեղադրանքներ, կշտամբանքներ, հիմնականում արդարացի ու սկզբունքային, այդ օրը բավական հաճախ հնչեցին ժողովում։ Եվ, իհարկե, միանգամայն իրավացի էր ժողովին ներկա գտնվող Բաղրամյանի շրջկոմի երկրորդ քարտուղար Լ. Ալեքսանյանը, երբ իր ելույթում նշեց, որ մտքերի փոխանակության ընթացքում բավական շատ թվով պրոբլեմներ առաջ քաշվեցին և քննադատական դիտողություններ արվեցին, բայց դրանց հետ միասին անհրաժեշտ են նաև կոնկրետ առաջարկություններ, հետագա ձեռնարկումներ, ռեալ, գործնական քայլեր՝ և՛ կուսակցական աշխատանքը, և՛ տնտեսական գործունեությունը կատարելագործելու համար։ Հետագայում հենց դրան պետք է ուղղված լինեն հուշակերտցի կոմունիստների ջանքերը։

... Կուսկազմակերպության բյուրոյի անդամների, ինչպես նաև շրջանային կուսկոնֆերանսի պատգամավորների ընտրությունները անցան ժողովականների բարձր ակտիվության մթնոլորտում։ Բյուրոյի նոր կազմի առաջին նիստում նրա քարտուղար ընտրվեց Ե. Առաքելյանը։ Հիշեցնենք, որ, ելույթ ունենալով ժողովում, նա սկզբունքորեն արտահայտվեց իր նախորդի աշխատանքի ոճի անընդունելիության մասին։ Ասենք՝ կոմունիստների մեծ մասն էլ, դատելով քվեարկության արդյունքներից, ցանկանում էր կուսակցական բյուրոյի ղեկավար ունենալ նոր մարդու։ Այժմ Ե. Առաքելյանը պետք է իր ակտիվ, ձեռներեց գործողություններով ապացուցի կոլտնտեսության կուսկազմակերպության ամբողջ գործունեության վերակառուցման անհրաժեշտությունն ու հնարավորությունը։ Միայն այդպես նա կկարողանա արդարացնել իր նկատմամբ ցուցաբերված բարձր վստահությունը։ Եվ, կարծում ենք, Հուշակերտի կոմունիստները կաստարեն իրենց քարտուղարին այդ աշխատանքում։

---



# ԿՏԱԿՎԱԾ Է ՀԱՅՐԵՆԻՔԻՆ

**ԱՅՆ, ԻՆՉ ՀԱՅՏՆԻ ՉԷ 1920 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՅՏՆԻ ԿԻՆՈԿԱԴՐԻ ՄԱՍԻՆ**

Մասնագետների մեծ մասի կարծիքը հանգում է այն բանին, որ քանդակագործ Հակոբ Գյուրջյանին չի հաջողվել քանդակել Վլադիմիր Իլյիչ Լենինի դիմաքանդակը։ Բայց նկարչի արխիվի ուսումնասիրումը կասկածի տակ է դնում այդ պնդման կտրականությունը։



*Այս հոդվածը զարդարող լուսանկարը վերատպված է այն հայտնի կինոկադրից, որտեղ պատկերված է Վ. Ի. Լենինը 1920 թվականի մայիսի 1-ին՝ «Ազատագրված աշխատանքին» հուշարձանի հիմնադրման ժամանակ։ Բարի ժպիտը, ողջույնի համար բարձրացված ձեռքը։ Քիչ հեռու կանգնած է մի երիտասարդ՝ կեպկայով, նա նույնպես ժպտում է... Հակոբ Մարգարի Գյուրջյանը, հայազգի քանդակագործը։*

*Օբյեկտիվը պատկերել է հանդիսավոր, տոնական րոպե։ Չէ որ «անճոռնի կուռքերի» փոխարեն երիտասարդ սոցիալիստական պետության դեկրետով որոշված է հուշարձաններ կանգնեցնել ժողովրդական գործի համար պայքարած մարտիկներին, հեղափոխական մտածողներին։*

*Իսկ ի՞նչ եղավ հետո։*

*Ելույթից հետո Վլադիմիր Իլյիչը այցելեց ցուցահանդեսը, որտեղ նախագծերի հեղինակները պարզաբանումներ էին տալիս իրենց էսքիզներին։ Ինչպես հայտնի է, լուսժողկոմատի ժյուրին հավանություն էր տվել «Ազատագրված աշխատանքին» հուշարձանի նախագծին, որ կազմել էր քանդակագործ Ս. Ալյոշինը։ Նրա խմբում էին նաև Ս. Կոլցովը և Հ. Գյուրջյանը։ Հավանաբար, դրանով է բացատրվում, որ երիտասարդ հայ քանդակագործը միտինգում կանգնած է Լենինի կողքին։*

*Այդ օրերին, թե հետագա օրերից մեկում նրանց միջև տեղի է ունեցել զրույց։ Դրա մասին կարելի է կռահել Լունաչարսկու նամակից, որ նա գրել է 1920 թվականի հունիսի 22-ին, այսինքն՝ մոտ երկու ամիս հետո.*

*«Թանկագին Վլադիմիր Իլյիչ։*

*Դուք ինձ խոստացել եք մի քանի անգամ կեցվածք ընդունել քանդակագործ-նկարիչ Գյուրջյանի համար։ Այդ նկարիչը, որ հայահպատակ է, մոտ ժամանակներս բոլոր համապատասխան իշխանությունների թույլտվությամբ մեկնում է Արևմուտք։ Այնտեղ նա կարող է ավելի պինդ նյութով պատրաստել կիսանդրին, որ Ձեզնից կկերտի այստեղ։ Նա շատ լավ քանդակագործ*

կան և հայկական մշակույթի համատեքստում, որը օրգանապես ներգծվում է հեղափոխության մեջ։ Նրա սերը դեպի մեծատառով հայրենիքը եղել է անկեղծ։ Արխիվում ես Լենինի մասին հայտնաբերեցի մի հին լրագրային կտրածո (ցավոք, չհաջողվեց պարզել, թե որ թերթից), այնուհետև «Վեչերնայա Մոսկվա»թերթից հոդվածներ, որտեղ շարադրված էին Մոսկվայում և Լենինգրադում Մաքսիմ Գորկու լավագույն հուշարձանի մրցույթի պայմանները։ Հոդվածի այն տողը, որ մրցույթին կարող են մասնակցել նաև օտարերկրացի քանդակագործները, ընդգծված է Գյուրջյանի ձեռքով։ Նա մտադիր էր խստապահանջ դատին ներկայացնել իր Գորկուն՝ իր համար հարազատ մարդուն, որի հետ կապված էր երկարատև բարեկամությամբ։ Քանդակագործի ճաշակն ու համակրանքը լավ գիտեին մոտ բարեկամները։ Ահա Մարտիրոս Սարյանի նամակը, որ գրել է Փարիզ՝ Գյուրջյանին 1928 թվականի ապրիլին։ Թուղթը դեղնել է ժամանակից, թանաքը ներծծվել, տեքստը հազիվ է կարդացվում։ Բերում եմ աննշան կրճատումներով.

«Թանկագին Հակոբ,

Ես երջանիկ եմ, չնայած այն բանին, որ իմ բոլոր 37 նկարները այրվել են շոգենավի վրա հրդեհի ժամանակ՝ Կոստանդնուպոլսի նավահանգստում։ Բայց իմ հոգևոր ուժերի պաշարը դեռ սպառված չէ, և ես դեռ գուցե մի ժամանակ կցանկանամ աշխատել։

Բանն ահա թե ինչումն է, Հակոբ, այս նամակով ուղարկում եմ քեզ Ստ. Շահումյանի հուշարձանի նախագծի մրցույթի պայմանները։ Դու կարդա, ծանոթացի՛ր, գուցե, քեզ կհետաքրքրի... Եթե հետաքրքրվես, գրիր ինձ, թե դու ինչպես ես պատկերացնում այդ գործը և թե ինչպես կարելի կլիներ այն իրականացնել։ Որպեսզի դա լինի ինչ-որ մի լավ բան. այստեղ քանդակագործության մեծ պահանջ կա, կանգնեցնում են բոլորովին անպետք հուշարձաններ, որոնցից սառնություն է փչում և դրանք չեն արդարացնում իրենց կոչումը, այսինքն՝ բոլորովին անպետք բաներ։

Դու մտածիր, որ դա, նախ, սազի հեղափոխության ոգուն և, երկրորդ, լինի արվեստ: Ինձ թվում է, դու կարող ես անել....

...Այստեղ այնքան շատ արև կա, որ դուք, փարիզցիներդ, այդ մասին ոչ մի պատկերացում չունեք։

Բարևներ տիկնոջդ, նկարիչներին ու ծանոթներին։

Պինդ սեղմում եմ քո ձեռքը

ք. Երևան

քո Մարտիրոս Սարյան»։

Մինչև այժմ հետազոտողները գտնում էին, որ Գյուրջյանը չի աշխատել ականավոր հեղափոխական Ստեփան Շահումյանի կերպարը քարի մեջ մարմնավորելու վրա։ Բայց, ուսումնասիրելով արխիվային փաստաթղթերը, ես հայտնաբերել եմ աշխատանքների սևագիր ցուցակը, որ կազմել է Գյուրջյանը։ Ցուցակում կատարված դիմաքանդակների թվում 36-րդ համարի տակ նշված է. «Հեղափոխական Շահումյանի գլուխը»։ Ի դեպ, այդ ցուցակում նշված է նաև Սվերդլովի կիսանդրին։ Իսկ այդ աշխատանքները չկան։ Չեն պահպանվել նաև լուսանկարները։ Հետազոտողները ենթադրում են, որ Գյուրջյանը նրանց դիմանկարները չի քանդակել։ Բայց ինչը կարող է ավելի պերճախոս ու համոզիչ փաստարկ լինել, քան կատարված աշխատանքների ցուցակը, որի մեջ կան և՛ Շահումյանը, և՛ Սվերդլովը։

Ափսոս, իհարկե, որ ժամանակի ընթացքում կորել են այդ ստեղծագործությունների հետքերը, թեև բացառված էլ չէ, որ դրանք գտնվում են ինչ-որ մեկի մասնավոր հավաքածուում։

Մի հանգամանք ևս. Սարյանի նամակի հետ կապ չունի՞ արդյոք այդ սևագիր ցուցակը։ Աշխատանքը Շահումյանի կերպարի վրա նրա հին գործընկերոջ կոչի ուղղակի արձագանքն է։ Վերջապես, ինչո՞ւ չի կարելի ենթադրել, որ Լենինի դիմաքանդակը ևս արժանացել է նույն բախտին՝ անհետացել է տասնամյակներում կամ պահվում է որևէ մեկի մասնավոր հավաքածուում...

Փարիզում Հակոբ Գյուրջյանը ստեղծագործում էր ու տառապում։ «Նա ապրում էր օտարության մեջ ու երազում, որ իր աշխատանքները մի օր կտեսնեն հայրենիքում,— գրում էր Սարյանը։— Շատ տարիներ առաջ Փարիզում, իմ ցուցահանդեսում ես հանդիպեցի Գյուրջյանին։ Հիշում եմ, նա ինձ ասաց.

— Մարտիրոս, հայրենիքից հեռու ապրելը միևնույն է թե ապրել առանց ներկապնակի։— Ապա լռեց ու ավելացրեց՝ խոր հոգոց հանելով,— բայց ես այստեղ էլ գտնում եմ հայրենակիցների, ստեղծում նրանց դիմաքանդակները և դրանով թարմացնում իմ ներկապնակը։

Նրա խոսքերում կարոտ կար։ Նա երկար ման էր գալիս իմ ցուցահանդեսում բույնը կորցրած մեղվի նման, կարծես ներծծում էր հայրենիքի արևը, նրա բուրմունքը, նրա գույները»։

Այո, նրա կերտած քանդակները ցուցադրվում էին Ռոդենի և Ռենուարի, Կուրբեի և Դելակրուայի, Մատիսի և Պիկասոյի կտավների կողքին, Մայոլի և Բուրդելի գործերի կողքին։ Նրա աշխատանքները Ճապոնիայում, ԱՄՆ-ում, Բելգիայում, Ֆրանսիայում, Լյուքսեմբուրգում, Հոլանդիայում ձեռք էին բերում հայտնի թանգարաններն ու հավաքածուների սիրահարները։ Բայց երջանի՞կ էր արդյոք նա հեռավոր ափերին։ Վկայություն է տալիս բժիշկ Ս. Զեկունովը, որը երկար տարիներ բուժել է Գյուրջյանին. «... Նա խորն էր ապրում գեղագետի ժամանակակից կախվածությունը ամեն կարգի կողմնակի ցիչատիչ ազդեցություններից։ Երկար տարիներ ես վկա եմ եղել այս աշխարհում տեղի ունեցող բոլոր տեսակի այլանդակ երևույթների նկատմամբ նրա կրքոտ հոգու ռեակցիային։ Ինքը՝ Գյուրջյանը, իր բնավորության ամբողջականությամբ, չէր կարող հանդուրժել ոչ մի գայթակղություն ու փոխզիջում, բայց նա տառապում էր՝ խեղդվելով ժամանակակից մթնոլորտում...»։

Հայրենիքը դեպի իրեն էր ձգում նրան։ Գյուրջյանին խորապես հետաքրքրում էր այն, ինչ տեղի էր ունենում մեր երկրում։ Արխիվում պահվում են նրա քրոջ հիշողությունները, որոնցում բերված են Գյուրջյանի հետևյալ խոսքերը. «Վլադիմիր Իլյիչ Լենինի մահից հետո ոչ ոք չի հետաքրքրվում ինձնով և չի ուղարկում խոստացված հրավերը, իսկ մինչդեռ ես սրբությամբ պահում եմ սովետական անձնագիրս և սովետական հպատակությունը»։ Քանդակագործը խնդրում էր այդ հարցի մասին խոսել Գորկու և Լունաչարսկու հետ։ Արդեն ծանր հիվանդ Հակոբ Գյուրջյանը քրոջն ասել էր, թե հույս ունի, որ կառողջանա և կաշխատի թույլտվություն ստանալ մեկնելու համար, իսկ եթե վիճակված լինի մեռնել Փարիզում, ապա իր աշխատանքները կտակում է հայրենիքին, Սովետական Հայաստանին»։

Հետագա տարիներին նա քիչ էր աշխատում՝ խանգարում էր սրտի վտանգավոր հիվանդությունը։ Նա մահացավ 1948 թվականին։

Այսպիսին է այն մարդու ողբերգական ճակատագիրը, որը միտինգում կանգնած է Իլյիչի կողքին։ Այդ ճակատագրի մեջ արտացոլվել է այն բարդ ժամանակի խառնաշփոթ իրավիճակը։ Ցուրտ ու սառը տարիների միջով Հակոբ Գյուրջյանը տարավ հայրենիքի, նոր կյանք կառուցող նրա մարդկանց նկատմամբ իր սերը։ Նաև Լենինի նկատմամբ, որի հետ ունեցած հանդիպումները, հիրավի, բախտի պարգևներն էին։

Ուրեմն կարո՞ղ էր արդյոք նրա ստեղծագործության մեջ չարտացոլվել այն, ինչով նա ապրում էր, ինչի մասին անդադրում մտածում, ինչը սնում էր նրա հոգին։ Ահա թե ինչու բնական է մտածել, որ հայազգի քանդակագործը ստեղծած պետք է լինի հեղափոխության առաջնորդի կերպարը։

Իսկ ինչպիսի՞ն է արվեստաբանների կարծիքը, նրանց կարծիքը, ովքեր զբաղվել են Հակոբ Գյուրջյանի ստեղծագործական ժառանգությամբ։

Ռուբեն Դրամփյան, Հայկական ՍՍՀ արվեստի վաստակավոր գործիչ.

— Ինչ-որ մեկը շատ վաղուց ինձ պատմել է, որ Մոսկվայում Գյուրջյանը աշխատում է Վլադիմիր Իլյիչի դիմաքանդակի վրա։ Հիմա արդեն չեմ հիշում, թե ով էր.— 94-ամյա արվեստաբանը երկար նայում է մի կետի, ջանալով հիշել, և անօգնական կերպով տարածում է ձեռքերը։— Բայց Լենինը նրա համար կեցվածք չի ընդունել, դրանում ես համոզված եմ։

Մինաս Սարգսյան, Հանրապետության գիտությունների ակադեմիայի արվեստի ինստիտուտի ավագ գիտաշխատող, արվեստաբանության թեկնածու, ՍՍՀՄ նկարիչների միության անդամ.

— Ինձ անհայտ է այնպիսի փաստ, որ Գյուրջյանը աշխատել է Շահումյանի և Սվերդլովի կերպարների վրա։ Դա հետաքրքիր է։ Ով գիտե, գուցե և քանդակագործը ինչ-որ ժամանակ քանդակել է նաև Լենինին։ Շատ հնարավոր է։ Բայց արխիվում հետքեր չեն հայտնաբերվել։

Սեմյոն Ալաջալով, Հայկական ՍՍՀ վաստակավոր նկարիչ.

— Գ. Յակուլովի խոսքերից ինձ հայտնի է, որ Անատոլի Վասիլևիչ Լունաչարսկին սերտ բարեկամություն է ունեցել անմոռանալի Հակոբ Գյուրջյանի հետ։ Քանդակե՞լ է արդյոք նա մեր առաջնորդին։ Դժվարանում եմ միանշանակ պատասխանել։ Միանգամայն հնարավոր եմ համարում։ Ինձ թվում է, որոնումները պետք է շարունակել։

Արվեստի, մոնումենտալ քանդակագործության հայտնի մասնագետների՝ Հ. Գյուրջյանի ստեղծագործության մասին հեղինակների երեք կարծիք։ Կարելի՞ է արդյոք այս երեք տեսակետները բերել, այսպես ասած, ընդհանուր հայտարարի։ Մի աղոտ լույս նշմարվեց Ռուբեն Դրամփյանի պատասխանում, մնացածները կռահումների ու ենթադրությունների բնագավառից են, որոնք հնարավոր են համարում մեր վարկածի գոյությունը։

Եվ այսպես, եթե Գյուրջյանը կերտել է Լենինի դիմաքանդակը, ապա որտե՞ղ է այն այժմ։ Համարվում է իբրև անհայտ հեղինակի գո՞րծ։ Մասնավոր հավաքածու՞ում է։ Անվերադարձ կորե՞լ է տասնյակ տարիների մեջ։

Մեզ թվում է, հարկավոր է փնտրել Փարիզում, Հ. Գյուրջյանի աշխատանքների մասնավոր հավաքածուներում (ի դեպ, ամենամեծ հավաքածուն գտնվում է սիրող Ճամկերտյանի մոտ)։ Հետքերը կարող են լինել այնտեղ, որտեղ ստեղծագործել ու հայրենիքի կարոտն է քաշել մոլեգին վարպետ Հակոբ Գյուրջյանը։

ԻՈՍԻՖ ՎԵՐԴԻՅԱՆ

# ԱՐԵՎԻ ԺԱՄԱՑՈՒՅՑՈՎ...

## (20-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՌՈՒՍ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԱՐՁԱԿՈՒՄ)

Ռ. ԱՎԱԳՅԱՆ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ բարեկամությունը ոչ մի փորձության չի դիմանա, եթե կենդանի օրգանիզմի նման անընդհատ չսնվի կենսական հյութերով: Այդ հյութերը այսօրվա մեր կյանքի մեջ են, մեր շնչած օդի, ամենօրյա հաց ու ջրի մեջ, և, որպես կենդանի իրողություն, բխում են անցյալի ակունքներից: Ուրեմն, այսօրվա իրագործությունները ու ձեռքբերումները և երեկվա ավանդները՝ ահա բարեկամության կենդանի օրգանիզմը սնելու աղբյուրները:

Դարերի խորքերն են գնում ռուսների և հայերի բարեկամության արմատները: Գիտնականները դրանց սկիզբը որոնում են հազար տարվա եղելությունների մեջ, երբ հայկական ջոկատները Կիևյան Ռուսիայում կռվում էին օտար զավթիչների դեմ, իսկ ռուսներն էլ «ի կողմանցն հյուսիսոյ... իբրև զմրրիկս ընդ համատարած» մարտնչում էին Հայաստանը հեղեղած սելջուկների դեմ: Հազար տարվա այդ շփումները վերածվեցին քաղաքական կողմնորոշման և ահա շուրջ երեքհարյուր տարի է, ինչ մեր կյանքի կողմնացույցի սլաքը Հյուսիս է ցույց տալիս: Քաղաքական այդ կողմնորոշումը հենվել է մեր մերձավոր հարևանի ռազմական հզորության վրա և նրա հետ է կապվել պարսկաթուրքական լծից ազատագրվելու հույսը: Ռուսական կողմնորոշման ակունքների մոտ կանգնած են եղել հայ ազատագրական շարժման լավագույն գործիչները՝ Իսրայել Օրին, Հովհաննես Լազարյանը, Հովսեփ Արղությանը, Շահամիր Շահամիրյանը, Հովսեփ Էմինը, որոնք միաժամանակ եղել են հայ-ռուս մշակութային կապերի ծավալման ռահվիրաներ ու ջատագովներ: Ճակատագրի պարգևն էր և կյանքը ինքն է կամեցել, որ ռուս-թուրքական և ռուս-պարսկական պատերազմների ժամանակ ռազմաճակատի երկու հատվածներում՝ Երևանի և Կարսի համար մղված մարտերում, որտեղ արյունով ու արճիճով ռուսական տիրապետության և հայոց լինելության հարցերն էր որոշվում, իրենց կյանքի հերոսավեպը գրեին Գրիբոյեդովն ու Պուշկինը: «Խելքից պատուհասի» հեղինակը մեզ համար դարձավ նաև մեր սուրբ գործի՝ հայոց հայրենադարձության առաջին կազմակերպիչը, առաջին զինվորն ու նահատակը... Հայոց ազգային ազատագրական շարժումներին անձնական մասնակցություն ցուցաբերեցին ռուս ճանաչված մտավորականներ Սերգեյ Գորոդեցկին, Ալեքսանդր Կուլեբյակինը, Վ. Ի. Նեմիրովիչ-Դանչենկոն.. Նրանք հայոց հողի վրա ոտք դրեցին մեր ժողովրդի համար ամենածանր տարիներին՝ 1827 թվականին, 1829 թվականին, 1915 թվականին...

Բարեկամության ավանդները հասան մեր օրերը, երբ հոկտեմբերյան կրակներից նոյեմբեր բռնկվեց Հայաստանի երկնակամարում: Մեր ժողովրդի համար դժվար այդ տարիներին մենք դարձյալ ռուս եղբայրների արմունկը զգացինք՝ նույն շարքի մեջ: Հյուսիսային մայրաքաղաքներից Հայաստան այցելեցին Գորկին ու Լունաչարսկին, Պաուստովսկին ու Կոլցովը, Տիխոնովն ու Բելին...

20-ական թվականները մեր երկրի բոլոր ժողովուրդների համար սոցիալիստական վերածնության առաջին տարիներն էին՝ կապված հայտնի դժվարությունների ու մաքառումների հետ: Այդ ծանր ընթացքը բնականաբար իր գեղարվեստական արտացոլումը ստացավ ռուս գրողների Հայաստանին նվիրված առաջին ստեղծագործություններում: Բայց վերածնության թեման Հայաստանում բարդացված էր. չէ՞ որ նախորդ տարիները մեր ժողովրդի համար սոսկ ցարական ստրկության և իմպերիալիստական պատերազմի մղձավանջ չէին: Եղեռնի տարիներ էին... Նորագույն պատմության մեջ առաջին ցեղասպանության տարիներ... Եվ Հայաստանն էլ ոչ թե պարզապես վերածնունդ էր ապրում, այլ, հիրավի, հարություն էր առնում ի մեռելոց... Ռուսական ռեալիստական նոր գրականությունը չէր կարող շրջանցել այդ երևույթը:

Խորհրդային կարգերի հաստատման առաջին տարիներին, երբ դեռ թարմ ու արնածոր էր հայ ժողովրդի՝ 15 թվականին ստացած վերքը, երբ դեռ ցավից ճչում էին որդեկորույս մայրերը, երբ հանրապետության քաղաքներում ու գյուղերում ամեն քայլափոխի տակավին հանդիպում էին թուրքական վայրագ ներխուժման հետքերը՝ ավերված ու մոխրացած տներ, հրաճարակ գրքեր ու մշակութային արժեքներ, խեղանդամված մարդիկ ու անանուն շիրմաթմբեր,— ահա այդ տարիներին Հայաստան այցելած ռուս գրողները բնականաբար իրենց զայրույթի խոսքն են ասել սուլթանական Թուրքիայի գազանությունների և իմպերիալիստական պատերազմի արհավիրքների մասին, դատապարտել ցեղասպանությունը: Նրանք շարունակել են իրենց ավագ գրչակիցների հայանպաստ գործի ավանդները և ավելի լայն հայացքով դիտելով հայոց ցեղասպանությունը նրան հաղորդել են միջազգային-քաղաքական հնչողություն:

Երբ 1924 թվականի օգոստոսին Անատոլի Լունաչարսկին այցելեց Հայաստան, նրա ճանապարհի առաջին քաղաքը Լենինականն էր: Հեռվից, քաղաքի մոտի բլուրներից, ուր ռուս գրողը բարձրացել էր իր հայ բարեկամների՝ պետական և կուսակցական գործիչներ Ասքանազ Մռավյանի և Աշոտ Հովհաննիսյանի ուղեկցությամբ, նրան զարմացրին իրար վրա կուտակված խղճուկ շենքերի շարքերը, շրջապատի մոխրագույն կոլորիտը, սահմռկեցուցիչ ամայությունը, որ նրան կործանված Պոմպեյը հիշեցրեց: Այստեղից թուրքն էր անցել և «խուժանը նպատակ էր դրել քարը քարի վրա չթողնել այս խոսքի ուղղակի իմաստով»:

Սրանից հետո մարդուն ի՞նչ էր մնում անել. ծնկի՞ գալ, աղոթե՞լ տեր աստծուն, ձեռքերը երկինք կարկառե՞լ, անեծք ու նզովք շշնջա՞լ, աշխարհով մեկ սուգ ու շիվան անե՞լ, թե անլուր ցավերից սեղմել ատամները, քշտել թևքերը, ձեռք զարկել ավերակների միջից նոր քաղաք բարձրացնելու, դեռևս արնահոսող վերքերը բուժելու, կոթ ավերակի դիմաց յաթաղանասուն շեն կառուցելու գործին: Իր պատմության ընթացքում ավերածություններ ու մահեր տեսած հայը հենց այդպես է կանգուն մնացել, դարերով գոյատևել ու ապրել: Եվ ահա, թեպետ ընդամենը երեք-չորս տարի է անցել, բայց քաղաքում արդեն ստեղծարար աշխատանքներ են ծավալվել և համառ գյումրեցիները ամենուր դրսևորում են ապրելու իրենց կամքը: Այս պարագան լավ է նկատել մեր բարեկամ Անատոլի Լունաչարսկին: «Արևախանձ, կիսաջարդ Հայաստանն ապրել է ուզում, և որպեսզի կարողանա ապրել, հարկավոր է արևին դեմ դնել ջուր, ավերին՝ ստեղծարար աշխատանք»:

Եվ ահա չորս տարեկան խորհրդային իշխանությունը կյանքի է կոչել կիսաջարդ գյումրեցու աշխատանքի տարերքը, այն ներդրել Շիրակի ջրանցքում, որպեսզի ծարավից չճաքեն նրա շուրթերը: Շիրակի ջրանցքի շինարարությունը եգիպտական աշխատանքների տպավորություն է թողել Լունաչարսկու վրա: Պատկառելի գրողը չի զլացել, զառիվայրով իջել է խոր կիրճը, ուր Արփաչայն է մռնչում և գրեթե շոշափելիորեն տեսել այն օրը, երբ հսկայական ամբարտակի հետևում Արփաչայը կվերածվի մի փոքրիկ լճի և հոսելով առուների ու առվակների մի ամբողջ համակարգով, կռիվ կմղի երաշտի դեմ: «Մենք ջրանցքը դիտեցինք իր ավարտից և գործարկումից մի քանի շաբաթ առաջ,— շարունակում է Լունաչարսկին,— գործն արդեն գրեթե ավարտված է և այն վկայում է, որ Հայաստանը չի մեռել, որ Սովետական Հայաստանը հարություն առնող Հայաստանն է»:

Մեծ եղավ գրողի զարմանքը, երբ նրան երեկոյան հրավիրեցին օպերա: Ինչպե՞ս թե օպերա: Հենց այս կողոպտված Լենինականո՞ւմ...

Այո, օպերա,— խանդավառ բացականչում է նա և իրեն հատուկ խորաթափանցությամբ ու մարդկային վսեմ ձգտումների ըմբռնումով իր ընթերցողներին բացատրում, որ մարդիկ այստեղ շատ տառապանքներ են տեսել, ազգային շատ վիրավորանքներ են կրել և այսօր հսկայական եռանդի գնով նորից հիմնելով իրենց տնտեսությունը, իրենց կենցաղը, միաժամանակ տենչում են այնպիսի մշակույթ, որը միացներ իր մեջ ազգային հպարտության օրինական զգացմունքը և համաշխարհային քաղաքակրթությանը հաղորդակից լինելու բաղձանքը...

Ափսոս, մեր ռուս բարեկամը հնարավորություն չունեցավ կրկին այցելելու մեզ, երբ նույն այդ կողոպտված, բզկտված Լենինականում առաջին անգամ բեմադրվեց նաև իր հեղինակած պիեսը՝ «Նապոլեոնի արշավանքը»: Բայց դա գրողի այցելությունից յոթ տարի հետո էր, 1931-ի մարտին: Նա արդեն չկար..

Լենինականից Լունաչարսկին իր ճանապարհը շարունակեց դեպի Երևան: Այստեղ

ԱՎԱԳՅԱՆ ՌԱՖԱՅԵԼ ԱՐՍԵՆԻ— ՍՍՀՄ գրողների միության անդամ։

ևս նա տեսավ, որ Հայաստանի կառավարությունն արդեն աշխատանքներ է սկսել լայնացնելու Հրազդանից սկիզբ առնող հիմնական առուն, նպատակ ունենալով գետի գահավեժը օգտագործել հզոր էլեկտրակայան կառուցելու համար: Խոսքն այստեղ երևանյան էլեկտրակայանի մասին է, որը հետագայում կառուցվեց ակադեմիկոս Ալեքսանդր Թամանյանի նախագծով: Սակայն Երևանն ականավոր ռուս գրողին ներկայացավ ոչ միայն ջրի բարիքով: Երևանում,— գրում է նա,— սովետական իշխանությունը իրեն ցույց է տալիս մի այլ բեղմնավորման մեջ ևս՝ կրթական ու գիտական աշխատանքներում: Լունաչարսկին մեծ գոհունակությամբ է նշում, որ սովետական իշխանության շնորհիվ Երևանը դարձել է համալսարանական քաղաք:

Այստեղ անհրաժեշտ է հիշել, որ այն տարիներին երիտասարդ Ռուսաստանյան Ֆեդերացիայի տարբեր նահանգներում առանձնապես բուռն կերպով դրսևորվել էր «սեփական համալսարան» ունենալու վաղաժամ ու հապճեպ ձգտում: Ինքը՝ Լունաչարսկին, որ ղեկավարում էր մեր երկրի լուսավորության գործը, իրավամբ այն կարծիքին էր, թե առայժմ ժամանակը չէ այդպիսի բուռն ձգտումների և, որ դրանց համար նախ պետք է պայմաններ ստեղծել: Ինչ վերաբերում է կոնկրետ Երևանի համալսարանին, ապա սա ևս այն տարիներին աչքի չէր ընկնում իր ուսումնատեխնական հիմքով: Եվ, այդուհանդերձ, Լունաչարսկին գտնում է, որ պետք է ամեն կերպ օգնել Երևանի համալսարանին, որպեսզի բարձրագույն կրթության այն ջահը, որը պետք է քաղաքակրթության ձգողական կենտրոնը դառնա հայոց լեզվին տիրապետող բոլոր մարդկանց համար, ոչ թե մարի, այլ լուսավորվի էլ ավելի վառ, քանի որ Ռուսաստանում և Եվրոպայում ցանուցիր են եղել բավականին մեծ թվով հայ գիտնականներ: Հայերը բարձրագույն կրթության մեծ ձգտում ունեն: Ուսանողության թիվն անչափ է: Փոքրիկ Երևանն իր համալսարանով 800-ից ավելի ուսանող ունի:

Հանրահայտ է, որ Լունաչարսկին Մոսկվա վերադառնալով, ջանքեր չխնայեց Երևանի համալսարանին նյութական օգնություն ցույց տալու, նրա համար լաբորատոր սարքավորումներ ձեռք բերելու գործում:

Լունաչարսկու վրա ցնցող տպավորություն են թողել Զվարթնոցի պեղումները: Կիսավեր տաճարի խոյակները ապշեցնում են զարդաքանդակների խորիմաստությամբ և աշխատանքի արտասովոր մաքրությամբ: Դա դրվագավոր քանդակագործության իսկական գլուխգործոց է: Բացված է նաև անհավանական խորությամբ մի ջրհոր,— գրում է նա,— որի մեջ, երբ քար ես գցում, ջրի հեռավոր ծփանքով արձագանքում է համարյա թե մեկ րոպե հետո: «Այստեղ,— գրում է նա,— քո աչքերի առջև տեսնում ես հազարամյակների խորքերն իջնող հայկական քաղաքակրթության արմատը»:

Սովետական Հայաստան այցելած ռուս առաջին գրողներից մեկը Կոնստանտին Պաուստովսկին էր:

Գնացքի հատուկ վագոնում նրա ուղեկիցները ռուս մասնագետներ էին, որոնք դուրս էին եկել ստուգելու երկաթուղու և կամուրջների վիճակը: Դրա համար էլ գնացքը հաճախ էր կանգ առնում, որից օգտվելով, Պաուստովսկին ծանոթանում էր շրջակայքին, դիտում տեսարժան վայրերը, զրուցում մարդկանց հետ: «Այստեղ հանգույցն է կրոնների, ավանդությունների, առասպելների, պոեզիայից անբաժան պատմության և պատմության բոցերում թրծված պոեզիայի»— հետագայում պիտի գրի Պաուստովսկին: Այստեղ հազարամյակներն էին հպվում ռուս գրողի աչքերին:

Մի աննկարագրելի հրաշք է թվում նրան Արարատ լեռան տեսիլքը:

Մացառուտների ու քարափլվածքների մեջ հանկարծ մեր ռուս հյուրի աչքի առաջ բացվում է մի տեսարան, որ երևակայական է թվում. նա մեծ վրան է տեսնում, որի վրա՝ դրոշակաձողին, ծածանվում էր նորվեգական դրոշակ: Վրանի մոտ, ծառերից ձիեր էին կապված, ուրախ աղմուկով իրար էին անցել ֆետրե լայնեզր գլխարկներով, վանդականախշ վերնաշապիկներով, արևախանձ մարդիկ: Կարծես թե Մայն Ռիդի կամ Ֆենիմոր Կուպերի վեպերում նկարագրված սպիտակամորթ հերոսների դադարքատեղ լիներ... Իրականում ռուս գրողը հանդիպել էր Նանսենի պարենային միսիայի ջոկատներից մեկին:

Այնինչ գնացքը նրան առաջ էր տանում հայոց քարքարոտ հողերով, որոնք միայն տեղ-տեղ էին մշակված: Ամայի դաշտերում երիտասարդ ռուս գրողը տեսնում է հայ գյուղացիների, որոնք «ավելի շուտ պարտիզպանների կամ ապստամբների էին նման. գրեթե յուրաքանչյուրի թիկունքից հրացան էր կախված...»: Եվ ահա հինավուրց այդ երկրում, որտեղ դեռ գործում էին մեծ հումանիստ Ֆ. Նանսենի պարենային ջոկատները և որտեղ թուրքական սահմանի կողմից կատարվող ասպատակությունների պատճառով հայ գյուղացին դեռևս աշխատում էր հրացանը թիկունքից կախված, Կոնստանտին Պաուստովսկին տեսնում է նորահաստատ սովետական



կարգերի գարնանային առաջին ծիլերը: «Սովետական իշխանության հենց առաջին ամիսներին Երևանում տուֆից գեղեցիկ տներ էին կառուցել»,— գրում է նա:— Թափով առաջ էր տարվում Արթիկ[illegible]ֆի յասամանագույն, վարդագույն, կապտավուն, կարմրաշագանակագույն դեղնավուն և այլ մեղմ երանգներով փայլփլող այդ թեթև, ծակոտկեն քարի մշակումը... Լույսի գետեր էին հոսում երկրի վրա:

Այնուհետև գնացքի կտրած յուրաքանչյուր կիլոմետրը մի նոր հրաշալիք է բացում նրա առաջ. մերթ անմատչելի լեռնաժայռերի մեջ ծվարած մի վանք, որի հեռավոր եզրագծերն արդեն խոսում էին հայերի շինարարական արվեստի վարպետությունից, մերթ մի հին ամրոցի ավերակներ, որոնք նույնիսկ այդ վիճակում վկայում էին ուժ ու հզորություն, մերթ ճանապարհի եզրին, հենց երկաթե ռելսերի մոտ կանգնած սգավոր մի խաչքար, լեռնալանջի մի պուտ կանաչի միջից քեզ հրաժեշտ տվող մենավոր մի մատուռ, տխրահայաց մի եկեղեցի կամ կարկաչահոս մի աղբյուր...

Գնացքը ռուս գրողին տանում էր Արփայի եզերքով և օրվա վերջին կանգ առավ հենց գետի մոտ: Նա այդտեղից տեսավ «աշխարհի իսկական հրաշալիքներից մեկի՝ հայոց հնագույն մայրաքաղաք Անիի ավերակները»: Եվ այլևս անկարող եղավ դիմադրել բազիլիկները, կղմինդրե հայկական գմբեթները մոտիկից տեսնելու, շոշափելու գայթակղությանը: Թուրք սպային և ասկյարներին «բախշիշ»— կաշառք խոստանալով, նա մտավ Անիի ավերակները և զարմանքով տեսավ, որ ընկել է աստվածաշնչյան մի վայր, որտեղ «ամայության, քամու, լռության մեջ ապրում են միայն խոտերը, որմնանկարները և երկինքը, որն այնքան նման է այդ որմնանկարներին»:

1923 թվականին Երևանը դեռևս խանձված, կիսադատարկ քաղաք էր: Պաուստովսկին այստեղ եղավ ընդամենը մեկ օր՝ տասը-տասներկու ժամ: Բայց այդքանն էլ բավական էր, որ մեր բարեկամը տեսնի վերընձյուղվող նորի կանաչ շիվերը, լուսաբաց ապրող ժողովրդի գարնանային թարմ ծիլերը... կավակոփ խրճիթների զանգվածի մեջ նա տեսավ վեր խոյացող քարակերտ նոր շենքեր, տեսավ շինարարություն ու ստեղծարար աշխատանք, մարդկանց առույգ ու թարմ դեմքեր, հայկական թախծոտ աչքերի մեջ ցոլք տվող ժպիտի ճառագայթներ...

«Կրասնայա նով» հանդեսի 8-րդ համարում, մոտ վաթսուն տարի առաջ, տպագրվեց ռուս ականավոր գրող Անդրեյ Բելիի «Հայաստան» ակնարկը: Այստեղ նա իր ռուս ընթերցողներին բացեց գրեթե հրաշքով կենդանի մնացած մեր ժողովրդի գոյատևության գաղտնիքը, ցույց տվեց նրա՝ փյունիկ-թռչունի՝ մոխիրների միջից կրկին բարձրանալու ունակությունը, հին ավանդները երբեք չմոռանալու և դրանք նոր ժամանակներում նոր ձևով շարունակելու կարողությունը:

Նրան հիացմունք պատճառեց, որ մեր ժողովուրդը, չնայած անցյալի անլուր տառապանքներին, ոչ միայն համազգայնորեն պահպանում է մշակույթի, գիտության ու արվեստի նվաճումները, այլև բուժելով իր ծանր վերքերը, ձգտում է հետ չմնալ համամարդկային առաջադիմությունից, հասկանալ ժամանակի շունչը և իր լուման մուծել աշխարհում ստեղծվող արժեքների գանձարանը:

Անդրեյ Բելին ցնցող տպավորություններ ստացավ Հայոց լեռնաշխարհից, մեր անկրկնելի բնությունից: Նա շրջեց երեք հազարամյա Երևանի՝ այն ժամանակվա ծուռումուռ նրբանցքները, հիացավ հինավուրց անկյուններով, կանաչազարդ բակերով, դարպասների նետաձև սլացքով, ճարտարապետական անտիկ կոթողների մնացորդներով, տեսավ, թե ինչպես է փլուզվում այն ամենը, ինչ հնացել էր, խարխլվել, տեսավ, թե կավաշեն, ցածրակտուր տնակների փոխարեն ինչպես են վեր խոյանում հոյատեսիլ շենքերը՝ Թամանյանի ոճով: Սարյանական արվեստ, թամանյանական ոճ. այս խոսքերը լավ են բնորոշում Անդրեյ Բելու տեսած կառուցվող Երևանը, մոխիրների ու փլատակների միջից հառնող Հայաստանը: Հիասքանչ են Թամանյանի կառուցումները: «Թամանյանի մոտ ես տեսնում եմ «ժողովրդական» ճարտարապետության ոճը,— ասում է բանաստեղծը,— Թամանյանը ոչնչացնում է հին թաղամասերի մի մասը, Անիի հին ոճը կիրառելով նոր նշանաբաններով: Մի խոսքով նոր կյանքը հորդում է աղբյուրի նման»— հիացմունքով բացականչում է հայ ժողովրդի բարեկամը:

Ռուս գրողը սիրով է նկարագրում գեղանկարչության Երևանի նորաբաց թանգարանի «սրտաբաց դահլիճները», որտեղ նշանավոր շատ ստեղծագործություններ են ցուցադրված, բայց Սարյանը ծածկում է բոլորը: «Հաղնում է Պետրով-Վոդկին նշանաբանը՝ «գեղանկարչությունը տեսնելու գիտություն է»: Ես երկու օր է արդեն տեսել եմ Հայաստանը, բայց առաջին անգամ այն տեսա Սարյանի կտավներում»:

Անդրեյ Բելին ռուսներից թերևս առաջինն է եղել, որն ըստ արժանվույն գնահատել է նաև ճարտարապետ Թորոս Թորամանյանի կատարած վիթխարի գործը: Երևանում

ծանոթանալով պրոֆեսոր Իոսիֆ Ստրժիգովսկու «Հայաստանի շինարարական արվեստը և Եվրոպան» գերմաներեն մեծարժեք աշխատությանը, որը, ցավոք, մինչև այժմ թարգմանված չէ ոչ ռուսերեն և մանավանդ ոչ էլ հայերեն, Անդրեյ Բելին գրել է, որ Ստրժիգովսկին պատկառանք է ազդում եվրոպական ձևերի իրազեկությամբ, սակայն, նրա համար կրակից շագանակ է հանել այդ գործի ֆանատիկ Թորամանյանը՝ մի հիանալի մարդ, որն իր ամբողջ կյանքում ծաղրուծանակի տարափի տակ փորել է, չափագրել ավերակները, կռահումներ արել, վերականգնել Զվարթնոցի տաճարի մոդելը... Ստրժիգովսկու գիրքը երկուերրորդի չափով գրված է Թորամանյանի կյանքի աշխատանքով:

Ռուս գրողը այսօրվա իր ընթերցողներին հետադարձ հայացքով առաջնորդում է դեպի 20-ական թվականների Երևանը, Ռոմանոս Մելիքյանի հետ մեզ տանում է լսելու «սազանդարների համերգը» տեսնելու նկարչական տեխնիկումը, որն այսօրվա Թերլեմեզյանի անվան ուսումնարանն է, նորակառույց էլեկտրակայանը, «Գունագեղ պայծառ շուկան», Զանգվի հին կամուրջը, գեղատեսիլ ձորը, կոնյակի հռչակավոր գործարանը, հուզիչ հանդիպում է կազմակերպում «Հայ գրող Չարենցի հետ, որի հետաքրքիր վեպը՝ «Երկիր Նաիրին» նա կարդում էր այն օրերին...

Ղարաքիլիսա—Դիլիջան —Սևան —Երևան—Էջմիածին. 1928 թվականին այս երթուղով է անցել Միխայիլ Կոլցովը:

Այսօրվա Կիրովականը ռուս գրողին երևաց որպես ասիական Տիրոլի: Կիրճերը, լեռնագոգերը, լեռնանցքները մի ժամանակ հայտնի են եղել նշանավոր պարտիզանների արկածներով,— իր ռուս ընթերցողներին պատմում է Կոլցովը:— Լեռնային հայ դուբրովսկիները թալանել են փոստա կառքերը, ոտից գլուխ մերկացրել եկվոր դատախազներին ու իսպրավնիկներին և ցուցադրաբար օգնել հայ ընչազուրկներին: Բայց այժմ խաղաղություն է տիրում լեռնային Հայաստանի նույնիսկ ամենախուլ վայրում: «Հայ դուբրովսկիների» զավակները հիմա պանիր են պատրաստում ինչպես ներքին սպառման, այնպես էլ արտահանության համար, «հրաշալի պանիր՝ արցունքի կաթիլով, արցունքի միակ տեսակով, որն այժմ օրինականացված է Հայաստանում»:

Սովետական առաջին տարիներին, ինչպես հանրապետության շատ ու շատ շրջաններ, այնպես էլ Սևանի ավազանը դեռևս անհրապույր, բարձիթողի, գրեթե ամայի վայրեր էին: Սևանը հենց այդպես երևաց ռուս գրողին. ծովափը չարագուժորեն մութ է, պողպատե ջրի ափերին կանգնած են լավայակերտ մերկ պղնձալեռներ՝ չոր, անիրական, ուրվականային, ինչպես լուսնի անմարդաբնակ բնապատկեր: Բայց Սևանա կղզին,— այն ժամանակ դեռ թերակղզի չէր,— շատ է գրավում Կոլցովին: Նա զարմանքով ու հիացմունքով է նկարագրում «հսկայական քարազանգվածներով շինված տաճարները..., որոնք ավելի քան հազար տարվա կառույցներ են... խստաշունչ պարիսպները վերածնում են վաղ միջնադարի հուշը...»:

Ելենովկայից, որն այսօրվա Սևան քաղաքն է, ճանապարհն անցնում է սարահարթով: Օդում ցածր, շատ ցածր ճախրում է մի արծիվ: Ռուս գրողը, որը իր բազմաթիվ հոդվածներով ժամանակին հռչակված երգիծաբան ու լրագրող էր նաև, առիթը բաց չի թողնում սրամտելու. «Հետո օդում երևացին ևս երկու արծիվ,— գրում է նա,— այնուհետև էլի մեկը և ի վերջո միապետական վարչակարգի կենդանի էմբլեմաների մի ամբողջ երամ սկսեց բարեհոգաբար ուղեկցել մեր բոլշևիկյան քարավանը»:

Հայոց նոր ոստանը... Այստեղ Կոլցովն առաջին իսկ հայացքից զգաց, որ Երևանի համար դժվար է ասել, թե դուք ընկել եք արևելյան մի հմայիչ քաղաք, որն ընկղմված է դարավոր քաղցր նիրհի մեջ և որտեղ տիրում էր մեղկությունն ու էկզոտիկան: Ոչ: Ահա հայ նոր գրականության հիմնադիր Աբովյանի անունը կրող պողոտան, որը քաղաքի առանցքն է: Փողոցի երկու կողմում շարք են կազմել զանազան ղեկավար հիմնարկներ, մոսկովյան և անդրկովկասյան կոոպերատիվ ֆիրմաների բաժանմունքներ, որոնք ընդհանուր առմամբ արդիական են, սովորական, և դրանց կենդանություն է հաղորդում անհամեմատ դեմոկրատական տեսք ունեցող մարդկանց բազմությունը...

Վերընձյուղվող նորի պատկերը Միխայիլ Կոլցովը տեսնում է ոչ միայն կենտրոնական փողոցում, «Փորձեցեք նույնիսկ ամենանահամեստ զիգզագը կատարել այդ նույն Աբովյան պողոտայի առանցքից, և ձեր առջև կբացվի երևանյան առօրյայի ամբողջ թափը»: Միանգամայն նոր փողոցներ, հպարտ կանգնած նոր տներ, որոնք ձեզ դիմավորում են վարդագույն ժպիտով... «Տներում, ամեն քայլափոխի կայծկլտում է էլեկտրական լույսը: Նորակերտ մեծ շենքերում հավաքվում են գործարար տեսքով, պորտֆելավոր մարդիկ, զնգում են հեռախոսները, չխկչխկում են գրամեքենաները...»:

Էլ ի՞նչ «արևելյան քաղաք», էլ ի՞նչ մեղկություն, ի՞նչ էկզոտիկա ու հեքիաթային



անդորր... Մայրաքաղաքը անխոնջ աշխատում է, ոչ մի րոպե չթուլացնելով իր պիրկ մկանները: «Ծերուկ Արարատի շուքի տակ, նահանգական քաղաքի փոշոտ, ծուռումուռ փողոցներում, անճանաչելիորեն վերափոխելով նրան, հառնում է վերածնված մի քաղաք՝ անչափ հետաքրքիր, գեղեցիկ ու արդիական», որը Սովետական Հայաստանի մայրաքաղաքն է:

Ռուս գրողի վրա հետաքրքիր տպավորություն է թողել բազմալեզու արևելյան սրճարանը, որտեղ սիրում էր իր հանգիստն անցկացնել 20-ական թվականների Երևանի ստեղծագործական մտավորականությունը. «Ուշ երեկոյան,— գրում է նա,— չներկած հասարակ սեղանների շուրջը հավաքվում են ծանոթ-բարեկամները կամ պարզապես զրուցակիցները և բուրումնավետ, գոլորշի արձակող սրճի փոքրիկ գավաթները կումկում դատարկելով, խաղաղ զրուցում... Այնուհետև աստիճանաբար բորբոքվում է մի ընդհանուր զրույց. Եվ բանավեճ՝ մինչև առավոտ»: Այստեղ մեր ռուս բարեկամը հարկադրված է Փարիզից եկած ուրախ ու անհոգ հայ ողբերգակի հետ բացատրվել ֆրանսերեն, հեռավոր Նյու Յորքից ժամանած հայ արձակագրի հետ խոսել անգլերեն, Վիեննայից ներգաղթած երաժշտական քննադատի հետ բանավիճել գերմաներեն.— «Այստեղ մարդիկ կան բոլոր երկրներից, աշխարհի բոլոր ճանապարհներն այստեղ են բերում հայ աշխատավորների բարեկամներին. իսկական հայկական Հռոմ է»,— բացականչում է մոսկվացի մեր հյուրը:

1928 թվականի հուլիսի 25-ի շոգ կեսօրին մարդատար մի ավտոմեքենա դանդաղ անցնում էր Ելենովկայի գյուղամիջյան փոշոտ ճանապարհով: Մեքենայում նստած էին Հայաստանի երիտասարդ կառավարության անդամներից մի քանիսը և բարձրահասակ, արծվահայաց, փոքր-ինչ թախծոտ աչքերով մի մարդ: Մեր բարեկամ Մաքսիմ Գորկին էր: Նա ընդամենը մի քանի ամիս առաջ էր հայրենիք վերադարձել հեռավոր Կապրիից և ահա երկար ճանապարհորդություն ձեռնարկելով, զարմացած նշում է, որ «ամենուրեք, Սովետների Միության երկրի բոլոր կետերում մեծիմաստ համարձակ փորձեր են արվում, նոր կյանք է կառուցվում: Կառուցման այդ թափը առաջինն է, որ աչքի է զարնում, երբ մոտենում ես Երևանին»:

Երևան և Արարատ: Անբաժանելի եղբայրներ են դրանք, բիբլիական ժամանակներից հայկական հողում վեր խոյացած երկու գագաթներ, որոնք միանգամից են բացվում ճանապարհորդի աչքի առջև:

Լեռը համր վկան է եղել քաղաքի ապրած բոլոր արհավիրքների ու դաժան փորձությունների և, թվում է, թե նա իր ժայռեղեն զանգվածի խորխորատներում կուտակած պահում է տառապյալների հառաչանքն ու անեծքը, նվաճողների հաղթական գոռում-գոչյունը, նժույգների խրխինջն ու սմբակների դոփյունը... Այրվող տների բոցը ճարակել է խնկահոտ ցորենի դեզերը, մագաղաթ դարձած իմաստուն մրտքերը, լիզել է մանրաքանդակ գորշ քարերը, և դժվար է ասել, որն է ավելի շատ շիկացել, խանձել խաչքարերը՝ լեռան հետևից բարձրացող արևի սկավառա՞կը, թե՞ համատարած հրդեհների կրակը:

Բայց առավոտն ահա իր կարմիր մատներով բարձրացնում է երկգագաթ լեռան կապույտ շղարշը, և Արարատը վեհապանծ հանում է կարմրավուն ամպերի գլխարկը, գլուխը խոնարհելով անցյալի տխուր հիշատակների և այսօրվա բերկրալից աշխատանքի առջև: Երևանը հեռվից, Արարատի մռայլ զանգվածի պաստառին, Գորկու վրա այն տպավորությունը թողեց, թե «բանտարկված է շինարարական տախտակամածների վանդակում, որի վրա բանվորների մրջնային կերպարանքները նոր շենքեր են քանդակում՝ ասես անմիջապես բիբլիական լեռան քարե զանգվածից»:

Սովետական այս մի քանի տարիների ընթացքում, որ Հայաստանի և հայ ժողովրդի նոր օրերի լուսաբացն են, այստեղ արդեն կառուցվել են արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ, հիանալի էլեկտրակայան, որի էներգիան աշխատեցնում է ձեթի, օճառի, բամբակազտման նորաշեն գործարանները և պայծառորեն լուսավորում քաղաքի տներն ու փողոցները: «Երանդուն առաջ է մղվում բանվորական բնակարանների շինարարությունը,— վկայում է Գորկին,— ամենուր զգացվում է խելացի տիրոջ խիզախ ձեռքը, և շարժումը քաղաքում մեծ տոնի նախօրյակի շարժման բնույթ է կրում»:

Մեր ռուս բարեկամը ուրախությամբ է նկատում, որ ամբողջ Հայաստանում երկրաբանական հետազոտություններ են ծավալվել: Արդեն կատարվել է մի հայտնագործություն, որը հայերին, անշուշտ, զգալի միջոցների կընձեռի երկրի արդյունաբերության և մշակույթի զարգացման համար. Արագած լեռան ստորոտներում հրաբխային տուֆի շատ հարուստ հանքեր են գտել: Գորկին պատմում է, որ այդ շինանյութից են կառուցված իտալական Նեապոլի ծովածոցի առափնյա բոլոր քաղաքները: Բայց հայկական տուֆաքարը Վեզուվի տուֆից ավելի կարծր է, մեխը խփելիս չի ջարդվում և միաժամանակ հեշտությամբ կտրվում է գրեթե օճառի պես: Գոր-

կին գրողի երևակայությամբ և շինարարի մասնագիտական քաջահմտությամբ է պատկերում այդ արժեքավոր շինանյութի մշակման հեռանկարները: «Հենց քարհանքում, գրում է նա,— տուֆից կարելի է պատրաստել դռների ու լուսամուտների շրջակալներ, բարձակներ, քիվեր, սյուներ, ճարտարապետի տված չափերով կտրել ամեն ծավալի խորանարդներ... հանքապաշարները հասնում են հարյուրավոր միլիոն տոննաների» և այդ մեծ հարստությունը խելացի օգտագործելու համար արդեն առբերման երկաթագծեր և ճանապարհներ են կառուցվում:

Ռուս գրողին ուրախացնում է մշակութային շինարարության և լուսավորության գործի թափը: Կառուցվում են դպրոցական շենքեր, հիանալի է կազմակերպված պատմության թանգարանը, նախատեսված են բազմաթիվ աշխատանքներ, որոնք պետք է արագորեն վերափոխեն երկրի մշակութային կյանքը: Նրան հատկապես հուզում են ժողովրդի ընդերքից ելնող, նոր օրերի լուսաբացին շքեղորեն վերընձյուղվող տաղանդները: Գորկին շատ պատկերավոր ու սիրով է նկարագրել ժողովրդական ինքնուս կոլեկտիվների ստեղծագործությունը, սասունցիների անկրկնելի պարը, որը նա դիտել է իր պատվին կազմակերպված ցերեկույթի ժամանակ, Երևանի զբոսայգիներից մեկում:

Վասիլի Սեմյոնովիչ Գրոսմանը Հայաստանից տուն հղած նամակներում սրտնեղում է, որ այստեղ գրեթե մեն-մենակ է. «Ոչ ոքի չեմ տեսնում Քոչարից բացի, ոչ ոք չի զանգում, չի ծանոթանում»: Ով գիտե, գուցե զգուշամիտ Հրաչյա Քոչարը հենց դիտավորյալ էր իր հյուրի համար ստեղծել «պատվավոր մեկուսացման» մըթնոլորտ, չէ որ Գրոսմանն արդեն «շնորհազրկված» էր, երբ Քոչարի հրավերով Հայաստան եկավ իր վեպը թարգմանելու: Համենայնդեպս Գրոսմանը մի տեղ կարողացավ չարաճճի սփոփանքով սփոփել իրեն. Երևանում ոչ ոք չէր հիշում նաև Օսիպ Մանդելշտամի այցելությունը... Քոչարը իր հյուրի խնդրանքով նույնիսկ զանգահարել է ավագ սերնդի մի քանի բանաստեղծների, բայց «նրանք չգիտեին, որ Մանդելշտամը եղել է Հայաստանում»:

Ռուս նշանավոր բանաստեղծ Օսիպ Մանդելշտամը Հայաստան է այցելել 1930 թվականին: «Ճանապարհորդություն Հայաստանում» ակնարկում նա իրեն հատուկ անվրեպ վրձնահարվածներով է կենդանացրել և արտահայտիչ դարձրել իր տեսած հայ մարդկանց: Աշոտ Հովհաննիսյանին նա հանդիպել է դեռևս Մոսկվայում, Արևելքի ժողովուրդների ինստիտուտում, ուր մտել էր խնդրելու, որ իրեն օգնեն հին հայերենը ուսումնասիրելու հարցում: Պատկառելի ակադեմիկոսը այն ժամանակ դեռ երիտասարդ գիտնական էր. «Նրա պրոմեթևսյան գլուխը կվարցե ուժեղ լապտերների նման ծխագույն, մոխրակապույտ լույս էր արձակում... Գանգուր կոշտ մազերի կապտասև խոպոպները ինչ-որ բան էին պարունակում կախարդական հավքի փետուրի արմատային ուժից... Աչքերի որձաքարե կապույտ մոայլը մի ժպիտ արժեր...»:

Սևանում, երբ դեռ կղզի էր, Մանդելշտամի բախտից այդ ամառ հավաքվել էր «խելացի ու տոհմիկ ծերունիների մի ամբողջ պատկերասրահ՝ հարգարժան գավառագետ Ի. Յակ. Ս-ն, հնագետ Խաչատրյանը, կենսախինդ քիմիկոս Ղամբարյանը»: Մանդելշտամն առանց որևէ գրական ճիգի, հըՆթացս գտնում է այն միակ ու անփոխարինելի խոսքերը, այն կարճ ու հատու բնութագրերը, որոնք իր էպիզոդիկ հերոսների ոչ միայն արտաքինն են բացահայտում, այլև լույսի վայրկենական ուժեղ բռնկումի նման լուսավորում են ներսից:

Եվ ահա այսպես, առանձին անհատներից ստացած տպավորությունները օր-օրի ընդարձակվում են, խառնվում Սևանի ձկնորսների, փականագործ-ջրմուղագործների, գյուղական մտավորականության, հողի աշխատավորների ոլորտները, և Հայաստանի հյուրը արդեն որոշակիորեն տարբերում է մեր, այսպես ասած, ազգային դեմքը՝ «Հայերի կենսական լիցքը, կոպիտ քնքշությունը, աշխատանքային ազնիվ ոսկորը, անբացատրելի զզվանքն ամեն տեսակի մետաֆիզիկայից և հիանալի մտերմությունը իրական առարկաների աշխարհի հետ»: Նա ընդգծում է, որ իր եռուն գործունեությամբ փառաբանված այդ ժողովուրդը, սակայն, «ապրում է ոչ թե կայսրանի կամ հիմնարկի ժամացույցով, այլ արևի ժամացույցով»:

Այո, մեր նոր կյանքի առաջին տասնամյակում հայ ժողովուրդն արդեն հարություն էր առել ի մեռելոց և իր կյանքն ու մեծագործությունները ստուգում էր արդեն Արևի ժամացույցով:



# ԱՄՆ-Ի ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՅՈՒՄ «ԱՊԱԳԱՂԱՓԱՐԱՅՆԱՑՄԱՆ» ԵՎ «ՎԵՐԱԳԱՂԱՓԱՐԱՅՆԱՑՄԱՆ» ՄԻՏՈՒՄՆԵՐԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ իրավիճակն ԱՄՆ-ում, ինչպես և կապիտալիստական ամբողջ աշխարհում, բնորոշվում է միմյանց հակասող տարբեր կողմնորոշվածության միտումների գոյակցությամբ: Դա, մի կողմից, բարձր ակտիվությունն է աջ պահպանողական ուժերի, որոնք ձգտում են պահպանել վերջին տասը տարիներին իրենց նվաճած իշխող դիրքերն արևմտյան երկրների գաղափարաքաղաքական կյանքում, մյուս կողմից՝ հետզհետե էլ ավելի է իրեն զգացնել տալիս հասարակության լայն շերտերի դիմադրությունն այդ կուրսին, շերտեր, որոնց սրտովը չէ պահպանողականների անզիջում դիրքորոշումը, այն է՝ հասարակությունը անփառունակ անցյալի գաղափարական ստերեոտիպերին կուրորեն հետևելուն կողմնորոշելը: Կարևոր է նկատի ունենալ, որ այդ դիմադրությունն աճում է մտքերը հեղափոխականացնող նոր քաղաքական մտածողության ազդեցության ներքո, որը մարմնավորվել է ՍՄԿԿ-ի կողմից անցկացվող վերակառուցման ու հրապարակայնության քաղաքականության մեջ և արմատապես փոխում է Արևմուտքում մեր հասարակության մասին հաստատված պատկերացումները: «Մենք նոր մտածողության ձևավորման նշաններ ենք տեսնում շատ երկրներում, հասարակության տարբեր շերտերում»,— գրում է իր գրքում Մ. Ս. Գորբաչովը (տե՛ս Մ. Ս. Գորբաչով, **Վերակառուցումը և նոր մտածողությունը մեր երկրի և ամբողջ աշխարհի համար:** «Հայաստան» հրատ., 1988, էջ 181):

Միջազգային ասպարեզում նկատվող դրական տեղաշարժերը, անշուշտ, չեն կարող հիմք ծառայել ապագայի մասին պարզեցված պատկերացումների համար: Խոսելով համաշխարհային քաղաքականության մեջ նոր մտածողության ձևավորման մասին, Մ. Ս. Գորբաչովը նշում է, որ այդ պրոցեսը մեծ դժվարությամբ է ընթանում: Զարգացած կապիտալիստական երկրներում դեռևս մեծ ազդեցություն ունեն պահպանողական ուժերը, որոնք հակված են դեպի գլոբալ զարգացման մեջ առճակատման սկզբունքը: Դեռևս ուժի մեջ է մնում նորագույն իմպերիալիստական գաղափարախոսության էվոլյուցիային ՍՄԿԿ XXVII համագումարի տված գնահատականը. «Պահպանողականության ավանդական ձևերը տեղը զիջում են ավտորիտար միտումներին» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 19):

Հենց դրա համար էլ բուրժուական, հատկապես ամերիկյան, երկրների քաղաքական գիտակցության էվոլյուցիայում նորագույն միտումների մարքսիստական քննական վերլուծությունն այսօր ևս հրատապ է, նույնիսկ այդպիսի վերլուծական աշ-

*ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՀՄԱՅԱԿ ԿՈՆՍՏԱՆԴԻՆԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու*

այդպիսիք ակտիվ կերպով օգտագործվում են ԱՄՆ-ի կառավարող շրջանների կողմից: Այսպես, պրեզիդենտ Ռեյգանը հազվադեպ է մոռանում իր ելույթները հագեցնել «ամերիկյան երազանքի», «հնարավորությունների հավասարության», «ԱՄՆ-ի ակնհայտ դերի», «ամերիկյան ժողովրդի աստվածընտրյալության» և այլ վկայակոչումներով, որը հիմք է տվել իրենց իսկ՝ ամերիկյան քաղաքագետներին պնդելու, թե ռեյգանյան վարչակազմը լուրջ հայտ է ներկայացրել լինելու արդի հասարակության մեջ ամենախոհունն ու գաղափարապես նպատակաուղղվածը:

Նեոպահպանողականության տեսաբանները, և դա կարևոր է ընդգծել, մեծ ջանքեր են գործադրում՝ հիմնավորելու «ամերիկյան հավատամքի», «արտագաղափարախոսական» բնույթը: Այս իմաստով նրանք գրում են, որ ԱՄՆ-ի «դեմոկրատական ավանդույթը» զերծ է ուրիշ երկրներին հատուկ գաղափարական տարանջատվածությունից և նրան խորթ է «գաղափարախոսական մտայնությունը», ուստի և վերջինիս պետք է հակադրվեն «ամերիկյան իդեալիզմի», «հակադոգմատիկական» դրույթները, որոնք իբր ոչ միայն կախված չեն ամերիկյան բուրժուական հասարակության իշխանության հաստատություններից, այլև որպես «ազգային միասնության առաջնագույն հիմք» պատմականորեն նախորդել են այդ հաստատություններին: «Եթե Եվրոպայում գաղափարախոսությունը զարգացել է արդեն գոյություն ունեցող ազգային համակեցության և պետության համատեքստում,— պնդում է Ս. Պ. Հանտինգտոնը,— ապա ԱՄՆ-ում գաղափարախոսությունը իրենից ներկայացնում է դեռևս նախքան ազգային համակեցության և քաղաքական համակարգի ձևավորումն առաջացած «ամերիկյան հավատամքի» սկզբունքները:

Այստեղից նեոպահպանողական տեսաբանները եզրակացնում են, թե բուն Միացյալ Նահանգներում, ինչպես նաև միջազգային ասպարեզում կատարված փոփոխությունների ազդեցությունից խարխլված «ամերիկյան հավատամքի» վերակենդանացման դիրքորոշումը չի հակասում «տոտալ գաղափարախոսությունների» մահացման վերաբերյալ «ապագաղափարայնացման» տեսաբանների կանխագուշակությանը: Այդ առումով խիստ բնորոշ է վերջերս լույս տեսած «Համերաշխություն և գժտություն» գիրքը, որի հեղինակն է Ս. Մ. Լիպսետը՝ անցյալում «ապագաղափարայնացման» տեսության առաջատար տեսաբաններից մեկը, իսկ այժմ նեոպահպանողական «ուղեղային տրեստի» այդ ճանաչված հեղինակությունը:

Նշելով, որ «ապագաղափարայնացման» տեսությունը 60-ական թվականների վերջին և 70-ական թվականների սկզբին հայտնվելով քննադատության կրակի տակ, դրամատիկական ձախողման է ենթարկվել, Ս. Մ. Լիպսետը այնուամենայնիվ պնդում է Արևմուտքում զանգվածային սոցիալական շարժումների գաղափարախոսությունների մայրամուտի» անխուսափելիության վրա: Դրա հետ միասին նա համաձայնում է ապագաղափարայնացման տեսության նախահայր, գերմանական սոցիոլոգ Կարլ Մանհայմի հայտնի դրույթին, ըստ որի հասարակության համար դժվար կլինի չունենալ որևէ տրանսցենդենտ տարր, լինի դա ուտոպիայի ձևով, թե՝ գաղափարախոսության: Ամերիկյան տեսաբանը հատկապես շեշտում է, որ Մանհայմը կանխագուշակել է հին, դոգմատիկական գաղափարախոսությունների փոխարեն «իսկական» ու «անկեղծ» իդեալների վերելքը: Գերմանական սոցիոլոգի այս գաղափարի մեջ Լիպսետը փորձում է գտնել 70-ական թվականների սկզբին կործանման ենթարկված լիբերալ «համերաշխության» փոխարեն «ամերիկյան իդեալների» վերածննման հիմքի վրա «նոր» պահպանողական «համերաշխության» ձևավորման նեոպահպանողական քաղաքական դիրքորոշումը հիմնավորելու բանալին:

Լիպսետը չի կարող 60-ական թվականների իրադարձությունների կողքով անցնել, որոնցով նշանավորվել էին արդի կապիտալիստական հասարակության սոցիալ-քաղաքական հիմքերի դեմ բողոքի շարժումների վերելքը: Այդ իրադարձություններն ակնհայտորեն չէին տեղավորվում «ապագաղափարայնացման» սխեմայի մեջ, ծանրակշիռ փաստարկ հանդիսանալով նրա սնանկությունը հիմնավորելու օգտին: Սակայն ամերիկյան տեսաբանը նաև այս հարցում է ձգտում խույս տալ ինքնամերկացումից, պնդելով, որ «ապագաղափարայնացման» տեսաբանները, որոնց թվին է նա դասում, բացի իրենից, նաև Դենիել Բելին և Էդվարդ Շիլզին՝ ԱՄՆ-ում, ինչպես և Ռայմոն Արոնին՝ Ֆրանսիայում, կանխագուշակում էին «գաղափարախոսության մահացումը» բուրժուական հասարակության միայն հիմնական շերտերի միջավայրում, գիտակցաբար բացառելով ինտելեկտուալներին և ուսանողներին: Ընդ որում Լիպսետի կար-



ծիքով հենց սրանք էին իշխող համակարգի նկատմամբ «թշնամական» գաղափարախոսական գիտակցության կրողները և վերջին հաշվով հետպատերազմյան «լիբերալ համերաշխության» քայքայողները: Ինչպիսի տեսական հնարամտությունների էլ դիմեցին նեոպահպանողականները «երկչափանիշ տրամաբանությունը» ուժի մեջ պահելու իրենց ձգտումներում, որի վրա, ինչպես տեսանք, ի սկզբանե կառուցվել է «ապագաղափարայնացման» տեսությունը, ամեն մի անկանխակալ հետազոտողի համար անկասկած է ԱՄՆ-ի ժամանակակից քաղաքագիտությանը բնորոշ ձգտումը՝ քաղաքական պրոբլեմների լուծման նկատմամբ «պրագմատիստական» մոտեցում պնդող կոնցեպցիաների վրայից շեշտը գաղափարախոսությամբ հիմնավորված քաղաքական կուրսի անհրաժեշտությունն ընդունող կոնցեպցիաների վրա տեղափոխելը:

Այդ «տրանսֆորմացիան», պետք է ասել, այս կամ այն չափով գիտակցվում է հենց իրենց՝ նեոպահպանողական տեսաբանների կողմից: Այսպես, Նելսոն Ռոկֆելլերի նախաձեռնությամբ հատկապես ստեղծված «Ամերիկացիների համար քննադատական ընտրությունների գծով հանձնաժողովի» պատրաստած զեկուցումների ժողովածուի նախաբանում, մի ազդեցիկ կազմակերպության, որն ընդգրկում է «իշխանության միջանցքների» բիզնեսի և ակադեմիական շրջանների 42 երևելի ներկայացուցիչների, ժողովածուի խմբագիրներ ու կազմողներ Իրվինգ Քրիստոլը և Պաուլ Ուիվերը գրում են. «Թեև քաղաքագետները սովորաբար ավելի շատ հույս են կապում ողջախոհության հետ, քան ամեն տեսակ տեսությունների հավաքածուի, որոնք առաջարկում են քաղաքական փիլիսոփաները կամ սոցիոլոգները, կարևոր է հիշել, որ ողջախոհությունն ու նաև ի լրումն դրա գոյություն ունեցող հասարակական առաքինությունը սկիզբ են առնում գաղափարների բնագավառից: Այն, ինչը մենք սովորաբար անվանում ենք «ողջախոհություն» մարդկային բնության, սոցիալական կարգերի, միջազգային հարաբերությունների մասին գոյություն ունեցած տեսությունների մնացուկն է և այդ իսկ պատճառով այդ տեսությունները ստուգվում ու մաքրվում են փորձով»:

«Ողջախոհության» տակ հասկանալով այն ավանդական պատկերացումների ամբողջությունը, որը հատուկ է ամերիկացիների մեծամասնությանը և որը կազմում է հասարակական-քաղաքական «համերաշխության» հիմքը, Քրիստոլը գրում է, որ բուռն փոփոխությունների ու անկարգությունների շրջանում համերաշխությունը, որն առաջ է բերում «հասարակական կարծիք», խախտվում է ու ցաքուցրիվ լինում:

Ամերիկյան հասարակությանը համակած գաղափարաքաղաքական ճգնաժամի խուճապային գիտակցումը 70-ական թվականների սկզբին, նույն տասնամյակի վերջին փոխարինվեց ԱՄՆ-ի կառավարող շրջանների բացահայտ կողմնորոշումով դեպի «գաղափարական անտարբերության» հաղթահարում, տիրող դասակարգի գաղափարաքաղաքական համախմբում՝ հասարակական զարգացման երևան եկած օբյեկտիվ միտումներին ընդդիմակայելու համար: ԱՄՆ-ի հասարակական-քաղաքական կարգերը «ներքուստ պայթեցնել» սպառնացող «թշնամական ուժերի» մեքենայությունների առիթով դիտավորյալ աղետալի տրամադրություններ շիկացնելը, յուրօրինակ «զանգվածային պսիխոզ» լարելը տրամաբանական նախերգանք ծառայեց զանգվածային գիտակցության մեջ ակտիվ կերպով պահպանողական հայացքներ ներարկելուն, ամբողջ ճակատով մեկ գաղափարախոսական հարձակման անցնելուն: Այս պայմաններում գաղափարախոսության պրոբլեմը ցայտուն կերպով դրսևորել է իրեն որպես հակամարտ հասարակության մեջ դասակարգային տիրապետության անկապտելի բաղադրամաս:

Հարկավ, դա չի նշանակում, թե ԱՄՆ-ի գաղափարաքաղաքական կյանքում դեպի աջ կատարված տեղաշարժը պետք է գնահատել բացառապես իբրև աջ պահպանողական ուժերի գաղափարախոսական ճիգերի արդյունք: Այդպիսի մոտեցումը կհակասեր գաղափարախոսական վերնաշենքի հետազոտման մարքս-լենինյան մեթոդաբանությանը, որի հիմնական պահանջն է հասարակության հոգևոր ոլորտում այս կամ այն պրոցեսների օբյեկտիվ սոցիալ-տնտեսական պայմանավորվածության բացահայտումը:

Մոտիկից քննելիս պարզվում է, որ նեոպահպանողականներին հաջողվել է իրենց քաղաքական ծրագրի հիմնավորման համար օգտագործել ամերիկյան կապիտալիզմի սոցիալ-տնտեսական զարգացման մեջ այն իրական դժվարությունները, որոնք

ի հայտ եկան 70-ական թվականներին, հասցնելով «համընդհանուր բարեկեցության պետության» նեոլիբերալիստական կոնցեպցիաների վերաբերյալ զանգվածային հիասթափության: Տնտեսական աճի տեմպերի անկման պայմաններում տեղի էր ունենում պահպանողական գաղափարախոսության սոցիալական բազայի ընդլայնում ի հաշիվ այն սոցիալական խմբերի, որոնք ավանդաբար պաշտպանում էին նեոլիբերալներին: Հետպատերազմյան լիբերալիզմի սոցիալական բազայի հողմնահարումը, այսպիսով, ընթանում էր պահպանողական գիտակցության սոցիալական բազայի ընդլայնմանը զուգընթաց. դա ըստ էության միասնական պրոցես է, որն իր հանրագումարում զանգվածային պաշտպանություն է ապահովում նեոպահպանողականների քաղաքական ծրագրին: Եթե «հին միջին դասակարգի» աշխարհազգացողությունը բնութագրվում է կապիտալիստական վարգացման ժամանակակից միտումների հետ իր շահերի հակադրության հստակ գիտակցմամբ, ամեն կարգի փոփոխությունների մշտակայուն հոռետեսական ընկալմամբ, ապա «նոր միջին դասակարգի» աշխարհազգացողության համար, որի սոցիալական փորձը սահմանափակված է վերջին տարիների տնտեսական ու քաղաքական վերելքի պայմաններով, բնորոշ է վերաբերմունքը իր սեփական վիճակի կայուն բարելավման նկատմամբ որպես ինքնին հասկանալի, սովորական և անգամ անհրաժեշտ մի բանի: Այդ պատճառով էլ, երբ 70-ական թվականներին նկատվեց, որ «համընդհանուր բարեկեցության պետության» շրջանակներում այդ խավի տնտեսական վիճակի հետագա բարելավման աղբյուրները սպառվել են, նրա զգալի մասը, հիասթափվելով իր սեփական լիբերալ հավատամքից, ակտիվ պաշտպանություն հանդես բերեց Ռեյգանի վարչակազմի նկատմամբ, և դա արվեց չնայած այն բանի, որ նրա կողմից իրականացվող «նոր ֆեդերալիզմի» քաղաքականությունը, ուղղված տեղական իշխանություններին հիմնական տնտեսական և սոցիալական ծրագրերի նկատմամբ վերահսկողությունը վերադարձնելու նպատակին, էապես խախտել էր «նոր միջին դասակարգի» քաղաքական դիրքերը: Զգտելով ընտրել «չարյաց փոքրագույնը», ամեն գնով հատուցել իր տնտեսական կորուստները, «նոր միջին դասակարգը» զոհաբերելով չքավորագույն խավերին և իր լիբերալ հայացքները, պաշտպան կանգնեց պահպանողականներին, փոխարենը ստանալով հարկերը իջեցնելու, գործնական ակտիվությունը խթանելու, ինֆլյացիան վերացնելու և այդպիսով նոր տնտեսական վերելքի համար պայմաններ ապահովելու խոստումը:

Նեոլիբերալ գաղափարախոսության ճգնաժամն արտահայտվեց, մի կողմից, նրա քաղաքական տնտեսական դիրքորոշումները վերաիմաստավորելու փորձերի մեջ՝ նոր պայմաններին դրանց ի հայտ եկող անհամապատասխանության լույսով, իսկ մյուս կողմից, նրա աջ, լիբերալ տեխնոկրատական թևը նեոպահպանողականության դիրքերին անցնելու մեջ: Այդ անցման կարևորագույն հետևանքը եղավ «ապագաղափարայնացման» տեսությունից փաստորեն հրաժարվելը, գաղափարախոսություն՝ որպես ժամանակակից կապիտալիստական հասարակության մեջ քաղաքական տիրապետության մշտակայուն գործոնի վրա, գիտակցված հաշվարկ կատարելը:

ԱՄՆ-ում հասարակական գիտակցության կախվածությունը իմպերիալիստական գաղափարախոսության տիրապետող ձևերից, մասնավորապես նեոպահպանողականությունից, հատկապես ուժեղ է աշխատավորական զանգվածների ներքին տարանջատվածության հետևանքով, որը զանգվածային գիտակցության մեջ բուրժուական գաղափարախոսության թափանցման յուրահատուկ գործոն է Ամերիկայի համար: Այդ տարանջատվածությունը պայմանավորված է ինչպես ամերիկյան ժողովրդի ձևավորման առանձնահատկություններով, որը, ինչպես հայտնի է, առաջ է եկել ներգաղթի հաշվին, այնպես էլ Միացյալ Նահանգներում աշխարհի մնացած մասի համեմատությամբ կապիտալիստական սիստեմի ավելի ուժեղ լինելով: Ամերիկյան բանվորների դասակարգային գիտակցության զարգացումն արգելակող մյուս յուրահատուկ պատճառը կանխորոշված է այն հանգամանքով, որ ԱՄՆ-ում ազգային գիտակցությունը հենց սկզբից ձևավորվել է կապիտալիստական արտադրահարաբերությունների բազայի վրա, ընդ որում ինչը չափազանց կարևոր է «այնպիսի պայմաններում, որոնք ժողովրդական մասսաների համար առավել նպաստավոր են կապիտալիզմի օրոք հնարավոր բոլոր պայմաններից» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 17, էջ 180): Այդ պատճառով էլ այնտեղ այդպես կենսունակ դուրս եկան բուրժուական յուրահատուկ առասպելները, ինչպիսին է «ամերիկյան երազանքը», որը մինչև օրս ազդեցություն է գործում շարքային ամերիկացիների գիտակցության ու հոգեբանության վրա:



Ամերիկյան նեոպահպանողականների համար բնորոշ է զանգվածային գիտակցության վրա գաղափարախոսական ազդեցության բոլոր հնարավոր միջոցներն օգտագործելու ձգտումը: Ընդ որում հատուկ նշանակություն է տրվում այսպես կոչված «ավանդական արժեքների» արմատավորմանը, գաղափարական այն ստերեոտիպերին, որոնք գոյացել են ԱՄՆ-ում դեռևս կապիտալիստական հասարակության կազմավորման շրջանում և այժմ պահպանողական քաղաքագետների ու նրանց տեսություն մշակող հետևորդների կողմից օգտագործվում են հասարակական գիտակցությամբ ձեռնածություն կատարելու համար, ուղղված կապիտալիստական հասարակության իշխող հաստատությունների նկատմամբ Ամերիկայի բնակչության լայն խավերի լոյալությունն ապահովելու նպատակին: Բուրժուական մշակույթը դիտելով իբրև այդ նպատակին հասնելու գործուն միջոց, նեոպահպանողականները ձգտում են հիմնավորել «հատուկ հոգևոր գրաքննության» անհրաժեշտությունը, որը կոչված լինի վերացնել կապիտալիստական հասարակության մշակույթի գործիչների գիտակցության մեջ իր քաղաքացիական պարտքի, ժամանակակից աշխարհում իր ունեցած տեղի, մարդկության հոգևոր և բարոյական նորացման գործում իր դերի ճիշտ ըմբռնման ծիլեր հայտնվելու ամեն մի հնարավորություն: «Ժամանակակից կապիտալիզմի հակամարդասիրական գաղափարախոսությունը,— ընդգծվում է ՍՄԿԿ Ծրագրում,— ավելի ու ավելի մեծ հարված է հասցնում մարդկանց հոգևոր աշխարհին: Ինդիվիդուալիզմի, բռնության և ամեն ինչի թույլատրելիության պաշտամունքը, չարամիտ հակակոմունիզմը, որպես հարստացման աղբյուր կուլտուրայի շահագործումը հանգեցնում են հոգեզրկության արմատավորման, բարոյական անկման: Իմպերիալիզմը ծնունդ է տվել մասսայական հանցագործությունների և տեռորիզմի, որոնք համակել են կապիտալիստական հասարակությունը: Հետզհետե ավելի կործանարար է դառնում մասսայական ինֆորմացիայի բուրժուական միջոցների դերը, որոնք թըմրեցնում են մարդկանց գիտակցությունը հօգուտ տիրապետող դասակարգի» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 185):

---

չի այդ ամենը կարող է մնալ սոսկ որպես ձևական ու թանկ արժեցող նորամուծություն, չդառնալ կենդանի գործ»։ Նրա դասերը բերկրալի հայտնության ու երկխոսության կվերածվեն, եթե նա մշտապես ինքնակրթությամբ զբաղվի, որոնումներ կատարի։ Ուսուցիչը հոգեկան բարեմասնություններ պետք է ունենա, օժտված լինի մանկավարժական լավատեսությամբ, հիշի, որ սաների սիրտը տանող ճանապարհն իր առաջ ընդմիշտ փակ կմնա, եթե նրանց հետ ընդհանուր հետաքրքրություններ, հրապուրանքներ, ձգտումներ չունենա։ Այս ճշմարտությունը լավ են հասկանում Լենինաձորի դասատուները։

Թագուհի Կոստանյանը և Էլմիրա Ավետիսյանը երիտասարդ մանկավարժներ են։ Առաջինն օտար լեզու է ավանդում, երկրորդը՝ տարրականի դասվար է։

— Ժամանակակից դպրոցի ղեկավարման էությունն այն է,— ասում է Թագուհին, որ դաստիարակության դժվարագույն գործում մեր աչքի առաջ ստեղծվի, հասունանա և ամրապնդվի այն լավագույն փորձը, որն իր մեջ մարմնավորում է առաջավոր մանկավարժական գաղափարները։ Ով ստեղծում է այդ փորձը, ում աշխատանքն օրինակ է դառնում մյուս դասվարների և ուսուցիչների համար, նա էլ պետք է դառնա դպրոցի ղեկավար։ Մենք, սկսնակներս, մեծ սիրով ու հետաքրքրությամբ ենք մասնակցում մեր դիրեկտորի վարած դասերին։ Դրանք բեմականացված ներկայացում-երկխոսություններ են, երբ ուսուցումը հմտորեն զուգակցվում է դաստիարակության հետ։ Այս մեթոդը հնարավորություն է ընձեռում դաստիարակել այնպիսի անհատ, քաղաքացի, որն ինտենսիվ սովորելու, ակտիվորեն աշխատելու և ինքնակատարելագործման ձգտումով է կյանք մտնում։ Դա ժամանակի պահանջ է, և դպրոցը պետք է քայլի ժամանակի հետ։

— Լենինաձորի դպրոցում աշխատելու տարիներին,— պատմում է Էլմիրան,— ես համոզվեցի, թե երեխայի կյանքում ինչպիսի վիթխարի դեր է խաղում տարրական դասարանների ուսուցիչը։ Մեր նկատմամբ փոքրիկ դպրոցականի հավատը, դասատուի և աշակերտի միջև հաստատված վստահությունը այն գրավականն են, որ ուսուցչին դարձնում են իսկական հոգևոր դաստիարակ։ Հենց այս չափանիշներով են մեր դպրոցում գնահատում ուսուցչի աշխատանքը։

Խոսելով ուսուցչի մասին, չի կարելի մոռանալ ուսուցչապետին. ինչպիսին դիրեկտորն է, այնպիսին էլ դպրոցն է։ Նա ուսուցչական և աշակերտական կոլեկտիվների կենտրոնն է, կազմակերպիչը, հեղինակությունը, կրթօջախի գլխավոր դաստիարակը։ Այդպիսին է Լենինաձորի դպրոցի դիրեկտոր, լրագրող ու բանաստեղծ, բանհավաք ու նորարար ուսուցիչ Ռոբերտ Գրիգորյանը։ Քառասունին մոտ հաղթանդամ, ժպտադեմ, խորհող ու առինքնող այրը լավ զրուցակից է, սրամիտ, կատակասեր, միշտ իր տարերքի մեջ։ Նոր էր վերադարձել Ղափանից։ Ավելի բարձր պաշտոն էին առաջարկել։ Մերժել էր, թե՝ իմ այսօրն ու վաղը այս դպրոցն է, դրանից մեծ ու պատվավոր գործ չկա ինձ համար։ Նրա համար գլխավոր ու ածանցյալ հարցեր չկան։ Դաստիարակության մեջ ամեն ինչ գլխավոր է՝ և՛ դասը, և՛ սովորողների բազմակողմանի հետաքրքրությունների բավարարումը դասերից հետո, և՛ նրանց փոխհարաբերությունը կոլեկտիվում։ Նրա համար դասը աշակերտների հետ համագործակցություն է, կոլեկտիվ ջանքերի համակցում։ Դասի նպատակադրումը, բովանդակությունը, ամեն ինչ ուղղված են հենց համատեղ աշխատանքին։ Անհատի գործունեության տեսակետից այն առաջին հերթին աշակերտի սովորելն է։

— Տարիների մանկավարժական փորձն ինձ, այնուամենայնիվ, վերջնական համոզման չի բերել,— ասում է Գրիգորյանը.— աշակերտը շատ բան ստանում է այն ժամանակ, երբ նայում է գրատախտակին, թե այն ժամանակ, երբ անհաղթահարելի ուժը նրան ստիպում է նայել պատուհանից դուրս։ Ո՞րն է նրա համար առաջնայինն ու գլխավորն այդ պահին՝ դասարանի սև գրատախտակի շրջանակներում պարփակված տրամաբանական աշխա՞րհը, թե պատուհանի ապակիների միջից երևացողը։ Ես ձգտում եմ, որ իմ սաները մինչև գիրք բացելը, առաջին բառը վանկ առ վանկ կարդալը, ընթերցեն աշխարհում ամենահրաշալի գիրքը՝ բնության գրքի էջերը։ Բնության գրկում հատկապես հստակ ու պայծառ է դրսևորվում մանկան ուղեղի հետ գործ ունենալու պրոբլեմը։ Մեծագույն զգուշություն է պետք յուրաքանչյուր մանկավարժի, ով գործ ունի բնության մեջ ամենանուրբ և ամենաքնքուշ էակի՝ աճող ու զարգացող, մտածող ու դատող էակի հետ։

Լենինաձորցի Արշակ Ավետյանի որդին դպրոց եկավ մանկապարտեզից, որտեղ նրան սովորեցրել էին հաշվել տասի սահմաններում։ Տղայի նախադպրոցական պատրաստականությունը քննություն չբռնեց դպրոցի նոր պահանջներին։ Արսենը մեծացել է՝ առանց որոշակի հետաքրքրությունների։ Այդ հանգամանքը տանջում էր ծնողներին։ Մայրը բողոքում էր, որ տղան ոչ մի անգամ խաղալիքը չջարդեց, որպեսզի տեսնի նրա կառուցվածքը, ինչպես անում են մյուս երեխաները։ Ոչ մի անգամ պատերի վրա չխազմզեց, չարություններ չարեց։ Եվ ահա՝ դպրոց։ Այստեղ նրա կրթությունն ու դաստիարակությունը ստանձնեց սկսնակ մանկավարժներից մեկը։ Նվիրված դասվարներից էր. զգացմունքներով առլեցուն, առավոտից մինչև երեկո դպրոցում էր, դասերին օգտագործում էր դիդակտիկ նյութեր։ Բայց... ամեն ինչ իր տեղում չէր։ Արսենը դպրոցից տուն էր վերադառնում մի տեսակ ճնշված, առանց հոգու լույսի։ Գործին «միջամտեց» դիրեկտորը։

— Ես նկատել եմ, ասաց դասվարին, որ դու երբեմն «հարվածում» ես Արսենի ինքնասիրությանը, ուսումնական պրոցեսը զուգորդում նրա անձի նսեմացման հետ։ Երեխային պետք է գովել ու դրվատել բոլորի ներկայությամբ, իսկ հանդիմանել՝ մեն-մենակ։ Մեր նպատակն է բացահայտել յուրաքանչյուր անչափահասի հարուստ ու բազմազան հնարավորությունները, հաշվի առնել անձի առանձնահատկությունները, ընտանեկան պայմանները։ Մարդու դաստիարակությունը բազմաստիճան պրոցես է, բայց որոշիչը զգացմունքների, հոգու և մտքի դաստիարակումն է։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ մեկը մյուսից չի կարելի անջատել, բայց, այնուամենայնիվ, նրանց միջև եղած տարբերությունն ակներև է։ Պետք է քաջ գիտենալ, որ երեխան, անկախ մեր ջանքերից ու ցանկություններից, զարգանում է։ Մեր նպատակն է ճիշտ ընտրել և կիրառել դաստիարակչական այն ձևը, որն արդյունավետ է ու նպատակասլաց ամեն մի կոնկրետ դեպքում։ Հենց դրանում է մեր մասնագիտության գաղտնիքը։ Չէ՞ որ դաստիարակության պրոցեսն արտահայտում է ուսուցչի և սանի հոգևոր կյանքի, նրանց գաղափարների ու ձգտումների միասնությունը։

Ռոբերտ Գրիգորյանը դասվարին խորհուրդ տվեց սովորողների գիտելիքներն ու վարքը գնահատել աշակերտական ինքնավարության միջոցով։ Դա նրանց մեջ կբարձրացնի ինքնահրակողության և ինքնակառավարման մակարդակը, շիտակ և ազնվաբարո, իրատես և ճշմարիտ լինելու հատկություններ կզարգացնի։

Շուտով աշակերտական օրագրերում մանկական ձեռագրեր հայտնվեցին, ստորագրություններ, պարզ, անպաճույճ ու անմիջական դիտողություններ։ Դա կրկնապատկեց և եռապատկեց երեխաների պատասխանատվությունն ու եռանդը, դրական տեղաշարժեր նկատվեցին նրանց ուսման և վարքի մեջ։ Անչափահասի համար գաղափարն անբաժանելի է անձնավորությունից։ Այն, ինչ նրան ասվում է մտերմաբար ու կարեկցանքով, ընկալվում է բոլորովին այլ ձևով, քան այն, ինչ ասվում է աննրբանկատորեն։

Գյուղական դպրոցում Ռոբերտ Գրիգորյանի կատարած աշխատանքի երկու տասնամյակները նրա համար եղան մեծ, ոչ մի բանի հետ չհամեմատվող երջանիկ տարիներ, որոնումների, նվաճումների տարիներ։ Նա իր ղեկավարած դպրոցն անվանեց «Ուրախության դպրոց»— համոզված լինելով, որ իրավունք ունի այդպես կոչելու։ Աշակերտի ուսումնառությունը մի ամբողջ տասնամյակ է, որից հետո նա ոտք է դնում ինքնուրույն կյանքի ուղին։ Այդ ժամանակաշրջանը նորարար ուսուցիչը համարում է մարդու լինելիության շրջան, իսկ մանկավարժի համար՝ նրա կյանքի գեղեցիկ ու անկրկնելի հատվածը։ Նրա նպատակն է «փոքրիկ մարդու» հոգում արթնացնել և ամրապնդել ազնիվ զգացումներ և ապրումներ, նրա զգայուն սրտում ցանել մեր գաղափարներին հավատարմության սերմեր։ Յուրաքանչյուր մարդ, ով իրեն նվիրում է սերունդների դաստիարակությանը, պետք է քաջ գիտենա, որ մանկան աշխարհն առանձնահատուկ աշխարհ է։ Երեխաներն ապրում են բարու և չարի, պատվի ու անպատվության, մարդկային արժանապատվության իրենց պատկերացումներով, գեղեցիկի իրենց չափանիշն ունեն, ժամանակի սեփական չափը։ Նրանց հեքիաթային աշխարհը մտնելու համար մանկավարժն ինչ-որ չափով պետք է երեխա դառնա։ Միայն այդ դեպքում նրան սրտաբաց կընդունեն։

— Վերջերս ռադիոյով լսեցի ուսուցիչներից մեկի հարցադրումը. «Ի՞նչ իրավունքներ ունեն մանկավարժները»։ Ես այդ հարցին այսպես կպատասխանեի,— ասում է Գրիգորյանը,— ուսուցիչն այնպիսի իրավունքներ ունի, ինչ ծնողը. զգուշաբար, նրբորեն և ուրախ մեծացնել մարդուն։ Դրա հետ միասին ուսուցման առաջնահերթ նպատակն է սովորողներին գիտելիքներ տալ, սովորել սովորեցնել։ Առանց այս ամենի՝ դպրոց չկա։ Բայց ինչպե՞ս հասնել դրան. դասի ժամանակ ոչ թե վերապատմել նյութի բովանդակությունը, ինչպես անում են շատ դասատուներ, այլ աշակերտներին հնարավորություն ընձեռել ուսուցչի հետ միասին որոնել և գտնել հարցի պատասխանը կամ պատասխանները։ Նման համակարգում պետք չէ տնային հանձնարարություններով ծանրաբեռնել երեխային։ Նա չի կարող չորս-հինգ ժամ դասարանում աշխատել, այդքան էլ՝ տանը։ Ուսուցչի առաջնահերթ պարտականությունն է ամեն կերպ պահպանել սաների առողջությունը։

Փորձառու մանկավարժը առաջարկում է նորովի վարել դասը, այնպես, որ այն հին ու նոր թեմաներով սաների համար դառնա մի ամբողջական պրոբլեմ, ունենա լուծում և չլուծված հարցեր, որպեսզի մշտապես ուշադիր պահի ունկնդիրներին։ Դեռահասներն ու պատանիները դասի ժամանակ անկաշկանդ կարծիքներ, հիպոթեզներ ու եզրակացություններ պետք է առաջարկեն, իսկ մանկավարժը պիտի աշխատի սպառիչ պատասխաններ չտալ նրանց, սաների սխալ, անստույգ պատասխանների դեպքում միանգամայն ցածր գնահատականներ չնշանակի, չհանգցնի հետաքրքրության կայծը։ Սովորողները միայն այն ժամանակ կարող են հաստատուն համարել իրենց գիտելիքները, երբ ձեռք կբերեն ինքնուրույնաբար մտածելու, ինքնուրույն եզրահանգումներ անելու կարողություն։ Այդ առումով մեծ է պրոբլեմային ուսուցման, պրոբլեմային իրավիճակներ ստեղծելու, միջառարկայական կապերը հմտորեն օգտագործելու դերն ու նշանակությունը։

Մաթեմատիկայի դաս է վեցերորդում։ Աշակերտները նախորդ՝ պատմության դասի տպավորության տակ են. զրուցում են, վիճում Կուտուզովի, Բագրատիոնի, Նապոլեոնի մասին։ Մաթեմատիկայի ուսուցիչը, սակայն, չի հանդի-

# ՀԱՐԱԶԱՏ ՀՈՂԻ ԶԱՎԱԿԸ

ՀԼԿԵՄ ՄԵՂՐՈՒ ՇՐՋԿՈՄԻ առաջին քարտուղար Ենոք Անդրեասյանի սեղանին խնամքով գծված մի փոքրիկ քարտեզ կա: Գույնզգույն մատիտներով ներկված են լեռները, ձորերը, գյուղերն իրարից բաժանող սահմանները, ճանապարհները... Քարտեզը թեև տպագրական չէ, այնուամենայնիվ դժվար է տարբերել իսկականից: Քարտեզագիրը շրջկոմի ակտիվիստներից է... Առաջին հայացքից ինձ թվաց, թե քարտեզում սխալ է թույլ տրվել՝ ու՞ր են մնացել հանրային դաշտերն ու այգիները... Կարծես կռահելով հարցս շրջկոմի քարտուղարը ժպտաց.

— Սրան Մեղրի կասեն, ձորերի ու լեռծերպերի շրջան... Մեր դաշտերն էլ, այգիներն էլ մեր լեռներն են ու ձորերը...

Հիրավի իրավացի է շրջանի կոմերիտականների ղեկավարը: Նայում ես շուրջդ ու տեսնում միայն բարձրիկ, ասես սղոցով հատած սուր լեռնակատարներ՝ Հաչաքարը, Ույուղը, Կարմիր քարը, Բրդին քարը... Եվ այդպես շարունակ՝ քարը, քարը... քարերը: Իսկ քար-լեռների ստորոտում, բարակ առու-գետակների ափերին ծվարել են գյուղերը: Ու նորից նույն հարցը՝ ու՞ր է մեղրեցիների հողը: Բայց հող ասածն այստեղ այլ նշանակություն և իմաստ ունի: Արարատյան դաշտավայրի բնակիչն, օրինակ, հողը մշակում-վարում է ու բարիք ստանում, բայց, ահա, մեղրեցին սկզբից հող է ստեղծում, ապա մշակում և նոր միայն մտածում բերքի մասին: Այդպիսին է բնությունը՝ մի տեղ բուրաստան է ստեղծել, մեկ այլ տեղ՝ քարաստան: Եվ այդ քարաստանի մի կտորն էլ բաժին է ընկել մեղրեցիներին: Մի Մեղրի՝ մի Հայաստան: Ժայռերն այստեղ նման են իրար, բարակջուր գետակները՝ նույնպես... Բայց այս բոլորը միասին վերցրած մի ուրիշ պատկեր են ստեղծում՝ ոչ մի տեղ նմանը չունեցող տեսարան: Ասում են, թե Մեղրու լեռները խոր արմատներ ունեն, դարավոր ընկուզենու նման արմատներ, որ տարածվելով շրջապատի ընդերքում մոլիբդեն ու պղինձ, տուֆ ու խարամ են դառնում: Մարդն էլ նման է իրեն ծնող մորը՝ մայր հողին: Այս ժայռոտ-փշոտ հողին ամուր-կոշտ ձեռքեր էին պետք ու ջերմ, սիրող սիրտ, որպեսզի այդ քարն ու ապառաժը հող դառնային, կապանքված աղբյուրները դուրս ժայթքեին քարի տակից ու գետակ դառնային, որպեսզի մացառուտը այգի դառնար, որպեսզի խոր ընդերքում պահված պղինձն ու մոլիբդենը ծառայեին մարդուն: Մեղրու ապառաժներին հողի մշակի արյուն-քրտինքն է միացել ու ժայռերը հող են դարձել, բերք ու բարիքի աներևակայելի աղբյուր: Մարդու և հողի անքակտելի միությունն է երջանկության աղբյուրը: Մեղրեցին իր վանքերն ու տաճարները կառուցել է բարձրիկ լեռների ստորոտներին, որպեսզի երկրպագի այստեղ այդքան սակավ հողին ու ջրին...



Մայր հողի երկրպագուներից մեկն է Լևոն Սիմոնյանը, բնիկ մեղրեցին, ինչպես ասում են՝ «օխտը պորտով» կապված այս ժայռոտ բնակավայրին: Առաջին անգամ երբ ծանոթացա նրա հետ, չգիտեմ ինչու, ինձ թվաց, թե հին ծանոթներ ենք. մեղրեցու խոսքի անուշ երանգը, տրամաբանված հարց ու պատասխանը, լավատեղյակությունը շրջանի գործերին... Զրուցում ես նման մարդու հետ, խորանում կենսագրության, աշխատանքի, շրջապատի մեջ և հանկարծ հոգեհարազատ, մտերիմ ես գտնում: Իզուր չեն ասում, թե մարդը շրջապատի արդյունքն է, ինչպիսին շրջապատն է, այնպիսին էլ՝ մարդն է: Իսկ ի՞նչ շրջապատում է աճել Լևոնը: Այդ ինչպե՞ս է, որ մարդիկ գոհունակությամբ են խոսում նրա մասին և հարկ եղած պահին մատնացույց անում նրան: Ո՞րն է գաղտնիքը: Բազմաթիվ մեղրեցիների հետ զրույցներից պարզվել է, որ Լևոնի հեղինակության հիմքում ոչ մի գաղտնիք էլ չկա: Գլխավորը նրա վարքագծում վերաբերմունքն է դեպի աշխատանքը: Այդ հարցում նրա կարծիքը միանշանակ է՝ դեմքով դեպի աշխատանքը. սա է Լևոնի հավատամքը, դրանով է նա չափում աշխարհը, դրանով էլ մարդիկ նրան են գնահատում: Աշխատավոր մարդու համար ուրիշ չափանիշ գոյություն չունի: Լևոն Սիմոնյանը աշխատանքի սանդուղքով է կյանք մտել, շարունակել ճանապարհը և այժմ, երբ հետ է նայել անցած ուղուն, խորհել անցյալի և ներկայի մասին, շատ բան սրտովը չէ, թեև կյանքի ճամփաբաժանն արդեն հաղթահարել է: Բայց նա զենքերը վայր դնելու միտք չունի, որովհետև դեռևս անելիքներ կան, մարդիկ սպասելիքներ ունեն, դեռ չի հասել վերջին խոսքի ժամը:

Ամեն մի մեղրեցու բակ՝ մի փոքր Մեղրի է: Բետոնակուռ դարավանդները՝ մեջը բերովի հող... և այդ հողի վրա մրգատու ծառեր, նույնիսկ մերձարևադարձային բույսեր: Հենց այստեղ է, որ կարելի է տեսնել Շամիրամի կախովի այգիները: Մեղրու Փոքր թաղամասում այդպիսի մի այգի էլ ստեղծել է Լևոն Սիմոնյանը: Այստեղ հող դարձած ապառաժների բեկորներ կան, որոնց վրա Սիմոնյան գերդաստանի մատնահետքերն են: Լևոն Սիմոնյանին Մեղրիում ճանաչում են բոլորը՝ մեծ ու փոքր: Ճանաչում են և հարգում: Հայրը՝ Հովհաննեսը, որի անունն այսօր խորին հարգանքով են արտասանում նրան տեսած ու հետը աշխատած մարդիկ, քառասնական թվականներին աչքի է ընկել իր հերոսական աշխատանքով... 1943-ին նա մասնակցել է Կուրսկի հերոսամարտին: Հաղթանակած հայրենի Մեղրի է վերադարձել առանց զույգ ոտքերի՝ հենակներով, բայց կամքն ու կորովը մնացել էին անկոտրում: Մեղրին նա տեսավ դատարկված՝ տղամարդիկ ռազմաճակատում էին, աշխատող ձեռքի խիստ կարիք էր զգացվում, իսկ ինքը՝ հաշմանդամ ու հիվանդ...

— Ինձ հանդամաս տվեք, ես պետք է աշխատեմ,— կոլվարչությանը դիմեց զինվորը:

— Ախր, դու...

Զինվորը հուզվեց: Նա հասկանում էր կոլտնտեսության ղեկավարներին, որոնք պարզապես չէին ցանկանում ծանր գործի դնել իրեն: Բայց Հ. Սիմոնյանն անզիջում էր: Ու մարդիկ վստահեցին նրան հինգ հեկտար տարածություն՝ սակավահող Մեղրու կոլտնտեսությունից: Այստեղ և խաղողի որթեր կային և պտղատու այգիներ... Դա փաստորեն այսօրվա չափանիշներով գյուղատնտեսական կապալի նախատիպն էր, որ ստեղծվել էր ճակատային զինվորի պահանջով: Օգնականը կրտսեր որդին էր՝ Լևոնը, որն առավոտից մինչև ուշ երեկո հոր հետ էր, ուշի-ուշով հետևում էր ու տեսնում, թե ինչպես է նա անհավասար կռիվ տալիս բնության հետ ու բարձր արդյունքներ ձեռք բերում: Դա Լևոնի աշխատանքային առաջին համալսարանն էր...

Հենակավոր մարդը դժվարությամբ էր տեղաշարժվում այգում: Իսկ աշխատանքը, հատկապես գարնանն ու աշնանը չափազանց շատ էր: Այգեէտի ժամանակ գործը շատ էր դժվարանում: Հովհաննեսը հենակները մխրճում էր հողի մեջ, իսկ ինքը հենվելով խաղողի վազերին, սկսում էր էտը, հետո հերթը գալիս էր պտղատու ծառերին: Այստեղ արդեն նրան օգնում էր Լևոնը: Համագյուղացիները ակնածանքով էին շրջվում դեպի «Հովհաննեսի հանդամասն ու այգին», որը առաջավոր փորձի ու աշխատասիրության յուրօրինակ դպրոց էր դարձել: Նա ժամանակ էր գտնում զբաղվելու նաև անասնապահությամբ, շերամապահությամբ ու ամենուրեք բարձր բերք էր ստանում: Իսկ արդյունավետ ու նվիրված աշխատանքը չէր կարող չգնահատվել: Ահա և 1952 թվականին հրապարակվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը՝ Հովհաննես Սիմոնյանն արժանացել էր Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի:

Լևոնը հեռավոր Մեղրիում չտեսավ ռազմաճակատային թոհուբոհը: Պատերազմի սարսափը նա զգաց՝ հորը նայելով: Նրբազգաց պատանին հասկանում էր հորը, մի մարդու, որի կյանքը դժվարին էր եղել: Հայրը հորդորում էր որդուն ճանաչել մարդկանց, բարությամբ լցվել ու բարությամբ լցնել աշխարհը: Այդ բանի լավագույն գրավականը մարդկանց անշահախնդիր ծառայելն է: Հայրը հանգիստ էր ու համոզված՝ ինչ էլ դառնա Լևոնը, որտեղ էլ աշխատի՝ ազնվորեն կծառայի ժողովրդին: Եվ նա չէր սխալվում:

Ծնողները ծերանում էին, իսկ Լևոնը սովորել էր ցանկանում իր հասակակիցների նման, հայրը համաձայն էր, նույնիսկ ստիպում էր նրան մեկնել Երևան, սովորել նախընտրած պոլիտեխնիկական ինստիտուտում: Բայց ու՞ր գնար երիտասարդը, ինչպե՞ս թողներ ծերացած ծնողներին, որոնք խնամքի կարիք ունեին: Այդպես էլ նա մնաց Մեղրիում... Հետո, իհարկե, մեկնեց Երևան, բայց կարճ ժամկետով, արհեստ սովորելու: Մի քանի ամիս անց աչքաբաց երիտասարդը դերձակի դիպլոմով վերադարձավ տուն: Հիսունական թվական-

ռաջինը լինելու դերը: Մի օր էլ Լևոն Սիմոնյանը հայտնվեց Կարճևանի պետական տնտեսությունում և առաջարկեց իր ծառայությունը: Տնտեսությունում սկզբում չհավատացին, որ գտնվել է խոտհունձն իրականացնող մեկը, որը նույնիսկ հրաժարվում է վարձատրությունից: Գուցե կատակե՞լ է ինչ-որ մեկը: Բայց երբ իմացան, որ գործի գլուխ է կանգնել Լ. Սիմոնյանը, համոզվեցին, լռջացան: Հունձը սկսեց մենակ, ձեռքի մեքենայական խոտհնձիչով, որը հենց ինքն էլ նորոգել ու գործի էր դրել: Խոտհարք էր գալիս անձնական օգտագործման իր ավտոմեքենայով արևածագին և վերադառնում ուշ երեկոյան: Ժամանակն անցնում էր, իսկ խոտի դեզերը գնալով աճում էին: Երեք տարի շարունակ Լևոնը հնձում էր որպես տնտեսության անհատ-օգնական և հրաժարվում վարձատրությունից: Ո՞ր տնտեսությունը չէր ցանկանա ունենալ բարեխիղճ անվարձ հնձվոր: Բայց մի՞թե հնարավոր էր օգնության ձեռք մեկնել բոլոր տնտեսություններին: Այս գործում էլ Լևոնը գտավ ելքը: Նա նորից գյուղ գնաց, բայց զուտ կազմակերպական նպատակով: Երիտասարդները հավատացին նրան և շուտով բրիգադներ կազմած մեկնեցին սարերը՝ խոտհնձի: Նրանք իրենց ղեկավարի գլխավորությամբ հնձեցին շրջկենտրոնի, Վարհավարի, Լեհվազի, Լիճքի, Տաշտունի կոլեկտիվ, ինչպես նաև Կարճևանի պետական տնտեսությունների խոտհարքները: Ամեն բրիգադում ընդգրկվեց շուրջ տասը երիտասարդ, որոնք ձեռքի շարժիչավոր հնձիչներով հսկայական բարի գործ են կատարում, ամրապնդելով տնտեսությունների կերի բազան:

Արդեն տասներկու տարեկան է Լ. Սիմոնյանի նախաձեռնությունը: Այդ տարիներին հսկայական լրացուցիչ արդյունքներ են ստացել տնտեսությունները: Բրիգադավարը հոգ է տարել նաև երիտասարդ հնձվորների պատրաստման մասին, որոնք այսօր բարձր արդյունավետությամբ շարունակում են իրենց բարի գործը: Լևոնն ու իր տղաները ցանկալի հյուր են տնտեսություններում, որոնց նպատակը բերք ու բարիքի ավելացումն է:

Ահա Լ. Սիմոնյանին բնութագրող մի տեղեկանք, որ հասցեագրված է Մեղրու շրջսովետի գործկոմին: Այն ստորագրել են Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի դիրեկտոր Ա. Բաբայանը, կուսկոմի քարտուղար Ա. Ադամյանը և արհմիության տեղկոմի նախագահ Ս. Գևորգյանը: «Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի քաղաքացիական պաշտպանության շտաբի պետ Լևոն Սիմոնյանն իր պաշտոնական պարտականությունները կատարելու հետ մեկտեղ ակտիվ օգնություն է ցույց տալիս արտադրությանը, կատարելով կոմբինատի ղեկավարության տարբեր հանձնարարականներ: Գիշերային հերթապահությունները լեռնային արտադրամասերում, հարստացուցիչ ֆաբրիկայում, ինչպես նաև մյուս արտադրություններում անցնում են բարձր արդյունավետությամբ: Հատկապես հիշատակման է արժանի նրա անշահախնդիր օգնությունը շրջանի կոլտնտեսություններին ու պետտնտեսություններին խոտհնձի ժամանակ: Որպես կոմունիստ, ելույթ ունենալով կոմբինատի կուսժողովում, նա պարտավորություն ստանձնեց և պատվով կատարեց այն. ոչ միայն ղեկավարեց կոմբինատի երիտասարդ բանվորներից կազմված հնձվորների բրիգադը, այլև ինքն անձամբ հնձում էր ձեռքի մեքենայական հնձիչով, ցույց տալով բարձր արդյունավետություն»:

Օրերս նորից կարդացի ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ս. Գորբաչովի ճառը ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում, ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում: Այդ ճառերում այնքան կարևոր ու ճիշտ տողեր կան, որ ասես գրված են Լևոն Սիմոնյանի նման մարդկանց մասին: Ահա, օրինակ. «Առանց նախաձեռնության, առանց ստեղծագործող մարդկանց անհնար է որևէ առաջընթաց»: Եվ ապա՝ «Այսօր մենք ունենք տասնյակ հազարավոր նորարարներ, համարձակ, որոնող, նախաձեռնող, նորամուծությունից չվախեցող մարդիկ: Հարկավոր է, որ արդեն վաղը նրանք լինեն հարյուր հազարավորներ, իսկ մյուս օրը՝ միլիոնավորներ:

Սոցիալիզմը նախաձեռնող մարդկանց հասարակություն է: Հենց ինքը՝ սոցիալիզմն էլ, մեծագույն նախաձեռնություն է պատմության մեջ»:

Մեր օրերի այս ճշմարտությունը խորապես է ըմբռնել Լևոն Սիմոնյանը: Վերակառուցումը մտել է նրա էության մեջ, և նա համոզված է, որ կուսակցության վարած դեմոկրատացման ու հրապարակայնության քաղաքականությունը նոր փուլ է մեր հասարակության զարգացման ճանապարհին: Որպեսզի այն իրականանա և հասնի յուրաքանչյուր ընտանիք, պետք է սիրով ու նվիրվածությամբ աշխատել, նախաձեռնել ու ստեղծագործել:

— Վերակառուցումը,— ասում է Լ. Սիմոնյանը,— պատրաստի դեղատոմս չունի: Այն պահանջում է ստեղծագործական մոտեցում բոլոր հարցերի լուծման ժամանակ: Վերակառուցում՝ նշանակում է նորովի մտածողություն և վերաբերմունք աշխատանքի նկատմամբ: Հաճախ կարելի է լսել՝ մեր հիմնարկում վերակառուցումը կաղում է: Հետաքրքիր է իմանալ, իսկ այդ ո՞վ պիտի իրականացնի վերակառուցումը, ի՞նչ ես արել դու ինքդ: Պահանջելն ու սպասելը, իհարկե, հեշտ է, քան գործելը վերակառուցման օգտին: Հասարակության նորացումը համաժողովրդական գործ է, որին պիտի մասնակցեն բոլորը: Ահա թե ինչու ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Մեզ համար կարևոր է հասկանալ, որ հասարակության մեջ մարդու հենց դիրքով, նրան տված իրավունքներով և նրա վրա դրված պարտականություններով է վերջին հաշվով որոշվում նաև նրա սոցիալական, աշխատանքային, քաղաքական ակտիվությունը»:

Այս տարի էլ, անցյալ տարիների նման, Սիմոնյանն իր բրիգադի անդամների հետ արդեն հնձել է մոտ 70 հեկտար խոտ: Դրանք, սակայն, սովորական հեկտարներ չեն, քարքարոտ, թեք լանջեր են, ծովի մակերևույթից շատ բարձր գտնվող տեղանք, ուր ոչ կոմբայն է բարձրանում և ոչ էլ տրակտոր, բայց բերք կա, որը կարող է օգտակար լինել մարդուն:

Բարի անունը Լևոնը վաստակել է հասարակական աշխատանքով, հասարակությանը ծառայելով: Հիմնականում հրաժարվել է վարձատրությունից, իսկ երբ ստացել է, ապա այդ գումարները փոխանցել է Չեռնոբիլի ատոմակայանի, ջրհեղեղից տուժած Վրաստանի շրջաններից մեկին, Վ. Ի. Լենինի անվան մանկական, ինչպես նաև խաղաղության ֆոնդերին: Այդպիսին է Լևոն Սիմոնյանը: Նրա սիրտը լեռներում է, իր հարազատ հողի հետ և պատահական չէ, որ նա ցավում է սարում մնացած յուրաքանչյուր շյուղ խոտի, այգում մնացած խաղողի ամեն մի ողկույզի և դեղձի համար:

... Ախր ինչպե՞ս կարելի է նայել, տեսնել թերությունը և անտարբեր անցնել, չօգնել մարդկանց: Չէ՞ որ Մեղրու հողը սովորական չէ, այն ստեղծվել է քարից հաց քամելու գնով: Չէ՞ որ մարդիկ իրենց քրտինքի կաթսայում են հալել քարերը և հող դարձրել: Այդպիսին է կոմունիստ Լևոն Սիմոնյանի վերաբերմունքը դեպի հարազատ հողը, հարազատ երկրամասը, որովհետև ինքը զավակն է այդ հողի:

Օրերս հարկ եղավ նորից թերթելու տարիների ընթացքում Լ. Սիմոնյանի թղթապանակներից մեկը, ուր կուտակվել են պաշտոնական փաստաթղթեր կապված նրա հասարակական գործունեության հետ:

Ահա թե ովքեր են միջամտել, որպեսզի ըստ արժանվույն գնահատվի նրա հասարակական աշխատանքը. ՀԿԿ Մեղրու շրջկոմ, շրջսովետի գործկոմ, ՀՍՍՀ ներքին գործերի մինիստրություն, Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատ, ՀՍՍՀ գյուղմինիստրություն, ՀՍՍՀ քաղաքացիական պաշտպանության շտաբ...

Ի՞նչ է պետք մարդուն. բարի անուն, պատիվ ու հարգանք՝ շրջապատի կողմից: Այդ ամենին հասել է Լևոն Սիմոնյանը: Բայց ինչ-որ մի բան պակաս է մնացել, մինչև վերջ չի գնահատվել տարիների վաստակը: Դրա պատճառն, ըստ երևույթին, այն է, որ շրջանում հաճախակի են փոխվել ղեկավարները և ժամանակ չի մնացել զբաղվելու նախաձեռնությունների հեղինակի հարցով: Այնուամենայնիվ ուշ չէ... լավ է ուշ, քան՝ երբեք:

Վերջերս զրույց ունեցանք ՀԿԿ Մեղրու շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Մեհրաբյանի հետ և ցանկացանք իմանալ նրա կարծիքը մեր ակնարկի հերոսի մասին:

— Լևոն Սիմոնյանը մեր շրջանի լավագույն ակտիվիստներից է: Ցանկալի կլինի կարդալ նրա հասարակական աշխատանքների մասին մամուլում: Գրեք, անպայման գրեք, նա արժանի է...

Բոլորում է Լևոնի 60-ը: Ակամայից հիշում եմ Համո Սահյանի բանաստեղծությունը.

Տարիներս, տարիներս,
Ու՞ր մնացին տարիներս,
Կանաչ-կարմիր,
Սև-սպիտակ տարիներս:
Իմ սառ ու տաք,
Ծուռ ու շիտակ,
Տարիներս,տարիներս:

— Լևոն,— հարցնում եմ նրան,— ափսոսո՞ւմ ես, արդյոք, անցած-գնացած տարիներդ...

Ժպտում է ու գլուխն օրորում բացասաբար:

— Ափսոսում եմ չարածիս համար, որովհետև կարող էի ավելին անել:

— Դեռ ուշ չէ:

— Ինձ էլ է թվում... Ամեն տարիքում էլ կարելի է օգտակար լինել մարդկանց...

Այո՛, նրա համար ուժից վեր ոչինչ չկա, ամեն ինչ, ինչպես ինքն է պնդում, ձեռքի գործ է, միայն ցանկություն լինի:

Նա մի բան միայն չի կարող անել՝ անտարբեր լինել:

Եվ ես հավատում եմ նրան:

**ՄԻՀՐ. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

## Գրախոսություն և քննադատություն

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՍՊԵՏՆԵՐԸ

Պրոֆեսոր Խ. Բարսեղյանի «Կարմիր պանթեոնից» աշխատությունը* հեղափոխության նշանավոր գործիչներին նվիրված հեղինակի եռագրության առաջին գիրքն է։ Այստեղ ներկայացված են ռուսաստանյան երեք հեղափոխությունների բովերում կոփված, սովետական իշխանության հաստատման ու ամրապնդման, սոցիալիզմի կառուցման համար մղված պայքարի լենինյան գվարդիայի տասներեք ասպետների՝ Սերգեյ Կիրովի, Լադո Կեցխովելու, Վլադիսլավ Կասպարովի, Մեշադի Ազիզբեկովի, Իվան Վարդանովի, Արմեն Անանյանի, Սեդրակ Օտյանի, Ավիս Նուրիջանյանի, Սերգո Փիրումյանի, Արտաշես Կարինյանի, Դրաստամատ Տեր-Սիմոնյանի, Բախշի Ներսիսյանի և Եղիա Չուբարի հերոսական կենսապատումները։

Հեղինակին հաջողվել է ստեղծել հետաքրքրությամբ ընթերցվող, հրապարակախոսական և գեղարվեստական գեղեցիկ գեղումներով հագեցած գիտահանրամատչելի մի աշխատություն։

Աշխատության մեջ ընդգրկված գործիչների մեծ մասի (Ի. Վարդանով, Ա. Անանյան, Ս. Օտյան, Ս. Փիրումյան, Դ. Տեր-Սիմոնյան, Բ. Ներսիսյան և Ե. Չուբար) կյանքին ու գործունեությանը մեր պատմագրության մեջ հիմնականում անդրադարձել է Խ. Բարսեղյանը։ Ընդհանրացնելով տարիների իր ուսումնասիրության արդյունքները, գիտական շրջանառության մեջ դնելով բազմաթիվ նոր նյութեր, հեղինակն ամբողջացնում է նրանց դիմանկարները, բնորոշում նրանց տեղն ու դերը մեր ժողովրդի պատմության մեջ։

Գրքի «Հեղափոխության տրիբունը» խորագիրը կրող առաջին բաժինը նվիրված է կուսակցական և պետական ականավոր գործիչ Ս. Կիրովին։ Հանրաճանաչ դրվագներին հեղինակն ավելացնում է նոր փաստեր, մասնավորապես հայ ժողովրդի հանդեպ Կիրովի հոգատարության, հայ հեղափոխական գործիչների հետ ունեցած կապերի վերաբերյալ։ Իր հրապարակախոսական հոդվածներում Կիրովն անդրադարձել է հայկական ցեղասպանությանը, Արևմտյան Հայաստանից փախած հայ գաղթականների օգնության հարցերին։ Այս առումով բնորոշ է «Թերեք» թերթի 1916 թ. փետրվարյան համարում «Տառապյալ ժողովուրդը» խորագրով հոդվածը, որտեղ դատապարտելով թուրքական կառավարող շրջանների կողմից Արևմտյան Հայաստանում կիրառվող հայաջինջ քաղաքականությունը, նա գրում է. «Թուրքերը փայփայում են մի հրեշավոր երազանք՝ բնաջնջել ամբողջ հայ բնակչությունը... Օր-օրի Թուրքահայաստանից գալիս են միևնույն մղձավանջային տեղեկությունները։ Թե ինչ են արել այնտեղ թուրքերը, այդ չեն կարող պատմել հայ կանանց և երեխաների արցունքները, իսկ բարբարոսների ձեռքով անբռնակալելի սարսափներ և տառապանքներ վերապրած խաղաղ հայ բնակչության թափած արյունը տալիս է միայն որոշ, հեռավոր պատկերացում հայ ժողովրդի Գողգոթայի մասին»։

Կիրովն օգնել է Կովկասով մեկ սփռված հայ գաղթականներին, աջակցել նրանց նյութապես և բարոյապես։ Հեղինակը նորովի է լուսաբանել նաև Կիրովի կապերը հայ քաղաքական գործիչների հետ։ Առանց հուզմունքի դժվար է կարդալ նրա ողբերգական վախճանը պատկերող էջերը։

Լ. Կեցխովելուն, Վ. Կասպարովին և Մ. Ազիզբեկովին նվիրված դիմապատկերներում Խ. Բարսեղյանը վեր է հանել Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության որոշ դրվագներ, ցույց տվել Կեցխովելու և Կասպարովի ջերմ կապերը Վ. Ի. Լենինի հետ։ Ընթերցողը քայլ առ քայլ հետևում է պրոլետարիատի առաջնորդի և Կասպարովի հարուստ ու բազմաբովանդակ նամակագրությանը, որով ամբողջացվում է Կասպարովի հեղափոխական կերպարը։ Անդրադառնալով Մ. Ազիզբեկովի կյանքին ու գործունեությանը՝ հեղինակը բնութագրում է նրան որպես ժողովուրդների բարեկամության անխոնջ ջատագով, ուրվագծում Բաքվի կոմունայի բոցաշունչ կոմիսարի քաղաքական դիմանկարը։

«Անմոռաց կոմիսարը» պատումը նվիրված է հին բոլշևիկ, քաղաքացիական կռիվների և Անդրկովկասում սովետական կարգերի համար մղված պայքարի ակտիվ մասնակից Հովհաննես Վարդանյանին։ Այն բացվում է Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանի առաջաբանով, որտեղ նշվում է. «Հոկտեմբերյան մեծ հեղափոխության այդ սքանչելի մարտիկը՝ Իվան Վարդանովը, որն անձնուրացորեն է պայքարել քաղաքացիական պատերազմի տարիներին և աչքի ընկել իր մարտական խիզախություններով, մեծ ներդրում է ունեցել Հայկական հրաձգային դիվիզիայի կազմավորման ու ամրապնդման գործում։ Մենք՝ այդ դիվիզիայի վետերաններս, գլուխ ենք խոնարհում նրա պայծառ հիշատակի առաջ»։

Ի. Վարդանովը անհատի պաշտամունքի զոհերից է։ Նա ծանրակշիռ ավանդ ունի զինվորական կադրերի պատրաստման և դաստիարակության գործում։ Մինչև այժմ էլ ժողովուրդը սիրով ու երախտագիտությամբ է հիշում կարմիր կոմիսարին։

Համակ ուշադրությամբ են ընթերցվում Ա. Անանյանին նվիրված կենսապատման էջերը։ Բանվորից մինչև անդրկովկասյան ավագի՝ Անդրֆեդերացիայի Կենտգործկոմի նախագահի պաշտոնին հասած բոլշևիկը առաջին համաշխարհային պատերազմի տարիներին կովկասյան թատերաբեմում մարտնչել է Արևմտյան Հայաստանի ազատագրության համար։ Հետագայում նա ակտիվ մասնակցել է երկրամասում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարին, սոցիալիզմի կառուցմանը։ Հեղինակը արխիվային նորահայտ նյութերով վեր է հանել նրա կապերը Կիրովի, Օրջոնիկիձեի և այլ գործիչների հետ, ցույց տվել հայ մշակույթի երախտավորների հանդեպ նրա անսահման հոգատարությունը։

Հայաստանի կոմունիստական կուսակցության նշանավոր գործիչների համաստեղության մեջ արժանավոր տեղ ունի Սեդրակ Օտյանը։ Վաղ հասակից զինվորագրվելով բոլշևիկյան կուսակցությանը՝ նա մարտնչել է Ռուսաստանի քաղաքացիական կռիվների հորձանուտում, մասնակցել Հայաստանում սովետական կարգերի հաստատմանը, անցել կուսակցական աշխատանքի փառավոր ուղի։ Հեղինակը հանգամանալի ուսումնասիրել է Ս. Օտյանի հայրենանվեր կյանքը՝ պատանեկան տարիներից մինչև նրա եղերական մահը և ընթերցողին հնարավորություն ընձեռել մոտիկից ծանոթանալու իր ժողովրդի քաջակորով զավակի կյանքին ու գործունեությանը։

«Կրակոտ սիրտ» խորագիրը կրող ակնարկից հառնում է աննկուն հեղափոխական Ավիս Նուրիջանյանի կերպարը։ Խ. Բարսեղյանը վեր է հանել պրոֆեսիոնալ հեղափոխականի, կուսակցական-պետական գործչի, հրապարակախոսի, սոցիալիզմի ակտիվ շինարարի գործունեությունը։ Թերթելով նրա կյանքի էջերը, մեկ անգամ ևս համոզվում ես, որ Ավիսը միշտ և ամենուր գտնվել է պայքարի առաջին գծում։ Նա նույնպես անհատի պաշտամունքի անմեղ զոհերից է։

«Բանվոր հեղափոխականը» ակնարկը նվիրված է Սերգեյ Փիրումյանին՝ Հայաստանում անդրանիկ հեղափոխական շարժումների, Ալավերդու հանքագործների քաղաքական ցույցերի ու գործադուլների, Բաքվի կոմունայի ստեղծման շրջանում հակահեղափոխական ուժերի դեմ մղված պայքարի եռանդուն մասնակցին։ «Բանվոր Սերգոն», ինչպես կոչում էին նրան, Ս. Շահումյանի, Ա. Ջափարիձեի, Ի. Ֆիոլետովի, Կ. Ջևինի մարտական զինակիցներից էր։ Կոմունայի օրհասական պահին նա մարտնչում էր հանուն սովետական իշխանության։ Հենց այդ պայքարում էլ զոհվեց Ս. Փիրումյանը։ «Հետմահու էլ կյանք կա» բաժնում հեղինակը համառոտ նկարագրել է կրակոտ հեղափոխականի կնոջ՝ Սոֆյայի և նրանց զավակներ Արամ ու Ռուբեն Փիրումյանների ծառայությունները հայրենիքին։

Լենինյան հին գվարդիայի պրոֆեսիոնալ հեղափոխականներից էր Բաքվի հերոսական կոմունայի ժողովրդական կոմիսար, Անդրկովկասի կուսակցական-պետական նշանավոր գործիչ, մեծ ընդգրկումների մտավորական Արտաշես Կարինյանը։ Դժվարին վերելքների և երբեմն էլ վայրէջքների ճանապարհ է անցել բոլշևիկ-հրապարակախոսը։ Ժամանակին իր կնիքն է դրել նրա աշխատությունների վրա։ Նշելով Կարինյանի ծառայությունները հեղափոխությանը, սովետահայ պատմագիտությանը, մասնավորապես հայ հասարակական-քաղաքական մտքի, մամուլի պատմության ստեղծման, հայ-ռուսական գրական կապերի լուսաբանման գործում՝ միաժամանակ հեղինակը ցույց է տվել նրա այն վրիպումներն ու առանձին սխալները, որոնք անհատի պաշտամունքի ժամանակաշրջանի հետևանք էին։

Այստեղ էջեր են նվիրված Սովետական Հայաստանի կուլտուրական շինարարության տաղանդավոր կազմակերպիչներ Դրաստամատ Տեր-Սիմոնյանին և Եղիա Չուբարին։ Նրանք են ստեղծել և խմբագրել բոլշևիկյան բազմաթիվ պարբերականներ՝ «Խորհրդային Հայաստան», «Կոմունիստ» (ռուսերեն), «Ավանգարդ», «Մաճկալ» և այլն։ Փոխեփոխ նրանք են խմբագրել 1930-ական թվականներին Փարիզում լույս տեսնող «Երևան» կոմունիստական թերթը, սովետական իշխանության գաղափարները հասցրել սփյուռքի հայ համայնքներին։ Նրանք հանրապետության կուլտուրական հեղափոխության ռահվիրաններն են, Հայաստանի գրողների միության հիմնադիրները, հայ գրականության ջատագովները։

Խ. Բարսեղյանը վեր է հանել գրականության պատմությունից անարդարացիորեն դուրս մնացած բոլշևիկ-գրականագետներին, ամբողջացրել

* Խիկար Բարսեղյան, Կարմիր պանթեոնից: Գիրք առաջին, «Հայաստան» հրատ. 1987, 479 էջ։

նրանց գրական դիմապատկերները։ Կյանքի թելադրանքով Դ. Տեր-Սիմոնյանի և Ե. Զուբարի ճակատագրերը կարծես թե միահյուսված էին։ Հիրավի նրանց կյանքը պայքար էր և արարում։

Բախշի Ներսիսյանի կյանքը նույնպես նվիրում էր ժողովրդին և կուսակցությանը։ Նա իրեն դրսևորել է որպես անձնվեր կոմունիստ, աշքի ընկել բարությամբ, մարդասիրությամբ ու սրտացավությամբ, իսկ աշխատանքում՝ պետական կարգապահությամբ, պահանջկոտությամբ և նախաձեռնությամբ։

Շնորհակալ գործ է կատարել Խ. Բարսեղյանը, ստեղծելով մի աշխատություն, որը հիշատակի յուրօրինակ պսակ է զոհվածներին։ Այստեղ Հ. Անանյանին նվիրված ակնարկի համար գրած առաջաբանում Սերո Խանզադյանը նշել է. «... Բարսեղյանի այս գիրքը ես կդառնա ընթերցողին հարազատ։ Նրա էությունը ճշմարտությունն է, մեր կյանքի մոռացված էջերի կենդանացումը։ Ողջունում եմ այս գրքի ստեղծումն ու լույս աշխարհ գալը»։

**Վ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

---

Հանձնված է շարվածքի՝ 10. 10. 88 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 22. 11. 88 թ.։ ՎՖ 04061։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 15632։ Պատվեր՝ 1556։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։